ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում ընդունեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի տակ աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի հետագա կատարելագործման մասին»:**

*ՍՄԿԿ Կենտկոմը գոհունակությամբ նշել է, որ ՍՄԿԿ XXV համագումարի նախապատրաստումն ու անցկացումը առաջ բերեցին աշխատավորների քաղաքական և աշխատանքային ակտիվության բացառիկ բարձր խանդավառություն, որը դրսևորվեց նաև ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկների կոլեկտիվներից, կազմակերպություններից և առանձին սովետական քաղաքացիներից համագումարին և ՍՄԿԿ Կենտկոմին ուղղված նամակների, հեռագրերի և աշխատանքային զեկույցների մասսայական ստացման մեջ: Այդ ժամանակամիջոցում համագումարի անունով և ՍՄԿԿ Կենտկոմի հասցեով ստացվել է ավելի քան 600 հազար նամակ ու հեռագիր, մեծ քանակությամբ նամակներ են ստացել տեղական կուսակցական մարմինները:*

*ՍՄԿԿ XXV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց աշխատավորների նամակներին, ընդգծեց դրանց հասարակական-քաղաքական կարևոր նշանակությունը՝ որպես մասսաների հետ կուսակցության կապի ձևերից մեկի, որոնք արտահայտում են «միլիոնավոր աշխատավորների հսկայական խանդավառությունը, կոմունիզմ կառուցող մեծ ու հզոր տերության զարկերակի բաբախյունը» (Լ. Ի. Բրեժնև): Համագումարը նշեց, որ նամակների թվի ավելացումը և դրանց բովանդակությունը վկայում են սովետական մարդկանց աճող գիտակցականությունը, նրանց հասարակական ակտիվությունը, քաղաքական հասունությունը, ջերմ հոգատարությունը սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկման նկատմամբ, անսահման վստահությունը կոմունիստական կուսակցության քաղաքականության հանդեպ և նրա լենինյան կուրսի պաշտպանությունը:*

*Վերջին տարիներս կենտրոնական և տեղական կազմակերպություններում ստացվող աշխատավորների նամակների բովանդակության և բնույթի մեջ զգալի փոփոխություններ են կատարվել: Աճել է այն նամակների թիվը, որոնցում բարձրացվում են համակուսակցական և համապետական նշանակություն ունեցող հարցեր, բովանդակում են ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության կարևորագույն որոշումների ու միջոցառումների վառ ու կենդանի արձագանքներ, կոնկրետ, գործնական առաջարկություններ, խորհուրդներ ու ցանկություններ, որոնց նպատակն է բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, բարելավել աշխատանքի որակը, արագորեն վերացնել եղած թերությունները: Նամակների հեղինակների արած շատ առաջարկություններ օգտագործվեցին ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի նախապատրաստության ժամանակ և արտացոլում գտան նրա փաստաթղթերում, առավել կարևոր խորհուրդներն ու նկատառումները քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմում, հաշվի են առնվում որոշումներ մշակելիս, դրանց կատարման վերահսկողությունն իրականացնելիս, ղեկավար մարմինների պրակտիկ գործունեության մեջ:*

*ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ ՍՄԿԿ XXV համագումարի նախապատրաստության և անցկացման, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման*





*1976—1980 թվականների հիմնական ուղղությունների նախագծի համաժողովրդական քննարկման ժամանակաշրջանում աշխատավորների նամակների հետ կատարված աշխատանքի փորձը արժանի է լայն տարածման և օգտագործման՝ ամենուրեք աշխատավորների գրավոր և բանավոր դիմումների քննարկման կազմակերպումը բարելավելու նպատակով։*

*Դրա հետ մեկտեղ, ՍՄԿԿ Կենտկոմը նշել է նաև, որ նամակների հետ կատարվող աշխատանքում և քաղաքացիների ընդունելությունը կազմակերպելու գործում էական թերություններ կան։ Դեռևս թույլ են տրվում առաջարկությունների, խնդրանքների և գանգատների լուծման նկատմամբ անուշադիր, անտարբեր վերաբերմունքի փաստեր։ Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների որոշ ղեկավարներ պատշաճ հասարակական-քաղաքական նշանակություն չեն տալիս այդ կարևոր աշխատանքին, մակերեսային մոտեցում են ցուցաբերում նրա կատարման նկատմամբ, մի շարք կազմակերպություններում կադրերի նկատմամբ չկա անհրաժեշտ պահանջկոտություն աշխատավորների նամակները խորապես և ժամանակին քննարկելու համար։ Գոյություն ունեն դեպքեր, երբ ձևական վերաբերմունք է ցույց տրվում քաղաքացիների հիմնավորված խնդրանքներին, որը նրանց ստիպում է կրկնակի գանգատներով դիմել վերադաս կազմակերպություններին, առանձին նամակների քննարկումը չարդարացված կերպով ձգձգվում է։*

*ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ սոցիալիստական դեմոկրատիայի հետևողական զարգացման, մասսաների հետ կուսակցության կապի ամրապնդման պայմաններում ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի հետագա բարելավումը, նրա ձևերի ու մեթոդների ըստ ամենայնի կատարելագործումը՝ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների լույսի տակ։*

*Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային կոմիտեներին, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների սովետներին, աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործկոմներին, մինիստրություններին և գերատեսչություններին, արհմիութենական և կոմերիտական մարմիններին, ձեռնարկությունների, կազմակերպությունների, հիմնարկների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներին առաջարկված է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել՝ ապահովելու աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի հետագա բարելավումը, ընդ որում՝ խստիվ առաջնորդվելով կուսակցության XXV համագումարի որոշումներով, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ և համագումարի փակման ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթներով ու խնդիրներով։ Հատուկ ուշադրություն դարձնել նամակների հետ կատարվող աշխատանքի՝ ՍՄԿԿ XXV համագումարի նախապատրաստման և անցկացման ընթացքում ձեռք բերված դրական փորձի ամրապնդման, տարածման ու զարգացման վրա, պրակտիկ գործունեության մեջ աշխատավորների առաջարկությունների և ցանկությունների ակտիվ օգտագործման վրա՝ նպատակ ունենալով հաջողությամբ կատարել տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանները։*

*Աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի հետագա կատարելագործման ասպարեզում կարևոր տեղ պետք է գրավեն լայնորեն ծավալված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, կուսակցության և պետության ներքին ու արտաքին քաղաքականության մասին բնակչությանը օպերատիվ ինֆորմացիա տալը, տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների պարզաբանումը, սովետական օրենքների պրոպագանդումը, բնակչության իրավական դաստիարակության բարելավումը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի բաժիններին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին առաջարկված է՝ սահմանված պահանջներին համապատասխան, մինչև 1976 թվականի հուլիսի 1-ը ավարտել ՍՄԿԿ XXV համագումարի հասցեով ստացված աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքը, ապահովել դրանցում առաջադրված հարցերի ուշադիր և համակողմանի քննարկումը, ավելի ակտիվորեն օգտագործել բանվորների, կոլտնտեսականների, ինժեներների ու տեխնիկների, գիտության և կուլտուրայի աշխատողների առաջարկություններն ու ցանկությունները գործը բարելավելու և եղած թերությունները վերացնելու համար։*

*Կուսակցական, սովետական, արհմիութենական և տնտեսական մարմիններին առաջարկված է՝ հետևողականորեն կենսագործելով աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի լենինյան սկզբունքները, կանոնավոր կերպով անցկացնել քաղաքացիների գրավոր ու բանավոր դիմումների քննարկումը կազմակերպելու վերաբերյալ որոշումների կատարման ստուգում, խիստ վերահսկողություն սահմանել դրանց լուծման նկատմամբ, դրա հետ կապված հարցերը քննարկել կուսակցական կոմիտեների պլենումներում և բյուրոներում, աշխատավորների դեպուտատների սովետների սեսիաներում և գործկոմներում, մինիստրությունների և գերատեսչությունների կոլեգիաներում, լսել հաշվետվություններ, դիմումների քննարկմանը ավելի լայնորեն ներգրավել կուսակցական-սովետական ակտիվին։ Աշխատանքի պրակտիկա դարձնել ստացվող նամակների սիստեմատիկ կոմպլեքսային ուսումնասիրությունը, դրանց վերլուծության հիման վրա անել ընթացիկ ու հեռանկարային խնդիրների լուծման հետ կապված անհրաժեշտ հետևություններ։ Միջոցներ ձեռնարկե՛լ ավելի բարելավելու քաղաքացիների անձնական ընդունելությունը կենտրոնական և տեղական կազմակերպություններում, հիմնարկներում և ձեռնարկություններում։ Մշտապես հոգատարություն ցուցաբերել կառավարման ապարատի աշխատանքի կուլտուրան բարձրացնելու, կադրերին յուրաքանչյուր նամակի վերլուծության հարցում ուշադիր, զգայուն, սկզբունքային և գործարար մոտեցման, մարդկանց, նրանց կարծիքների և պահանջների հանդեպ հարգալից վերաբերմունքի ոգով դաստիարակելու նկատմամբ։*

*Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է տույժի խիստ միջոցներ կիրառեն այն պաշտոնատար անձանց նկատմամբ, ովքեր խախտում են աշխատավորների նամակների հետ կատարվող աշխատանքի սահմանված կարգը, թույլ տալիս դրանց քննարկման նկատմամբ ձևական-բյուրոկրատական մոտեցում, ժամանակին արձագանքեն թերությունների և չարաշահումների վերաբերյալ քննադատական ահազանգերին ու հաղորդումներին, ավելի հաճախ մեկնեն տեղերը կոնկրետ գանգատները քննարկելու համար։*

*Կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները, ձեռնարկությունների, կազմակերպությունների, հիմնարկների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները պարտավոր են աշխատավորների նամակները քննության առնել, որպես կանոն, ոչ ավելի, քան մեկամսյա ժամկետում, ժամանակին նամակների հեղինակներին ծանուցեն նրանց առաջարկությունների ու խնդրանքների քննարկման արդյունքների մասին։*

*Կենտրոնական և տեղական թերթերի ու հանդեսների, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների խմբագրությունները պետք է կանոնավոր կերպով հրապարակեն աշխատավորների նամակներ, հաղորդումներ դրանց առթիվ ձեռնարկված միջոցների մասին, խմբագրական փոստի վերլուծության արդյունքները ավելի ակտիվորեն օգտագործեն հրատապ թեմաներով նյութերի նախապատրաստման ու հրապարակման համար, ավելի լայնորեն լուսաբանեն քաղաքացիների նամակների և բանավոր դիմումների հետ կատարվող աշխատանքի կազմակերպման հարցերը, հրապարակեն աշխատավորների արդարացի գանգատների լուծման հարցում թույլ տրվող բյուրոկրատիզմի և քաշքշուկի փաստերը։*

*ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն տվեց «Պրավդա» թերթի խմբագրության աշխատանքի փորձին, որը սիստեմատիկաբար հրապարակում է ընթերցողների նամակները, ինչպես նաև նյութեր դրանց քննարկման արդյունքների վերաբերյալ։*

# ՄԻՇՏ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՒ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

*Ապրիլի վերջերին իր աշխատանքներն ավարտեց Հայաստանի սովետական գրողների VII համագումարը։ Այն ընթանում էր իր նշանակությամբ աննախադեպ մի ժամանակաշրջանում։ Երկու ամիս առաջ տեղի էր ունեցել Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը։ Թեև կարճ է անցած ժամանակահատվածը, թեև ճշմարիտ է, որ մեծը երևում է հեռվից, սակայն հիմա էլ, երբ մենք դեռևս գտնվում ենք համագումարի զորեղ տպավորության տակ, կարելի է ամենայն հստակությամբ ու որոշակիությամբ խոսել նրա հսկայական նշանակության մասին մեր կյանքի բոլոր բնագավառների, մեր առաջընթացի, համայն մարդկության ճակատագրի համար։*

*Կուսակցության XXV համագումարն ամփոփեց վերջին տարիներին կուսակցության ու սովետական ժողովրդի վիթխարի աշխատանքի արդյունքները, մշակեց մեր գործունեության քաղաքական գիծն ու գիտականորեն հիմնավորված ծրագիրը, նշեց կուսակցության հետագա անելիքները և երկրի զարգացման անընդգրկելի հեռանկարները։*

*Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ մեծ ոգևորությամբ ընկալեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոր և համապարփակ զեկուցումը, որը լուրջ գիտական ներդրում է մարքսիզմ-լենինիզմի զարգացման բնագավառում, որը կուսակցությանն ու մեր աշխատավորությանը զինում է սոցիալիստական հասարակության առաջընթացի նոր հեռանկարների հստակ ու հարուստ ծրագրով։*

*Վիթխարի են այն նվաճումները, որ մեր հայրենիքը ձեռք է բերել՝ հետևելով կուսակցության XXIV համագումարի նախանշած ուղուն։ Երկիրը հասել է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նոր, ավելի բարձր մակարդակի։ Գիտատեխնիկական առաջընթացի հիմքի վրա մեծապես բարձրացել է հասարակական արտադրության արդյունավետությունը, արագացել է աշխատանքի արտադրողականության աճը, ապահովվել է սովետական մարդու կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի վերելքը։ Արտաքին քաղաքականության բնագավառում, հենվելով համաշխարհային սոցիալիզմի երկրների միասնության ու հզորության, մոլորակի առաջադեմ և խաղաղասեր ուժերի վրա, արտահայտելով միլիոնավոր հասարակ մարդկանց ձգտումները՝ մեր կուսակցությունն առաջադրել ու անշեղ իրագործում է խաղաղության ծրագիրը։ Ներկայումս հատկապես բարձր է մեր երկրի, մեր կոմունիստական կուսակցության միջազգային հեղինակությունը։*

*Ամբողջ սովետական երկիրը, մեր Միության բոլոր ժողովուրդները, այդ թվում և հայ ժողովուրդը աներեր վճռականությամբ, խորագույն հավատով ու լավատեսությամբ ձեռնամուխ են եղել տասներորդ հնգամյակի առաջադրանքների ու ծրագրումների իրականացմանը։ Մեզ բոլորիս ոգևորում է կուսակցության առաջադրած գերագույն խնդիրը՝ «...*հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա»։

*Մեր պետության զարգացման բովանդակ պատմության ընթացքում, թերևս, չի եղել այնքան բարենպաստ ստեղծագործական մթնոլորտ, մարդկային ուժերի ծավալման, մարդկային ընդունակությունների բացահայտման համար չեն ստեղծվել այնպիսի լայն հնարավորություններ, ինչպես այժմ, լինի այն գործարանում թե դաշտում, գիտության թե կուլտուրայի ասպարեզում։ Այսօր տեսնում ենք, թե ինչպես է կենսագործվում Վ. Ի. Լենինի միտքը հասուն սոցիալիստական հասարակության վերաբերյալ, հասարակություն, որն ապահովում է իր բոլոր անդամների բարեկեցությունն ու ազատ, բազմակողմանի զարգացումը։ Ամեն ինչ մարդու համար— լենինյան այս անխախտ սկզբունքն է դրված ՍՄԿԿ քաղաքական, գաղափարական, տնտեսական գործունեության հիմքում։*

*Այս ամենը ստույգ թվերի, կոնկրետ բնագծերի, հանձնարարվող կամ առաջադրվող միջոցառումների ու ձեռնարկումների տեսքով շարադրված է հնգամյակի, եթե կարելի է ասել, օրենսգրքում՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների վերաբերյալ համագումարի քննարկած և ընդունած փաստաթղթում։ Այստեղ, ընդհանուր խնդիրների, անելիքների թվում իր առանձին բաժինը, հիմնական գործունեության սեփական ծրագիրն ունի և մեր հանրապետությունը՝ Սովետական բազմազգ Միության հավասարազոր անդամներից մեկը։*

*Տասներորդ հնգամյակում հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների առջև ծառացած խնդիրների մասին հանգամանալից խոսվեց ՀԿԿ XXVI համագումարում և հանրապետության կուսակցական ակտիվի ժողովում, ուր քննարկվեց* ՍՄԿԿ XXV համագումարի արդյունքների և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրների մասին *հարցը։ Թերևս հարկ չկա մեկ անգամ ևս հիշատակելու այն բնագծերը, որ 1976—1980 թվականների ընթացքում Սովետական Հայաստանի աշխատավորները պետք է նվաճեն արդյունաբերության, գյուղատնտեսության, կապիտալ շինարարության, տրանսպորտի, գիտության ու մշակույթի բնագավառներում։ Սակայն նորից ու նորից հարկ ենք համարում նշել, որ հաջողության հասնելու միակ միջոցը մեր կազմակերպվածությունն է, հարցերի արագ ու ճշգրիտ լուծումը, պլանների կատարման ու գերակատարման խնդրին բոլոր ջանքերը նվիրաբերելու, աշխատավորությանը ոտքի հանելու և նպատակամղելու մեր կարողությունը։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործմանը պետք է ի սպաս դրվեն մեր կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, աշխատանքային կոլեկտիվների, տնտեսական և պլանային մարմինների ողջ եռանդը, ուժն ու հմտությունը։ Այդ գործում իրենց մեծ ու կարևոր առաքելությունն ունեն նաև մեր մտավորականությունը, գրականության ու արվեստի մարդիկ, որոնք ապրել ու ապրում են կուսակցության ու ժողովրդի ընդհանուր շահերով։*

*Պատահական չէ, որ կուսակցության XXV համագումարի նյութերը ջերմ արձագանք են գտել մեր գրական միջավայրում։ Այլ կերպ չէր էլ կարող լինել։*

*Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, համագումարի պատգամավորների ելույթներում ու փաստաթղթերում լայն տեղ տրվեց գրականության ու արվեստի հարցերին. մի բան, որ նույնպես արտահայտում է կուսակցության խորապես գիտական մոտեցումը սովետական հասարակության կյանքի ու գործերի ամենատարբեր կողմերի լուսաբանմանը և գնահատությանը։ Նման ուշադրությունը բացատրվում է այն շահագրգռությամբ, որ սովետական ժողովուրդը հանդես է բերում իրականությունը ճշմարտացի, գեղարվեստական խոր բովանդակությամբ ու վարպետությամբ բացահայտող ստեղծագործությունների նկատմամբ։*

«Գրականության կամ արվեստի տաղանդավոր ստեղծագործությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ազգային սեփականություն է։ Մենք լավ գիտենք, որ գեղարվեստական խոսքը, գույների երփներանգումները, քարի արտահայտչականությունը, հնչյունների ներդաշնակությունը ոգեշնչում են ժամանակակիցներին և հետնորդներին են հաղորդում մեր սերնդի, մեր ժամանակների, նրա տագնապների ու մեծագործությունների հիշատակը, որ պահվում է մեր սրտերում ու հոգում»։

Կուսակցության ամենօրյա հոգածությամբ այսօր ստեղծվել է վիթխարածավալ և բազմազգ գրականություն։ Հայտնի է, թե ինչպիսի մեծ ուշադրություն է նվիրում կուսակցության Կենտրոնական կոմիտեն գեղարվեստական ստեղծագործության զարգացմանը, գրականության և արվեստի գործիչների գաղափարական դաստիարակությանը, սոցիալիստական ռեալիզմի լայն մայրուղում ծավալվող ստեղծագործական որոնումներին։ Գրականության և արվեստին ուղղություն տվող կուսակցական ղեկավարությամբ է պայմանավորված գեղարվեստական ստեղծագործության գաղափարական անաղարտության, կուսակցական նպատակասլացության և սոցիալ-դաստիարակչական ներազդեցության արդյունավետությունը։

Մեր օրերի հայ գրականության, ինչպես և բովանդակ սովետական գրականության մեջ շարունակվում է սոցիալիստական իրականության ամենատարբեր կողմերի ու խնդիրների գեղարվեստական հետազոտությունը։ Գրականության քաղաքացիական ու ստեղծագործական առնականացման վկայությունն են նրա որոնումները թեմայի, ժանրի, ոճի մարզերում։ Հանրապետությունում հրապարակվող գրքերի մեծ մասը նվիրված է մեր ժամանակին և ժամանակակցին։ Իրենց արժանի տեղն ունեն պատմա-հեղափոխական թեմատիկային, Մեծ Հայրենականին նվիրված ստեղծագործությունները։ Հայաստանի գրողները, արվեստի գործիչները իրենց գերագույն պարտքն են համարում ծառայել ժողովրդին, Հայրենիքին, մեր լենինյան կուսակցությանը։

Հայ գրողները գովելի հետևողականությամբ իրենց երկերում խտացնում են բարոյա-էթիկական պաթոսը, ձգտում ավելի խոր թափանցել մարդկային հոգու ծալքերը, ցուցադրել սովետական մարդու մտքերի ու հույզերի ողջ գեղեցկությունը։

Սովետահայ գրողների ստեղծագործական ակտիվացումն ուղեկցվում և բացատրվում է արտադրության հետ, աշխատավորական կոլեկտիվների հետ նրանց կապի ամրապնդմամբ։ Գրողներն ավելի հաճախ են լինում գործարաններում ու կոլտնտեսություններում, կառույցներում և ուսումնական հաստատություններում, իրենց հոդվածներում, ակնարկներում, պատմվածքներում արտացոլում հասարակական, բարոյա-էթիկական հրատապ պրոբլեմներ, օգնելով դրականի հաստատմանը և թերությունների վերացմանը։

Ընթերցողը ճանաչում և սիրում է մեր ավագ ու միջին սերնդի շատ գրողների և գրական ասպարեզ մուտք գործած մեր շնորհալի երիտասարդների գրվածքները, որոնելով ու դրանց մեջ գտնելով իրենց հուզող հարցերի պատասխանը, դրանց օգնությամբ նորովի ընկալելով շրջապատող իրականությունը, իմաստավորելով առօրյա փաստերն ու երևույթները։

Այս ամենը մեզ հիմք է տալիս ասելու, որ հայ գրողներն օգնում են մեր ժողովրդին՝ կատարելագործվելու բարոյապես, հոգեպես, սովորեցնում են սիրել մեր մեծ հայրենիքը, նրա հեղափոխական ու աշխատանքային փառավոր անցյալը, ջերմ, հարգալից, բարեկամի ու եղբոր պես ապրել մեր սոցիալիստական բազմազգ ընտանիքի բոլոր անդամների հետ։

Հայաստանի սովետական գրողների համագումարը իրավացիորեն արձանագրեց իր անկապտելի նվաճումները։ Համագումարն անցավ գաղափարական, քաղաքական, գործնական բարձր մակարդակով, կուսակցության XXV համագումարի որոշումների կենսագործման ոգով։ Համագումարում կարդացված զեկուցումներն ու գրեթե բոլոր ելույթները խորությամբ բնութագրեցին մեր գրական պրոցեսը, մեր գրականության հարաբերությունը կյանքի հետ։



Օրավուր զարգացող կյանքը գրականությունից պահանջում է համակողմանի մոտեցում իրականությանը, թելադրում է հանդես բերել քաղաքացիական սրատեսություն և համարձակություն, պահանջում է առավել լիաբուռն ու գունեղ արտացոլել կենսական բախումներն ու մարդկային բնավորությունները՝ իրենց ողջ բարդությամբ և խորին դրսևորումներով։

Եթե այսպես ու պահանջների այս բարձունքից նայելու լինենք մեր գրական արտադրանքին, ապա ցավով պետք է նկատենք, որ ձեռքբերումներով գոհանալն ու դրանց դափնիների վրա ինքնահանգստանալը մեզ բոլորովին սխալ կկողմնորոշի, որ արվածը դեռևս բավարար չէ թե՛ թեմատիկ ընդգրկումների և թե՛ գեղարվեստական մարմնավորման տեսակետից, որ հայ գրողները դեռևս բավականին անելիքներ ունեն, որպեսզի իրենց ստեղծագործությունները երկրի գրական համայնապատկերում զբաղեցնեն բարձր ու տեսանելի դիրքեր։

Կուսակցության XXV համագումարի որոշումները պետք է բոլորիս համար դառնան յուրատեսակ կողմնացույց, որով հրամայաբար ուրվագծվելու են մեր առաջիկա գործունեության ուղիները։ Ուրեմն, որո՞նք են այն հարցերը, որոնց վրա անհրաժեշտ է բևեռել մեր գրական անդաստանի ուշադրությունը.

առաջին հերթին՝ ժողովրդի կյանքի հետ, կոմունիստական շինարարության առօրյայի հետ գրողների կապի առավել ամրապնդման հարցի վրա։ Այս է մեր գրողների ստեղծագործության հողն ու զինանոցը։ Եթե կապն ամուր է, հողը պտղաբերում է առատ, զենքերը հատու են, շողշողուն։ Երբ կապը թույլ է, հողը երերուն է, ասելիքը՝ չփոթ, զենքերը՝ ժանգոտ, կենսազուրկ ուղեղի խաբկանք։

Կյանքը գրողին առաջարկում է որոնումների անսահման ասպարեզ, թելադրում թեմաներ, տալիս հերոսների հասցեներ։ Մեր հաշվետվություններում ու պլաններում հոլովվող կուսակցական փաստաթղթերի պարունակած թվերն ու ցուցանիշներն ավելին են, քան սոսկ փաստեր ու տվյալներ։ Դրանք արտացոլում են հասարակության սոցիալական նկարագիրն ու պայծառ հեռանկարը, որոնք առնչվում են կոնկրետ մարդուն, նրա հանապազօրյա հետաքրքրություններին, հոգեբանությանը, գործելակերպին, այսինքն՝ անմիջականորեն շոշափում են արվեստի առարկան։ Այսպիսով, գրողի, արվեստագետի համար կուսակցության բոլոր նախանշումները, առաջադրվող թեզիսներն ու սահմանվող թվերը մարդկային կյանքի կատարելագործման, բնավորությունների ձևավորման ու դրսևորման կարևոր ազդակներ են։

Գրականությունը կուսակցության վստահելի օգնականն է կոմունիստական շինարարության գործում, այն անօրինակ, հերոսական ստեղծարար աշխատանքում, որով այսօր զբաղված է սովետական մարդը։ Մարմնավորել այդ մարդու կերպարը, գեղարվեստական արտացոլման միջոցներով սատարել նրա մաքառմանը՝ հանուն իրականության վերափոխման— սա է այսօր սովետական գրականության բոլոր ջոկատների մեծ ու պատասխանատու խնդիրը։

Հայ գրականության հրամայականն այսօր, ինչպես մեր գրողների հետ վերջին հանդիպումներում ընդգծեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Դեմիրճյանը, ակտիվ դրական հերոսի կերպարի կերտումն է, կերպար, ու ոգեշնչի ու իր հետևից տանի մարդկանց, որ օրինակ ծառայի և ընդօրինակելու ցանկություն ու զգացմունք առաջացնի, կերպար, որի հետ ընթերցողն ապրի, սիրի, տառապի, տենչա, պայքարի ու գործի, որը մարմնավորվի ընթերցողի հոգում ու հերոսանմա աշխատանքային բնագծերում։

Թերևս դյուրին չէ այդ կերպարի ստեղծումը։ Նրա իրական պրոտոտիպը կյանքում անընդհատ շարժման ու սոցիալ-հոգեբանական զարգացման մեջ է, որը հանգեցնում է մարդկային ներաշխարհի հարստացման ու խորացման։ Զարգացած սոցիալիզմի հասարակության անդամն այսօր բնութագրվում է անհատական ինքնաճանաչողության բուռն ձգտումով ու մեծ կարողությամբ։ Արժեքներն ու երևույթները նա գնահատում է դրանք սեփական բանականության քննությանը հանձնելուց հետո։ Դա էլ հենց սովետական մարդու խոր գիտակցականության դրսևորման արտահայտությունն է։ Դրանով էլ հենց ուժեղ է կոլեկտիվը կամ՝ մեր ամբողջ հասարակությունը։ Ուրեմն, անհրաժեշտ է խորությամբ քննարկել կոլեկտիվի և անհատի այս նոր հարաբերությունը, հարա-

բերակցության նոր որակը, պեղել ու վեր հանել ժամանակակից սովետական մարդու հոգու հարստությունները։

Կամ եթե վերցնենք գիտատեխնիկական հեղափոխության հետ կապված մարդկային անհատի զարգացման հարցերը, որ իրավամբ մեծ տեղ գտան համագումարում։ Հայտնի է, անշուշտ, որ գիտության ու տեխնիկայի զարգացման բոլոր հարցերը կապված են մարդու գործունեության հետ։ Նա է առաջ մղողը, նա է պրոցեսը կառավարողը, այսինքն՝ մեր բանվորները, ինժեներներն ու տեխնիկները, գիտնականները, ժողովրդական տնտեսության մասնագետները։ Գիտատեխնիկական հեղափոխությանը զուգընթաց էլ վերափոխվում, կատարելագործվում է ինքը մարդը՝ հասարակության գլխավոր արտադրաուժը։ Ուրեմն, ահա մեր գրողների նյութական «արտադրական» ֆոնը՝ գիտատեխնիկական առաջընթացը. ահա և նրանց մշակության հումքը՝ ժամանակակից մարդը։ Մնացածն արդեն նրանց գործն է. չէ՞ որ գրողներն են մեր մարդագետները, մարդկային հոգու ճարտարապետները։

Վերջին ժամանակներս գրական ասուլիսներում թե մամուլի էջերում շատ է շոշափվում թեմայի հարցը։ Դա կյանքի հետ գրականության կապի կարևորագույն խնդիրներից մեկն է, քանի որ, իրոք, կենսական մեծ թեման, լինի այն արդյունաբերությունից, շինարարությունից, գյուղատնտեսության բնագավառից, թե մտավորականության կյանքից, հիմք է ծառայում, իրոք, տիպական, առաջընթացի միտումները կրող կերպարների կերտման համար։ Պատահական չէ, որ այդ հարցն իր արժանի արտացոլումը գտավ նաև կուսակցության XXV համագումարում։ Բայց ճիշտ չի լինի պարզունակ դարձնել հարցը, գրական հունձքը դիտել որպես արտադրական մի կոնֆերանս, որտեղ համապատասխան համամասնությամբ ներկայացված են հասարակության բոլոր օղակները, և՛ գյուղը, և՛ քաղաքը։

Կարևորը հասարակության առաջընթացի ուղղությանը հակամետ թեմայի խոր մշակումն է. հարկ է արդյունաբերական արտադրության զարգացման մեջ տեսնել գլխավոր արտադրաուժի՝ մարդու զարգացումը, գյուղի ու քաղաքի մերձեցման մեջ տեսնել ո՛չ միայն պատմական օրինաչափություն և զարգացման առաջադիմական միտումներն իր անձի պրիզմայում բեկող ժամանակակից գյուղի աշխատավորին, այլև մերժել հնի, իր դարն ապրած վարք ու բարքի աստիճանական վերացման առթիվ լսվող նվնվոցը, կամ, ինչպես շեշտեց ընկեր Բրեժնևը, նահապետականության գովերգման փորձերը։ Ավելի ստույգ՝ մեզ անհրաժեշտ է ոչ թե, ասենք, «արդյունաբերական», «շինարարական» կամ էլ «գյուղատնտեսական» վեպ, դրանք միայն պայմանական անվանումներ են, այլ վեպ այդ բնագավառներում աշխատող մարդկանց մասին, ոչ թե «քաղաքագրություն» կամ «գյուղագրություն», ինչպես դա ընդունված էր կոչել անցյալում, երբ քաղաքի ու գյուղի միջև խզումը որակական նշանակություն ուներ, այլ՝ «մարդագրություն»։

Միշտ և բոլոր ժամանակներում սովետահայ արձակի, պոեզիայի, դրամատուրգիայի նվիրական նպատակներից մեկն է եղել ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի կենարար էության գեղարվեստական պրոպագանդումը։ Դա մեր կյանքի, մեր սոցիալիստական իրականության էական հատկանիշներից մեկի օրինաչափ արտացոլումն է գեղարվեստական պրիզմայով, որն ունենալու է, անշուշտ, նորանոր դրսևորումներ։ Երախտագիտության ու սիրո ջերմ զգացմունքով են հայ գրողները պատկերում բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի հետ, որի կողքին, ինչպես եղբայրը եղբոր հետ, ահա արդեն շուրջ մեկուկես հարյուրամյակ է, նույն ճակատագրով ապրում, պայքարում, կառուցում է հայ ժողովուրդը։ Հիրավի, որպես ազգային մեծ տոն, իբրև նվիրական մի տարեթիվ մենք պատրաստվում ենք նշելու Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը։ Կասկած չի կարող լինել, որ մեր գրականությունն այդ փառապանծ հոբելյանը կդիմավորի ժողովուրդների բարեկամությունը դրվատող նոր, բարձրարվեստ ստեղծագործություններով։

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնա-



լիզմի խոր, բազմակողմանի և հմուտ վերամարմնավորումը եղել է ու միշտ կլինի սովետահայ գրականության նվիրական պարտքը։

Սովետական մարդու նյութական բարեկեցության բարձրացումը, որը եղել է և է կուսակցության մշտական հոգածության առարկան, այն ամուր կռվանն է, որ նպաստում է հասարակության յուրաքանչյուր անդամի հոգեկան հարըստացմանը, նրա մտավոր ունակությունների և հուզաշխարհի համակողմանի զարգացմանը, բարոյական վսեմ կերպարի ձևավորմանը։

Սակայն, գաղտնիք չէ, որ մեզ մոտ դեռևս հանդիպում են հոգեպես աղքատ, բարոյական զարգացման ցածր աստիճանի վրա գտնվող մարդիկ, որոնց աճող բարեկեցությունը հաճախ զուգորդվում է հիվանդագին երևույթներով՝ ընչաքաղցությամբ, դիրքի չարաշահմամբ, մասնավոր սեփականատիրական հոգեբանությամբ։ Իրենց բնույթով այս արատները խորապես խորթ են սոցիալիստական հասարակությանը, և եթե երբեմն դրսևորվում են, ապա բնավ էլ չեն բխում մեր հասարակության էությունից։ Դրանք անցյալի մնացուկներ են, որոնք պատմականորեն դատապարտված են ոչնչացման, սակայն, ինչ խոսք, իրենք իրենց, առանց ամենօրյա զորեղ հակահարվածների, չեն վերանա։ Դրա համար էլ «աշխարհի շալակը ելած» մարդկանց դեմ կուսակցությունը մղում է հետևողական ու անհաշտ պայքար, քաջ գիտակցելով այն մեծ վնասը, որ հասցնում են նրանք մեր հասարակությանը, ժողովրդի դաստիարակությանը, անհատի վսեմ հատկությունների ձևավորմանը, կոմունիստական բարոյականության նորմերի հաստատմանը։ Գրականությունը, գրական խայթող, սուր խոսքը էական նշանակություն ունեն այս պայքարի հաջողության համար։ Կարծում ենք, որ մեր գրողներն առավել կրքոտությամբ ու եռանդով պետք է պայքարեն քաղքենիության, մանրբուրժուական հոգեբանության բոլոր դրսևորումների դեմ։ «Իր հիմքում արվեստը թեր կամ դեմ պայքար է, անտարբեր արվեստ չկա ու չի կարող լինել»։ Գորկու այս հայտնի միտքը պետք է լինի մեր բոլոր գրողների նշանաբանը։

Կուսակցության համագումարը մի անգամ ևս շեշտեց, որ գրողի, արվեստագետի հաջողության գրավականը երկի խոր գաղափարայնության և գեղարվեստական կատարելության համաձուլվածքն է։ «Ամեն մի ստեղծագործության հասարակական նշանակության գնահատման գլխավոր չափանիշը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— անշուշտ, եղել և մնում է նրա գաղափարական ուղղվածությունը»։

Բայց չէ՞ որ գրողի գաղափարական ճիշտ ուղղությունը պայմանավորված է սոցիալիստական ռեալիզմը ներկայացնող արվեստագետի կուսակցականությամբ, դասակարգայնությամբ։ Ճիշտ այնպես, ինչպես միայն քաղաքական գիտելիքներին տիրապետելով չի կարելի ստեղծել գեղարվեստական գործ, այդպես էլ միայն վարպետությունը բավական չէ լիարժեք երկի կերտման համար, եթե հեղինակը զուրկ է անցյալի ու ներկայի հասարակական պրոցեսների բազմապիսությունը դասակարգային դիրքերից վերլուծելու և սինթեզելու համար անհրաժեշտ գիտելիքներից, կարողությունից ու հմտությունից։

Ուրեմն, մեր գրական կազմակերպության խնդիրն է՝ հոգ տանել, որպեսզի այսուհետև ևս մշտապես ամրապնդվի գրողների, տարեց թե երիտասարդ ստեղծագործողների գաղափարական կոփվածությունը, որպեսզի նրանք տիրապետեն հասարակական երևույթների ու պրոցեսների ճանաչման ու գնահատման մարքս-լենինյան մեթոդոլոգիային։ Միայն այս հիման վրա հնարավոր է խարսխել գրողի քաղաքացիական դիրքորոշումը, օժտվել գեղարվեստական ծանրակշիռ ընդհանրացումներ անելու հմտությամբ, ստեղծել սոցիալական հարուստ բովանդակությամբ գեղարվեստական բարձրարժեք երկ։

Այս խնդրի հետևողական իրականացումը հույժ անհրաժեշտ է մանավանդ ժամանակակից պայմաններում, երբ համաշխարհային քաղաքականության ասպարեզում, մի կողմից՝ տեղի է ունենում լարվածության թուլացում, մյուս կողմից՝ երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իսկ իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ։ Պետք է մշտապես հիշենք, որ կոմունիստական ու բուրժուական աշխար-

հայացքների պայքարում չի կարող լինել ո՛չ կոմպրոմիս, ոչ էլ չեզոքություն։ Իսկ գրական պրոցեսը չէ՛ որ մեր գաղափարական հակառակորդների մանրակրկիտ ու հետևողական ուսումնասիրության առարկան է մնում։ Նրանց անքթիթ հայացքից չի վրիպում մեր այս կամ այն հեղինակի դասակարգային տարտամ դիրքավորումը, գաղափարային ատաղձի խախուտությունը։ Այդ ամենը նրանք փորձում են ծառայեցնել իրենց զազիր, հակասովետական, նացիոնալիստական նպատակներին։

Բայց հարցն ունի նաև այլ կողմ։ Այսօր համաշխարհային մասշտաբներով, երբեմն արտաքուստ աննկատ, մեծ մասամբ նույնիսկ բացահայտ, սկզբունքային պայքար է ծավալվում մարդկային հասարակության կյանքում գրականության ու արվեստի սոցիալական դերի շուրջ։ Հոգևոր փակուղու դեմ առած բուրժուազիան գաղափարախոսության բնագավառում ջատագովում է հայացքներ, որոնք կոչված են շեղելու ուշադրությունը կյանքի հրատապ հարցերից, աշխատավորական զանգվածների կենսական պայքարից։ Բնավ պատահական չէ, որ արևմուտքում ծնունդ են առնում փիլիսոփայական, էսթետիկական, սոցիալ-քաղաքական հայացքներ, որոնք քարոզում են արվեստի ու գրականության անճանաչելիություն (ագնոստիցիզմ) տեսության ոլորտում և արվեստագետի ինքնադրսևորման բացարձակություն՝ պրակտիկայում։ Սա հանգեցնում է մի վիճակի, երբ թվում է, թե իրենց վախճանին են հասել բանաստեղծությունը, վեպը, առավել լայն առումով՝ առհասարակ գրականությունն ու արվեստը։ Անդիտակցության, անզգայականության վրա ազդելու տեսությունը, հակահերոսի ստեղծման ձգտումը արվեստի տեսության և պրակտիկայի մեջ սուբյեկտիվ իդեալիզմի ծայրահեղ դրսևորման արտահայտությունն են։

Այս ամենը, անշուշտ, նորություն չէ։ Բուրժուական աշխարհում հոգևոր ճգնաժամերը նույնպես հաջորդում են միմյանց գրեթե համաչափ պարբերականությամբ։ Պատահական չէ, որ բանաստեղծության մահացման, արվեստի խորտակման մասին արևմուտքում բարբաջում էին դեռ անցյալ դարի վերջերին, երբ նորագույն գիտությունն արմատական հեղաշրջում էր կատարում ֆիզիկայի բնագավառում, երբ տիրում էր դեկադանսը։

Արդեն այդ ժամանակ հայ իրականության մեջ հնչեցին նման տեսությունները մերժող տիրական դեմոկրատական ձայներ։

Սոցիալիստական արվեստն ու գրականությունն ավելի կենսահաստատ, կյանքով ու արևով լեցուն դրսևորումներով, կյանքի նկատմամբ լավատես հավատով հաստատեցին գեղարվեստական խոսքի ու կերպարի ո՛չ միայն գոյատևելու իրավունքը, այլև հասարակության կյանքում դրանց օրավուր բարձրացող դերի օրինաչափությունը։

Եվ հենց այդ դիրքերից ելնելով էլ, այսօր մեր խնդիրն է ո՛չ միայն լինել գաղափարական անհրաժեշտ բարձրության վրա, այլև ամենաակտիվ հարձակողական պայքար մղել բուրժուական տեսության ու հոգեբանության բոլոր դրսևորումների դեմ։

Այդ պայքարն ունի մի խիստ կարևոր, դժվարին բնագավառ։ Հիմնականը սովետական քաղաքացու էսթետիկական ճաշակի, նրա հոգում գեղագիտական չափանիշների մշակումն է։ Խոսքը արևմուտքի բուրժուական ճաշակի, հակաարվեստի, հակահերոսականության՝ մեզ համար խորթ ճաշակի ներթափանցման դեմ պայքարելու մասին է։ Գեղեցկի զգացումի ճիշտ դաստիարակությունը քաղաքական ու գաղափարական մեծ նշանակություն ունեցող հարց է։ Եվ իր տեսական հարցադրմամբ միանգամայն իրավացի է Վահագն Դավթյանը, որ սկզբունքային անհամատեղելիություն է տեսնում «գեղեցկի» բուրժուական հոգևոր տենդի ու ճգնաժամի հասկացության սերմերը սոցիալիստական կյանքի հողի վրա արհեստականորեն աճեցնելու հարցում։

Վերջապես, խնդրի մի երրորդ կողմի մասին։ Մարքս-լենինյան մեթոդոլոգիայի գերազանց իմացությունն անհրաժեշտ է մեզ բոլորիս՝ ճիշտ կողմնորոշվելու համար անցյալի ժառանգության գնահատման հարցում։ Անմիջական ու անքակտելի կապ գոյություն ունի ազգային հպարտության ու սովետական ժողո-



վրդի համազգային հպարտության՝ ինտերնացիոնալ դաստիարակության միջև։ Հանուն ազգային հպարտության լենինյան ըմբռնման՝ պարտավոր ենք պահել ու պահպանել մեր մշակույթի ու պատմության դեմոկրատական, առաջադիմական արժույթները՝ պատմության մեջ դրանց կատարած դերին համեմատ։ Պետք է մերժենք և նիհիլիստական մոտեցումը, երբ նսեմացվում է, իրոք, դեմոկրատական, առաջադիմական արժույթի դերն ու նշանակությունը, մերժենք և չափազանցումը, երբ տվյալ արժույթը գնահատվում է ոչ ըստ արժանվույն։

Մարքս-լենինյան մեթոդոլոգիան է միայն տալիս բանալին այն սկզբունքային մոտեցման, որով պետք է պահպանենք ու զարգացնենք ազգային առաջադիմական ավանդույթները և հրաժարվենք այն ամենից, ինչ արգելակում է զարգացման ընդհանուր ընթացքը։ Հարկ է մշտապես հիշել Մարքսի դիպուկ ֆրազը, ըստ որի «մեռյալ բոլոր սերունդների ավանդույթները, մղձավանջի նման, բռնանում են ողջ մնացածների ուղեղների վրա»։

Հանրապետության գրական կյանքի վերջին տարիների հատկանշական կողմերից մեկն է նոր ուժերի մուտքը գրականություն։ Մենք ունենք այժմ երիտասարդ գրողների մի ստվար ջոկատ, որի լավագույն ներկայացուցիչների երկերը շնչում են անմիջականությամբ, զգացվում է հեղինակների՝ հրատապ հարցեր շոշափելու, սովետական մարդու հոգեբանությունն անդրադարձնելու ձգտումը։

Սակայն չի կարելի չտեսնել նաև այն, որ երիտասարդների հետ տարվող աշխատանքում կան լուրջ թերություններ։ Դրա հետևանքով նրանցից ոմանք պարփակվում են նեղ թեմատիկ շրջանակներում, չափից դուրս երկչոտ են դիմում մեր աշխատանքային առօրյայի պատկերմանը, տարվում են առավելապես ներանձնական հայեցումներով և ակտիվ չեն մասնակցում գրական ու հասարակական կյանքին։ Երիտասարդ գրողների հետ տարվող աշխատանքի հարցը պետք է լրջորեն զբաղեցնի Հայաստանի գրողների միությանը, ՀԼԿԵՄ Կենտկոմին, մեր մամուլին։

Իր խոհուն, գործնական վերլուծությամբ ու խորհուրդներով նրանց պետք է օգնի գրական քննադատությունը։

Մեր ողջ գրական պրոցեսի իմաստավորման մեջ կարևոր դեր ունեն կատարելու գրականագիտությունն ու գրական քննադատությունը։

Դժվար է գերագնահատել այն բարերար ներգործությունը, որ ունեցավ այս ասպարեզում ՍՄԿԿ Կենտկոմի Գրական-գեղարվեստական քննադատության մասին որոշումը։ Կուսակցության Կենտկոմը պահանջեց բարձրացնել գրական-գեղարվեստական քննադատության մակարդակը, նրա խոսքը դարձնել ավելի դիպուկ, մարտունակ, անաչառ։ Սովետահայ գրականագիտությունը քիչ գործ չի արել և մեր գրականության հաջողությունների մեջ այն ևս ունի իր ծանրակշիռ բաժինը։ Ցավոք, քննադատական ու տեսական գործունեությունը բոլոր բնագավառներում չէ, որ հաջող է։ Տեսական հետազոտությունների և, հատկապես, գրաքննադատության վիճակը դեռևս հեռու է ժամանակի պահանջները բավարարելուց։ Այստեղ հաճախ չափանիշները նվազեցվում են, տուրք է տրվում համակրանքին ու հակակրանքին։ Քննադատությունն անուշադրության է մատնում հանրապետությունում լույս տեսնող շատ գրքեր, իսկ գրական մամուլի որոշ օրգաններ անբավարար են զբաղվում սովետահայ գրականության աչքի ընկնող երկերի գնահատությամբ ու պրոպագանդայով։

Գրաքննադատությունը կոչված է սոցիալական խոր վերլուծությունը զուգակցելու գեղագիտական ճշգրիտ գնահատականների հետ։ Այն պարտավոր է խթանել գրական պրոցեսի գաղափարական ու ստեղծագործական ակտիվությունը, գրական ոլորտներում ստեղծել փոխադարձ պահանջկոտության մթնոլորտ, համակցելով այն ստեղծագործողների հանդեպ բարյացակամ ու հոգատար վերաբերմունքի հետ։

Արդեն վաղուց ժամանակն է, որ բոլոր գրողները, քննադատները սովորեն նաև քննադատելու լենինյան ոճը, քննադատության, վիճաբանության կուլտուրան։ Լենինը նույնպես սուր էր քննադատում, բայց տարբեր էր նրա վերաբերմունքն իր համախոհների և գաղափարական թշնամիների նկատմամբ։ Եթե

համախոհներին նա քննադատում էր օգնելու, սխալները շտկելու, բարեկամական սկզբունքայնության մթնոլորտն ավելի առողջացնելու միտումով, ապա թշնամիների նկատմամբ նրա քննադատությունն անխնա էր, ոչնչացնող։ Մենք պետք է սովորենք զսպել մեր անհատական, ուրիշին նվաստացնող կրքերը, գործադրելով դրանք ոչ թե ընդդիմախոսին վիրավորելու, այլ առելիքի բովանդակությունն ավելի վառ, համոզիչ դարձնելու համար։

Մեր մեծ հայրենիքի ժողովուրդների եղբայրական ընտանիքում կենսական անհրաժեշտություն են տնտեսական և հոգևոր կապերի զարգացումն ու ամրապնդումը։ Պետք է գոհունակությամբ արձանագրել, որ սովետահայ գրողները, նրանց ստեղծագործական միությունը լայն աշխատանք են ծավալում եղբայրական հանրապետությունների հետ գրական-բարեկամական սերտ համագործակցության զարգացման նպատակով։ Որպես սովետական ժողովուրդների մշակույթի մեծ տոն, մեր երկրում նշվեց հայ ականավոր բանաստեղծ Ավ. Իսահակյանի ծննդյան 100-ամյակը։ Մայիսին մեծ շուքով կնշվի նաև հայ դասական դրամատուրգիայի փայլուն դեմքերից մեկի՝ Գ. Սունդուկյանի ծննդյան 150-ամյակը։ Այս փաստերը մի անգամ ևս վկայում են հայ ժողովրդի մշակույթի հետագա զարգացման նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության մեծ հոգատարության մասին։ Դրա մի նոր մարմնավորումն է ՀԿԿ Կենտկոմի՝ օրերս ընդունած որոշումը, որով մեր հանրապետությունում ստեղծվում է «Սովետական գրող» հրատարակչությունը։ Այդ հրատարակչության ստեղծումը նոր ազդակ կլինի մեր գրականության հետագա զարգացման համար։

Մեր երկիրը թևակոխել է տասներորդ հնգամյակը՝ որակի և արդյունավետության հնգամյակը։ Այս բնորոշումը լիովին վերաբերում է նաև մեր գրականության ու արվեստի զալիք ուղուն։ Իհարկե, ստեղծագործական պրոցեսը միշտ անհատական է և այստեղ չի կարելի կիրառել արտադրության տերմինաբանությունը։ Ներշնչանքն անհնար է ծրագրել։ Սակայն որակի հասկացությունը՝ իր լայն ըմբռնմամբ, լիովին համատեղելի է գեղարվեստական ստեղծագործության խնդիրների հետ։ Բոլորս պարտավոր ենք լավ կատարել մեզ վստահված գործը, և արվեստի ու գրականության գործիչները՝ նույնպես։ Նրանց ստեղծագործական աշխատանքի որակով, քաղաքացիական մղումների ու գեղարվեստական վարպետության հասունությամբ են պայմանավորված գրական խոսքի օգտակար գործողության գործակիցը, նրա ոգևորող, սխրանքների կոչող բովանդակությունը։

Մեր գրողներին սպասում են մեծ ու գրավիչ գործեր, բազմակերպ ու լուրջ խնդիրներ։ Դրանք տոգորված են վեհ ու շնորհակալ նպատակով— հարստացնել ժողովրդի հոգևոր աշխարհը, կոմունիստաբար դաստիարակել մեր օրերի մարդուն։ Նրանց գործունեությունը ծավալվում է բարոյա-քաղաքական արգասավոր իրադրության մեջ, որն ստեղծվել է մեր երկրում կուսակցության XXV համագումարի պատմական որոշումների շնորհիվ։ Համագումարը մեր բովանդակ կյանքին և, մասնավորապես, մեր գրականությանը տվել է նոր թափ ու լիցք, կարելի է ասել՝ մի վիթխարի թեմատիկ պլան, որ մշակման վառ հեռանկարներ է խոստանում։ Այժմ հաջողությունը պայմանավորված է նրանով, թե որքան ներդաշնակ և կուսակցականորեն նպատակասլաց կլինի բոլորիս աշխատանքը։ Սովետահայ գրողները եռանդ չեն խնայի այսուհետև ևս կերտելու մեր հերոսական ժամանակին ու ժողովրդին արժանի նոր, բարձրարվեստ երկեր։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Կ. ՉԵՌՆԵՆԿՈ**

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ որոշումները, համագումար, որը նշեց Սովետական Միության սոցիալ-տնտեսական զարգացման նոր խոշոր բնագծեր, կանխագծեց սովետական ժողովրդի ստեղծարար գործունեության վեհ հեռանկարներ, իրենց վրա են հրավիրում միջազգային լայն հասարակայնության ուշադրությունը, ոգեշնչում աշխարհի բոլոր առաջադեմ ուժերին՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։

Սովետական կոմունիստների համագումարը մեկ անգամ ևս ամբողջ աշխարհին ցուցադրեց Լենինի կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության նպատակասլացությունն ու հետևողականությունը, կուսակցություն, որն իր կոչումը տեսնում է աշխատավորների ամենալայն զանգվածներին ծառայելու մեջ, իր գործունեությունը կառուցում է մարքս-լենինյան անմահ ուսմունքի հիմքի վրա և վստահորեն կենսագործում նրա վսեմ իդեալները։ Մեր կուսակցության XXV համագումարը մեկ անգամ ևս ակնառու կերպով ցույց տվեց, որ ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության խնդիրները միաձուլված են, որ սովետական մարդկանց խաղաղ ստեղծարար աշխատանքին, կոմունիստական շինարարության վիթխարի պլանների իրականացմանը լիովին համապատասխանում է միջազգային ասպարեզում սովետական երկրի վարած արտաքին-քաղաքական խաղաղասիրական կուրսը, որի նպատակն է խաղաղությունն ու ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, բոլոր առաջադիմական խաղաղասեր ուժերի պաշտպանությունը և ռեակցիայի ու պատերազմի ուժերին հակահարված տալը։ Այդ կուրսի իրականացման հաջողությունները, իրենց հերթին, անխզելիորեն կապված են Սովետական Միության սոցիալ-տընտեսական զարգացման նվաճումների, նրա տնտեսական, նյութատեխնիկական պոտենցիալի ամրապնդման, նրա հզորության աճման և սովետական մարդկանց կյանքի բարելավման հետ։

«ՍՄԿԿ-ի միջազգային գործունեությունը համաժողովրդական գործ է,— համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը։— Այն հենվում է երկրի տնտեսական և պաշտպանական հզորության, նրա հոգևոր պոտենցիալի վրա, սովետական ժողովրդի աշխատանքով ամբողջ ստեղծվածի վրա»։

ԵՐԿՈՒ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԸՆԿԱԾ ՏԱՐԻՆԵՐԻՆ մեր երկիրը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, նշանակալիորեն առաջ է ընթացել կոմունիստական շինարարության բոլոր ուղղություններով։ Իններորդ հնգամյակի առաջադրանքների իրականացումը հնարավորություն ընձեռեց սոցիալիս-

տական էկոնոմիկան բարձրացնելու որակապես նոր մակարդակի, վիթխարի հաջողությունների հասնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների մասին ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի զեկուցման մեջ ամբողջ վեհությամբ հառնեցին սովետական մարդկանց հիանալի նվաճումները՝ արտադրության վերելքի, ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացման համար մղվող պայքարում։ Բերված տվյալները պերճախոս վկայությունն են սովետական էկոնոմիկայի հզորության, որը չգիտե անկումներ ու ճգնաժամեր, զարգանում է դինամիկ ու պլանաչափ՝ ի շահ ողջ հասարակության ու ժողովրդի։

Իններորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի, կապիտալ ներդրումների, ժողովրդի բարեկեցության բարձրացման ասպարեզում նոր միջոցառումների իրականացման համար պետության հատկացումները շատ ավելի են աճել, քան նախորդ որև՛ հնգամյակում։ Հինգ տարում հիմնական արտադրական ֆոնդերն աճել են 1,5 անգամ։ Նույն ժամանակամիջոցում ազգային եկամուտը մեծացել է 28, իսկ ռեալ եկամուտները, բնակչության մեկ շնչի հաշվով, 24 տոկոսով։ Արդյունաբերական արտադրության ծավալը հնգամյակում աճել է 43 տոկոսով։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական աշխարհում խորանում է ճգնաժամը, սովետական էկոնոմիկան պահպանում է զարգացման հաստատուն և կայուն տեմպեր։ Արտադրության ծավալը ՍՍՀՄ-ում հասել է վիթխարի չափերի։ Արտադրանքի կարևոր շատ տեսակների թողարկմամբ, ինչպիսիք են՝ նավթը, պողպատը, ածուխը, երկաթաքարը, ցեմենտը, հանքային պարարտանյութերը, Սովետական Միությունը գրավում է առաջին տեղը աշխարհում։

Հենվելով արտադրաուժերի զարգացման ձեռք բերված արդյունքների, սոցիալիզմի ստեղծարար հզոր ուժերի վրա, մեր կուսակցությունը իր համագումարում նշեց մեծագույն նպատակներ, որոնք սովետական ժողովրդին ոգեկոչում են աշխատանքային նորանոր սխրանքների։ Համագումարում ընդունված՝ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» փաստաթղթում նախատեսված է հիմնական արտադրաֆոնդերը մեծացնել 1,4 անգամ, արդյունաբերական արտադրանքի արտադրությունը՝ 35—39 տոկոսով և գյուղատնտեսության արտադրանքի արտադրության տարեկան միջին ծավալը՝ 14—17 տոկոսով։ Այս թվերից պարզ երևում է երկրի հարստության անշեղ աճի, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման հեռանկարը։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կմեծանան 20—22 տոկոսով։

ՍՍՀՄ-ում կառուցված զարգացած սոցիալիստական հասարակությունը ցուցադրում է իր վիթխարի հնարավորությունները, արտադրաուժերն արագ թափով աճեցնելու և դրա հիման վրա ամբողջ ժողովրդի կյանքը բարելավելու, սոցիալական խոշորագույն խնդիրներ լուծելու ընդունակությունը։

Եթե մենք դիմենք սոցիալիստական համագործակցության մյուս երկրների սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքներին ու հեռանկարներին, ապա կտեսնենք արտադրաուժերի բուռն աճի, հուժկու վերելքի ու առաջընթացի նույն պատկերը կյանքի բոլոր բնագավառներում։ Անցած հինգ տարում ՏՓԽ-ի երկրների ինդուստրիան զարգացել է 4 անգամ ավելի արագ, քան զարգացած կապիտալիստական պետությունների արդյունաբերությունը։ Առաջիկա հինգ տարիներին համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր երկրներում նախատեսվում է նշանակալի առաջընթաց տնտեսական ու հասարակական զարգացման ուղիով։ Տնտեսական, վալյուտային և սոցիալ-քաղաքական այն ցնցումների ֆոնի վրա, որ այժմ ապրում է կապիտալիստական աշխարհը, ռեալ սոցիալիզմը վառ կերպով ցուցադրում է իր առավելությունները բուրժուական կարգի նկատմամբ։ Սոցիալիստական երկրների կանխանշած պլան-



ների կատարումը, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ծրագրով նախատեսված խնդիրների իրականացումը կարևոր փուլ կհանդիսանան սոցիալիզմի միջազգային դիրքերն է՛լ ավելի ամրապնդելու, կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ նորանոր հաջողությունների հասնելու համար մղվող պայքարում։

Այսօր աշխարհում արդեն քիչ կգտնվեն այնպիսի սկեպտիկներ, որոնք կասկածի տակ դնեն սոցիալիստական երկրների նշած նպատակների ռեալությունը։ Այն, ինչ այսօր պլանային առաջադրանք է, ապագայի կանխատեսում, վաղը կդառնա իրականություն, միլիոնավոր մարդկանց առօրյա կյանքի իրողություն։ Սոցիալիզմի երկրներում իշխանության գլուխ կանգնած կոմունիստական կուսակցությունների կողմից մշակվող կուրսի գիտական խոր հիմնավորվածությունը ապացուցված է պրակտիկայով, հաստատված սոցիալիստական և կոմունիստական շինարարության փորձով, պատմական զարգացման ողջ ընթացքով։

Սովետական մարդիկ հաստատ գիտեն, որ ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումները, ինչպես և նախորդ համագումարների որոշումները, հետևողականորեն կկենսագործվեն, կուսակցության, ամբողջ ժողովրդի գործունեությամբ կմարմնավորվեն սովետական հասարակության նյութական և հոգևոր զարգացման ռեալ արդյունքների մեջ։ Նրանք մեծ խանդավառությամբ պաշտպանում են XXV համագումարի նշած կուրսը, և այդ պաշտպանությունը կուսակցության քաղաքականության բարձր արդյունավետության ու գործունության, նրա վերափոխիչ ուժի հզոր աղբյուրն է։

ՍՄԿԿ-Ի ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԲՆՈՐՈՇ ԳԻԾՆ ԱՅՆ է, որ նրա ներքին և արտաքին քաղաքականությունը միասնական ամբողջություն են, սերտորեն կապված են միմյանց, փոխադարձաբար պայմանավորված, ունեն ընդհանուր նպատակներ։ Երկրի ներսում կուսակցությունն իր գործունեությունը ծառայեցնում է «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» ծրագրային լոզունգի իրականացմանը։ Այդ նպատակին է ծառայում տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը, այն է— հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա։ Ջանալով առավել բարենպաստ արտաքին պայմաններ ապահովել այդ խնդրի հաջող լուծման համար, ՍՄԿԿ-ն հետևողականորեն ու հաստատակամորեն վարում է խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման, ժողովուրդների բարեկամական համագործակցության զարգացման, կապիտալիստական սիստեմի պետությունների հետ խաղաղ գոյակցության կուրս։

Անշեղորեն հետևելով այդ կուրսին, մեր կուսակցությունը ցուցադրում է իր քաղաքականության անխզելի հաջորդականությունը, հավատարմությունը լենինյան սկզբունքներին ու ավանդույթներին։ Սովետական պետության գոյության առաջին իսկ տարիներից նոր հասարակության կառուցումը և խաղաղության ապահովումը դիտվում էին որպես նույն շղթայի օղակներ։ Այդ խնդիրների լուծման գործում սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը միշտ ընթացել են կողք-կողքի։ Դեռ 1919 թվականին, երբ ավարտին էր մոտենում քաղաքացիական պատերազմը, Վ. Ի. Լենինը, հանդես գալով Սովետների Համամիութենական VII համագումարում, ասաց. «...առջևում է այն խաղաղ շինարարության գլխավոր շրջանը, որը մեզ բոլորիս գրավում է, որը մենք ուզում ենք, որը մենք պետք է ստեղծենք և որին մենք կնվիրենք մեր բոլոր ջանքերն ու մեր ամբողջ կյանքը» (Երկեր, հ. 30, էջ 276)։ Եվ նույն ելույթում Վլադիմիր Իլյիչը, նորից կրկնելով սովետական իշխանության խաղաղ առաջարկությունները Անտանտի երկրներին, համագումարի ամբիոնից հայտարարեց, որ Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետու-

թյունը ցանկանում է խաղաղ ապրել ժողովուրդների հետ և իր ողջ կարողությունները գործադրել ներքին շինարարության բնագավառում (տե՛ս նույն տեղը, էջ 284)։

Վ. Ի. Լենինի առաջարկած և Սովետների համագումարի ընդունած բանաձևում Համառուսական Կենտգործկոմին, Ժողկոմսովետին և Արտաքին գործերի ժողովրդական կոմիսարիատին հանձնարարվում էր. «...սիստեմատիկորեն շարունակել խաղաղության քաղաքականությունը, ձեռք առնելով դրա հաջողության համար անհրաժեշտ բոլոր միջոցները» (նույն տեղը, էջ 285)։

Անշեղորեն հետևելով լենինյան պատգամներին, ՍՄԿԿ-ն իր ողջ արտաքին քաղաքականությունն ուղղում է կայուն խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունն ապահովելու, մարդկային հասարակության կյանքից պատերազմը վերացնելու նպատակին։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Քաղբյուրոյի, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ղեկավարությամբ այդ քաղաքականության բնագավառում ձեռք բերված հաջողությունների, նրա գործունեության ու արդյունավետության ամենավառ վկայությունը հանդիսացան ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության պատմական ծրագրի կենսագործման արգասավոր արդյունքները։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեի և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ղեկավարությամբ մշակված սովետական արտաքին քաղաքականության նպատակասլաց հետևողական կուրսի հաջող ու անշեղ իրագործումը անչափ բարձրացրեց սովետական արտաքին քաղաքականության հեղինակությունը, որը հետզհետե ավելի ու ավելի բարերար ներգործություն է ունենում ողջ միջազգային կլիմայի վրա։ Սովետական Միության հսկայական ջանքերը և Լ. Ի. Բրեժնևի՝ որպես խաղաղության ականավոր մարտիկի, անձնական ծառայությունները միջազգային իրադրության առողջացման, ժողովուրդների համագործակցության զարգացման, խաղաղասիրական ուժերի համախմբման գործում ստացել են միջազգային լայն ճանաչում։

XXV համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման, համագումարի պատգամավորների ու արտասահմանյան հյուրերի ելույթներում ամբողջ վեհությամբ ցուցադրվեցին խաղաղության ծրագրի իրականացման, դրանում առաջ քաշված արտաքին քաղաքական կարևորագույն նպատակների իրագործման համար մեր կուսակցության ու ողջ սովետական ժողովրդի մղած պայքարի տպավորիչ արդյունքները։

«Այդ ծրագիրը,— իր զեկուցման մեջ նշեց Լ. Ի. Բրեժնևը,— ցույց տվեց «սառը պատերազմը» վերացնելու ռեալ ուղին, հստակ խնդիրներ դրեց պատերազմների վտանգից խաղաղ համագործակցության անցնելու պայքարում»։

Սոցիալիստական արտաքին քաղաքականության հզոր ներգործության տակ աշխարհում տեղի ունեցան խոր տեղաշարժեր, միջազգային կլիման էականորեն բարելավվեց, շրջադարձ կատարվեց «սառը պատերազմից» ու լարվածությունից դեպի մեղմացում, հասարակական տարբեր կարգ ունեցող երկրների հարաբերությունների նորմալացում։ Խաղաղության ծրագրի հետևողական իրականացումը նպաստեց համաշխարհային կարևորագույն պրոբլեմների լուծմանը, խաղաղության և ժողովուրդների անվտանգության հիմքերի ամրապնդմանը, հնարավորություն ընձեռեց լարվածության մեղմացման տենդենցը դարձնել ամբողջ միջազգային իրադրության տիրապետող գիծ և հետ մղել նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը։

Միջազգային ասպարեզում սովետական պետության վարած կուրսը, որը խարսխվում է գիտական ամուր հիմքի, սոցիալ-քաղաքական կարևորագույն գործոնների, աշխարհում դասակարգային ուժերի հարաբերակցության և արտաքին քաղաքական մյուս հիմնական պայմանների հաշվառման վրա, և որը իրականացվում է սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ համատեղ, հանգեցրեց հիրավի պատմական նշանակություն ունեցող արդյունքների, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի նպատակով ժողովուրդների հաջող պայքարի համար նոր բարենպաստ պայմանների ստեղծման։



ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ տրված է անցած հնգամյակում համաշխարհային իրադրության մեջ տեղի ունեցած փոփոխությունների վառ ու լայն պատկերը, առաջադրված են մեր երկրի արտաքին քաղաքականության նոր գլխավոր խնդիրները։

Սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, սոցիալիստական երկրների միասնության, համերաշխության, փոխադարձ աջակցության շնորհիվ անցած ժամանակաշրջանում ձեռք են բերվել այնպիսի նպատակներ, որոնց համար այդ երկրները պայքարել են երկար ժամանակ։ Փառապանծ հաղթանակ տարավ Վիետնամի ժողովուրդը, որը նվաճեց անկախություն և ազգային միասնություն, ազատություն ձեռք բերեցին Լաոսը և Կամբոջան։ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության սուվերենության համընդհանուր ճանաչումը, ԳԴՀ-ի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի արևմտյան սահմանների անխախտության հաստատումը միջազգային մասշտաբով, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ու դրանից հետո եվրոպական ժողովուրդների մղած ազատագրական պայքարի կարևորագույն արդյունքների ամրապնդումը— ահա սրանք են սոցիալիստական պետությունների միացյալ ջանքերի ծանրակշիռ պտուղները, որոնց շնորհիվ նախադրյալներ ստեղծվեցին կայուն խաղաղության և բարիդրացիական համագործակցության համար ինչպես Եվրոպայում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Սոցիալիզմը կայուն կերպով հաստատվել է Կուբայում, ամրապնդվել են նրա միջազգային դրությունն ու հեղինակությունը։

Անցած հինգ տարվա իրադարձությունները ակնառու կերպով ցույց տվեցին, որ միջազգային հարաբերություններում սոցիալիզմը բերում է խաղաղություն, բոլոր երկրների սուվերենության հարգում և իրավահավասար միջպետական համագործակցություն, հենարան է ծառայում իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդներին։ Հետզհետե ավելի է ուժեղանում ու խորանում սոցիալիզմի երկրների բարերար ազդեցությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ վառ կերպով ցույց է տրված սոցիալիստական պետությունների քաղաքական, տնտեսական և գաղափարախոսական սերտ համագործակցության պատկերը, որը խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում նրանց ձեռք բերած ընդհանուր հաջողությունների կարևորագույն նախադրյալն է։

Այդ համագործակցության հիմքը, դրա ուղղություն տվող ուժը սոցիալիզմի երկրների կոմունիստական կուսակցությունների մարտական դաշինքն է, նրանց աշխարհայացքի, նպատակների ու կամքի միասնությունը։ Սոցիալիստական համագործակցության երկրների կոմկուսակցությունների ղեկավարները շարունակ շփման մեջ են միմյանց հետ, սիստեմատիկաբար խորհրդակցում են ծագող խոշոր պրոբլեմների շուրջ, համատեղ նշում հետագա առաջընթացի ուղիները։

Սոցիալիստական պետությունների համագործակցության կարևոր ձևն է Վարշավայի պայմանագրի Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեն։ Այդ կոմիտեի շատ նախաձեռնություններ դրվել են միջազգային համաժողովների որոշումների հիմքում կամ արտացոլվել մի շարք երկկողմ միջազգային ակտերում։ Վարշավայի պայմանագիրը ծառայում է խաղաղության և սոցիալիզմի շահերին, և, քանի դեռ մնում է ՆԱՏՕ-ի բլոկը, Սովետական Միությունը Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցների հետ միասին լի է ռազմա-քաղաքական այդ դաշինքն ամրապնդելու վճռականությամբ։

Սոցիալիստական համագործակցության նյութական հիմքի ամրապնդմանն է ծառայում նրանց տնտեսական համագործակցության զարգացումը։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի իրականացումը այդ համագործակցությունը բարձրացնում է նոր, ավելի բարձր աստիճանի, խորացնում սոցիալիստական երկրների տնտեսական փոխգործողությունը, ուժեղացնում նրանց էկոնոմիկայի փոխհամալրումը՝ ի շահ յուրաքանչյուրի։ Արագորեն աճում է Սովետական Միության առևտուրը ՏՓԽ-ի երկրների հետ։ Հինգ տարում դրա ծավալն ավելի քան կրկնապատկվել է։ Մեծ նշանակություն են ունենալու երկարաժամկետ նպատակային ծրագրերի մշակումն ու







կատարումը, որոնց նպատակն է լուծել այնպիսի կարևոր պրոբլեմներ, ինչպես էներգիայի, վառելիքի, հումքի հիմնական տեսակների հարաճուն պահանջմունքների ապահովումը, մեքենաշինության մակարդակի բարձրացումը, պարենի և ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների նկատմամբ եղած պահանջարկի է՛լ ավելի լրիվ բավարարումը և այլն:

Եղբայրական կուսակցությունների գաղափարական համագործակցությունն ավելի ու ավելի է ընդլայնվում, նպաստում է գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակի բարձրացմանը յուրաքանչյուր կուսակցությունում, օգնում՝ է՛լ ավելի հաջող հանդես գալու երկու սիստեմների գաղափարախոսական հակամարտության մեջ: Այսօր գիտությունների շատ ուղղություններ զարգանում են կոլեկտիվ կերպով՝ սոցիալիստական երկրների գիտնականների կողմից, համագործակցում են մասսայական ինֆորմացիայի օրգանները:

Մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, իրավահավասարության և ընկերական համագործակցության սկզբունքների հիման վրա սոցիալիստական երկրների համախմբվածության աճը նպաստում է նրանց միջազգային դիրքերի ամրապնդմանը, մեր ժամանակի խոշորագույն խնդիրների լուծմանը: «Սոցիալիզմի երկրների հետ ունեցած հարաբերություններում,— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը իր զեկուցման մեջ,— ՍՄԿԿ-ն հաստատորեն հետևում է փորձված կանոնին՝ գործերը վարել իսկական իրավահավասարության և միմյանց հաջողությունների նկատմամբ շահագրգռվածության ոգով, որոշումները մշակել՝ հիշելով ո՛չ միայն ազգային, այլև ինտերնացիոնալ շահերի մասին»:

Այս դիրքորոշումը բարձր գնահատականի է արժանանում եղբայրական երկրներում, որոնք, իրենց հերթին, առաջնակարգ նշանակություն են տալիս սոցիալիստական համագործակցության, Սովետական Միության հետ համակողմանի համագործակցության հետագա զարգացմանն ու ամրապնդմանը:

Խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում Սովետական Միությունը մեծ ուշադրություն է նվիրում զարգացող երկրների հետ ունեցած հարաբերություններին, նրանց հետ համակողմանի կապերի ամրապնդմանն ու ընդլայնմանը: ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում արտացոլվել է մեր կուսակցության սկզբունքային այն կուրսը, որն ուղղված է այդ հարաբերություններն է՛լ ավելի զարգացնելու, իրենց ազատությունը պաշտպանող ժողովուրդներին աջակցելու, զարգացող երկրներում առաջադիմության, դեմոկրատիայի և ազգային անկախության ուժերի հետ համերաշխությունն ամրապնդելու նպատակին: «Գաղութային սիստեմի կործանման հետևանքով առաջ եկած պետությունների գերակշռող մեծամասնության հետ,— իր զեկուցման մեջ ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը,— մեզ միավորում է խորին նվիրվածությունը խաղաղությանն ու ազատությանը, նողկանքը ագրեսիայի և գերիշխանության բոլոր ձևերի նկատմամբ, մի երկրի կողմից մյուսի շահագործման նկատմամբ: Արմատական ձգտումների այդ ընդհանրությունը այն հարուստ ու բեղմնավոր հողն է, որի վրա այսուհետ ևս կամրապնդվի ու կծաղկի մեր բարեկամությունը»:

Բարձրանում է ազատագրված երկրների դերը համաշխարհային զարգացման մեջ, ուժեղանում է նրանց ազդեցությունը, ակտիվանում է նրանց արտաքին քաղաքականությունը: Համաշխարհային ուժերի ներկա հարաբերակցության պայմաններում այդ երկրները կարող են ավելի ու ավելի հաջող դիմադրել իմպերիալիստական դիկտատին, ձգտել արդարացի, իրավահավասար տնտեսական հարաբերությունների: Նրանք արդեն այժմ զգալի ավանդ են ներդնում խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող ընդհանուր պայքարում, և այդ ավանդը կարող է դառնալ է՛լ ավելի ծանրակշիռ:

ՊԱՅՔԱՐԵԼՈՎ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ խաղաղ գոյակցության սկզբունքները հաստատելու համար, սովետական դիվանագիտությունը անցած հինգ տարում կարողացավ զգալի առաջընթացի հասնել «սառը պատերազմից» լարվածության թուլացման, պատերազմների վտանգից պետությունների խաղաղ համագործակցության անցնելու ճանապարհին: Այդ ժամանակամիջոցում



բարելավվել են երկկողմ հարաբերությունները արևմտաեվրոպական երկրների հետ: Հաջողությամբ զարգացավ համագործակցությունը Ֆրանսիայի հետ, մեծ տեղաշարժ կատարվեց ԳՖՀ-ի հետ ունեցած հարաբերություններում, պոզիտիվ բնույթ են կրում հարաբերությունները Անգլիայի, Իտալիայի և Արևմտյան Եվրոպայի մյուս երկրների հետ: Ինչպես նշվեց XXV համագումարում, ըստ էության, Արևմտյան Եվրոպայի և ոչ մի պետություն զերծ չմնաց սոցիալիստական երկրների հետ հարաբերությունները նորմալացնելու լայն պրոցեսից:

Կարևորագույն նշանակություն ունեցան բազմակողմ հիմքի վրա ընդունված միջոցառումները: Համաեվրոպական խորհրդակցության հաջողությունը հնարավորություն ընձեռեց նպաստավոր պայմաններ ստեղծել Եվրոպայում խաղաղության պահպանման և ամրապնդման համար, խաղաղ համագործակցության հեռանկարներ նշել մի ամբողջ շարք մարզերում: Ստեղծված եվրոպական սահմանների անխախտության կոլեկտիվ հաստատումը, միջպետական հարաբերությունների սկզբունքների համալիրի մշակումն ու ամրապնդումը խորհրդակցության եզրափակիչ ակտում նշանավորում են խոշոր հաջողություն Եվրոպայում խաղաղ հարաբերությունների կարգավորման պայքարում:

Սովետական Միության արտաքին քաղաքականության եվրոպական ուղղության հետ միասին սովետական դիվանագիտության գործունեությունն ակտիվորեն իրականացվում էր նաև ուրիշ գծերով: Բովանդակությամբ ավելի հարուստ են դառնում սովետա-կանադական հարաբերությունները, ընդլայնվել են կապերը Լատինական Ամերիկայի երկրների հետ, ընդհանուր առմամբ, դրականորեն են զարգանում հարաբերությունները Ճապոնիայի հետ, որի հետ Սովետական Միությունը ձգտում է ապրել բարի դրացիության ու բարեկամության պայմաններում:

Կապիտալիստական երկրների հետ Սովետական Միության ունեցած կապերի ամբողջ կոմպլեքսում առաջնակարգ տեղը, բնականաբար, գրավում են հարաբերությունները Ամերիկայի Միացյալ Նահանգների՝ կապիտալիստական աշխարհի այդ խոշորագույն տերության հետ: Այդ հարաբերությունների բարելավումը վճռական նշանակություն ունեցավ նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը թուլացնելու և խաղաղությունն ամրապնդելու համար: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարները սկզբունքային փոխըմբռնման են հասել խաղաղ իրավահավասար փոխհարաբերությունները զարգացնելու անհրաժեշտության հարցում: Այնպիսի փաստաթղթեր, ինչպես «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխհարաբերությունների հիմունքները», միջուկային պատերազմը կանխելու վերաբերյալ համաձայնագիրը, ստրատեգիական սպառազինությունները սահմանափակելու մասին պայմանագրերն ու համաձայնագրերը քաղաքական ու իրավական ծանրակշիռ հիմք ստեղծեցին խաղաղ գոյակցության սկզբունքների վրա ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև փոխշահավետ համագործակցության զարգացման համար, որոշ չափով նվազեցրին միջուկային պատերազմի առաջացման վտանգը: Սովետա-ամերիկյան կապերը զարգանում են շատ ուղղություններով. երկրները ակտիվորեն փոխանակում են տարբեր պատվիրակություններ, ընդլայնվում են կուլտուրական փոխանակումները, իրագործվում են էկոնոմիկայի, գիտության և տեխնիկայի բնագավառում համագործակցության վերաբերյալ համաձայնագրերը:

Այսպիսով, Սովետական Միության միջազգային հարաբերությունների ամբողջ լայն պլանում ակնհայտ են նրա կոնստրուկտիվ խաղաղասիրական քաղաքականության, արտաքին քաղաքական լենինյան սկզբունքների, խաղաղության ծրագրի կենսագործման դրական արդյունքները: Անշուշտ, միջազգային հարաբերությունները, նրանց բովանդակությունն ու բնույթը կախված են ոչ միայն մեր երկրից և սոցիալիստական մյուս պետություններից: Միջազգային ասպարեզում գործում են զանազան ուժեր, և չի կարելի չտեսնել այն բացասական ներգործությունը, որ աշխարհի իրադրության զարգացման վրա ունենում են որոշակի շրջաններ կապիտալիստական երկրներում: ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ամենայն որոշակիությամբ ասված էր այդ ուժերի մեքենայությունների մասին:

Արևմտաեվրոպական երկրներում կան ազդեցիկ շրջաններ, որոնք չեն ցանկանում գործնականորեն հրաժարվել «սառը պատերազմի» հոգեբանությունից և հետևողականորեն կիրառել փոխշահավետ համագործակցության և ուրիշ երկրների ներքին գործերին չմիջամտելու քաղաքականություն։ Այսպես, ԳՖՀ-ում ռևանշիստական դիրքերում կանգնած աջ ուժերը հարձակումներ են գործում սոցիալիստական երկրների հետ հարաբերությունները նորմալացնելու գծի դեմ։ Ճապոնիայում ոմանք փորձում են անհիմն ու ապօրինի պահանջներ ներկայացնել Սովետական Միությանը։ Միացյալ Նահանգներում լարվածության մեղմացմամբ չշահագրգռված ազդեցիկ ուժերը ձգտում են խանգարել սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացմանը, հասնել սպառազինությունների մրցավազքի ինտենսիվացմանը ԱՄՆ-ում և ՆԱՏՕ-ում, փորձում են միջամտել ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ներքին գործերին։

Եվրոպայում միջազգային կլիմայի բարելավման հակառակորդները փորձում են ամլացնել ու խեղաթյուրել համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտի էությունը, այն օգտագործել հակակոմունիստական և հակասովետական դեմագոգիայի համար։ Մամուլի, ռադիոյի ու հեռուստատեսության օրգանների մի նշանակալի մասը Արևմուտքում թշնամություն են բորբոքում սոցիալիստական երկրների նկատմամբ, խոչընդոտում են փոխադարձ վստահության ամրապնդմանն ու համագործակցության զարգացմանը։

Խաղաղության գործի համար մեծ վտանգ է ներկայացնում Չինաստանի ներկայիս ղեկավարների քաղաքականությունը, որոնք փորձում են ձախողել մեղմացումը, խանգարել զինաթափման մասին առաջարկությունների իրագործմանը, հրահրել համաշխարհային պատերազմ։ Այդ քաղաքականությունը շաղկապվում է ամենածայրահեղ ռեակցիայի դիրքի հետ՝ սկսած միլիտարիստներից ու մեղմացման թշնամիներից արևմտյան երկրներում մինչև Հարավային Աֆրիկայի ռասիստներն ու Չիլիի ֆաշիստական կառավարողները։ Պեկինի հրձիգային գործունեությունը դարձել է իմպերիալիստական ուժերի ռեզերվը սոցիալիզմի դեմ մղվող պայքարում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սկզբունքային պայքար մղելով մաոիզմի դեմ, միաժամանակ ՉԺՀ-ի հետ ունեցած իր հարաբերություններում հետևում է իրավահավասարության, սուվերենության ու տերիտորիալ ամբողջականությունը հարգելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, ուժ չգործադրելու սկզբունքներին։ «Մի խոսքով, մենք պատրաստ ենք,— իր զեկուցման մեջ հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը,— նորմալացնել հարաբերությունները Չինաստանի հետ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա։ Ավելին, կարելի է վստահությամբ հայտարարել՝ եթե Պեկինում կվերադառնան իրոք մարքսիզմ-լենինիզմի վրա հիմնված քաղաքականության, կհրաժարվեն սոցիալիստական երկրների համար թշնամական կուրսից, կկանգնեն սոցիալիզմի աշխարհի հետ համագործակցության ու համերաշխության ուղու վրա, ապա դա համապատասխան արձագանք կգտնի մեր կողմից և հնարավորություն կբացվի ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի միջև զարգացնելու բարի հարաբերություններ, որոնք համապատասխանեն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Խոսքը պատկանում է չինական կողմին»։

Չնայած միջազգային կլիմայի ընդհանուր բարելավմանը, խաղաղության և ժողովուրդների անվտանգության թշնամիների մեքենայությունները մնում են որպես ռազմական սպառնալիքների, ընդհարումների ու ճգնաժամերի առաջացման ու սրման աղբյուր։ Իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները խթանում են սպառազինությունների մրցավազքը և, բորբոքելով «սովետական սպառնալիքի» մասին առասպելը, մեծացնում են ռազմական բյուջեները, իրենց զինանոցները համալրում նորանոր մահաբեր զենքերով։ Թեև համաշխարհային ուժերի հարաբերակցության փոփոխման շնորհիվ զգալիորեն նվազել են իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների հնարավորությունները, նրա բնույթը մնում է նախկինը։ Ուստի, անհրաժեշտ են բարձր զգոնություն, ակտիվ ջանքեր խաղաղությունը պաշտպանելու, միջազգային իրադրությունը է՛լ ավելի առողջացնելու, «սառը պատերազմի» ոգին միջազգային կյանքից իսպառ վերացնելու օգտին։



ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշեց խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության ու անկախության համար հետագա պայքարի լայն հեռանկար։ Այդ ծրագիրը XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի օրգանական շարունակությունն ու զարգացումն է։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ ձևակերպված խնդիրները թելադրված են համաշխարհային իրադարձությունների ողջ ընթացքով, միջազգային հարաբերությունների զարգացման ներկա փուլով։ Դրանք հենվում են արդեն ձեռք բերված արդյունքների, վերջին տարիներին միջազգային ասպարեզում կատարված արմատական տեղաշարժերի վրա և նպատակ են հետապնդում նվաճել նոր բնագծեր ժողովուրդների խաղաղ ապագայի, պատերազմը մարդկային հասարակության կյանքից բացառելու համար մղվող պայքարում։

Ծրագիրը նախատեսում է ամենից առաջ խաղաղության ամրապնդման գործում եղբայրական սոցիալիստական պետությունների համատեղ ակտիվ ավանդը մեծացնելու անհրաժեշտությունը, զարգացնելով նրանց համակողմանի համագործակցությունը նոր հասարակության կառուցման գործում։ Սովետական Միությունը ձգտելու է սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զենքի կուտակված պաշարների կրճատման, զինաթափման։ Այդ արմատական խնդիրը լուծելու համար նախատեսված են մի շարք կոնկրետ քայլեր։ Սովետական Միությունը կանի հնարավոր ամեն բան՝ ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման և կրճատման վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի նոր համաձայնագրի նախապատրաստումն ավարտելու, միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր և լրիվ դադարեցման, քիմիական զենքի արգելման և ոչնչացման, մասսայական բնաջնջման զենքի նոր տեսակների և սիստեմների ստեղծման արգելման, ինչպես նաև ռազմական ու թշնամական այլ նպատակներով բնական միջավայրի վրա ներգործության արգելման վերաբերյալ միջազգային պայմանագրեր կնքելու համար։ Նկատի է առնվում նաև նոր ջանքեր գործադրել Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջը վարվող բանակցությունները ակտիվացնելու նպատակով, հասնել այն բանին, որ շատ պետությունների ռազմական ծախսերի ներկայիս մշտական աճին փոխարինելու գա դրանց սիստեմատիկ կրճատման պրակտիկան, բոլոր միջոցները ձեռնարկել զինաթափման համաշխարհային կոնֆերանսի շուտափույթ հրավիրման համար։

Ծրագիրը նախատեսվում է խաղաղասեր պետությունների ջանքերը կենտրոնացնել մնացած պատերազմական օջախների, այդ թվում Մերձավոր Արևելքի օջախի վերացման վրա։ Համագումարում տված իր զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ՍՍՀՄ-ը պատրաստ է մասնակցելու այնպիսի պրոբլեմի լուծման որոնումներին, ինչպիսին է սպառազինությունների մրցավազքի դադարեցումը այդ շրջանում։

Համագումարի առաջադրած ծրագրում կարևոր տեղ է հատկացվում լարվածության թուլացումը խորացնելու, այդ թուլացումը պետությունների փոխշահավետ համագործակցության կոնկրետ ձևերի մեջ մարմնավորելու, համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտը լրիվ կենսագործելու խնդիրներին։ Խաղաղ գոյակցության սկզբունքներին համապատասխան, ՍՍՀՄ-ը հետևողականորեն շարունակելու է տարբեր բնագավառներում՝ քաղաքականության մեջ, էկոնոմիկայում, գիտության և կուլտուրայի ասպարեզում տևական փոխշահավետ համագործակցության հարաբերությունների զարգացումը Ամերիկայի Միացյալ Նահանգների, Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Մեծ Բրիտանիայի, Իտալիայի, Կանադայի, Ճապոնիայի և մյուս կապիտալիստական պետությունների հետ։

Համագումարի փաստաթղթերում ընդգծվում է Ասիայում անվտանգության ապահովման գործը այդ մայրցամաքի պետությունների համատեղ ջանքերի հիման վրա վարելու անհրաժեշտությունը։ Սովետական Միությունը ձգտելու է միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու մասին համաշխարհային պայմանագրի կնքման։ Այդպիսի պայմանագրի մասնակիցները, ներառյալ և միջուկային տերությունները, կպարտավորվեին միմյանց միջև ծագած վեճերը

լուծելու համար հրաժարվել ամեն տեսակ զենքի, այդ թվում և միջուկային զենքի օգտագործումից։

XXV համագումարի բնութագրած կարևորագույն միջազգային խնդիրներից մեկը գաղութային ճնշման, ժողովուրդների իրավահավասարության և անկախության սահմանափակման սիստեմի բոլոր մնացուկների, գաղութատիրության և ռասիզմի բոլոր օջախների լիակատար վերացումն է։

Եվ, վերջապես, համագումարն ընդգծեց մեր երկրի վճռականությունը՝ հասնել միջազգային առևտրում խտրականության և բոլոր արհեստական խոչընդոտների վերացման, միջազգային տնտեսական հարաբերությունների անիրավահավասարության, թելադրանքի, շահագործման բոլոր դրսևորումների վերացման։

Սովետական Միությունը կարևոր նշանակություն է տալիս միջազգային կյանքի այս ոլորտին։ Տնտեսական ինտեգրացման ուղիներում ամրապնդվում են սոցիալիզմի երկրների համագործակցության հզորությունն ու համախմբվածությունը։ Համագործակցությունը զարգացող երկրների հետ հեշտացնում է նրանց էկոնոմիկայի, հասարակական կյանքի վերակառուցումը առաջադիմական սկզբունքների վրա։ Կապիտալիստական աշխարհի հետ տնտեսական և գիտատեխնիկական կապերը ամրապնդում և ընդլայնում են խաղաղ գոյակցության քաղաքականության նյութական բազան։ Տասներորդ հնգամյակում նախատեսվում է Սովետական Միության միջազգային տնտեսական կապերի նշանակալի ինտենսիվացում, արտաքին առևտրական շրջանառության աճ։

Խաղաղության և միջազգային համագործակցության համար, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը, որ առաջադրել է ՍՄԿԿ XXV համագումարը, արտացոլում է ո՛չ միայն սովետների երկրի խաղաղության ջերմ ձգտումը, ո՛չ միայն նրա խաղաղասիրական կուրսի հետևողականությունը, այլև սովետական արտաքին քաղաքականության ռեալիզմը, գործուն կոնկրետությունը, որը դնում է մեր ժամանակի կենսական պահանջներին համապատասխանող գործնական խնդիրներ։ Բուրժուական երկրներում քիչ չեն քաղաքական ու պետական այն գործիչները, որոնք սիրով խոսում են խաղաղության մասին, իրենց ամենաբարի մտադրություններն արտահայտում դրա վերաբերյալ։ Սակայն, գործնականում հաճախ պարզվում է, որ դրանք լոկ սին լոզունգներ են, որոնց չեն հետևում խաղաղությունն ապահովող կոնկրետ քայլեր։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության խոսքն ու գործը անբաժան են։ Ինչպես երկու համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում մի անգամ ևս համոզիչ կերպով ապացուցվեց, կուսակցության առաջադրած խաղաղության պայքարի ծրագիրը դառնում է ակտիվ ու նպատակասլաց գործողությունների պլատֆորմ, հետևողականորեն ու հաստատակամորեն կենսագործվում և մարմնավորվում է կոնկրետ արդյունքների, համաշխարհային ասպարեզում նկատելի դրական փոփոխությունների մեջ։ ՍՄԿԿ-ն անշեղորեն հետևում է Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ բերված Վ. Ի. Լենինի պատվիրանին. որքան կարելի է շատ որոշումներ ու միջոցառումներ, «որոնք իսկապես որ դեպի խաղաղություն տանեին, եթե արդեն չասենք, պատերազմի վտանգների լիակատար վերացման» (Երկեր, հ. 33, էջ 457—458)։

Կասկած չկա, որ XXV համագումարի կողմից ձևակերպված արտաքին քաղաքական խնդիրների նոր ծրագիրը կհանդիսանա միջազգային իրադրության մեջ հետագա դրական տեղաշարժերի աղբյուր, բարերար ներգործություն կունենա համաշխահային իրադարձությունների զարգացման վրա։

ՎԱՐԵԼՈՎ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ, լարվածության թուլացման քաղաքականություն, մեր կուսակցությունը ելնում է, առաջին հերթին, սովետական ժողովրդի շահերից, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման պայքարի շահերից։ «Մենք չենք թաքցնում,— իր զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ լարվածության թուլացման մեջ տեսնում ենք սոցիալիստական և կոմունիստական խաղաղ շինարարության է՛լ ավելի բարենպաստ պայմաններ ստեղծելու ուղի։ Դա սոսկ հաստատում է, որ սոցիալիզմը և խաղաղությունն անբաժանելի են։ Եվ երբ դրա համար մեզ հանդիմանում են, դժվար է



չարտահայտել այն միտքը, որ նրանք, ովքեր այդ բանն անում են, վստահ չեն, թե կապիտալիզմը ընդունա՞կ է, արդյոք, գոյություն ունենալ, չդիմելով ագրեսիայի և զենքով սպառնալու, ձեռք չբարձրացնելով ուրիշ ժողովուրդների անկախության ու շահերի վրա»։

Ակնհայտ է, որ Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը համապատասխանում է նաև բոլոր ժողովուրդների արմատական շահերին, դեմոկրատիայի, ազատության ու առաջադիմության համար մղվող պայքարի խնդիրներին։ Սովետական մարդիկ համերաշխ են ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարի հետ, իրենց սոցիալական ու ազգային ազատագրության համար ժողովրդական լայն զանգվածների ելույթների հետ։ Հենց միջազգային խաղաղության իրադրության մեջ է, որ առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվում այդպիսի պայքարի հաջողության համար։ «Հավատարիմ լինելով հեղափոխական գործին,— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը,— մենք՝ սովետական կոմունիստներս, պայքարում ենք և կպայքարենք հանուն խաղաղության. դա մեծագույն բարիք է բոլոր ժողովուրդների համար և արդի մարդկության առաջադիմության կարևոր պայմանն է»։

Խաղաղության, խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման համար մղվող պայքարը ամենևին չի նշանակում սառեցնել սոցիալ-քաղաքական ստատուս-քվոն, վերացնել դասակարգային պայքարը։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, նրա սոցիալական հակասությունների սրումը, աշխատավորների ճնշման ուժեղացումը առաջ են բերում ժողովրդական լայն զանգվածների, և, ամենից առաջ, բանվոր դասակարգի պայքարը հանուն իրենց իրավունքների, հանուն սոցիալական ազատագրության։ Կապիտալիստական երկրների ներքին զարգացումը ծնում է հեղափոխական բանվորական շարժման ուժեղացում, առաջադիմական ուժերի գործունեության ակտիվացում։ Աճում է կոմունիստական կուսակցությունների ազդեցությունը, և դա մեր դարաշրջանի նշանավոր երևույթներից մեկն է։ Կոմկուսակցությունների, ամբողջ բանվորական շարժման փորձված զենքն է պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Այնպիսի պայմաններում, երբ բանվոր դասակարգի թշնամիները, իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերը կոորդինացնում են իրենց գործողությունները միջազգային մասշտաբով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները հաստատակամորեն պահպանելու անհրաժեշտությունը ժամանակի պահանջն է, հակաիմպերիալիստական պայքարի հաջողության կարևորագույն պայմանը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, իր զեկուցման մեջ ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը «մարքսիզմ-լենինիզմի գլխավոր սկզբունքներից մեկն է»։ «Մենք՝ սովետական կոմունիստներս,— հայտարարեց նա,— պրոլետարական ինտերնացիոնալիզմի պաշտպանությունը համարում ենք յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի սրբազան պարտականությունը»։

Իր արտաքին քաղաքականության մեջ Սովետական Միությունը հաստատակամորեն պաշտպանում է ուրիշ պետությունների գործերին չմիջամտելու, նրանց անկախությունն ու սուվերենությունը հարգելու սկզբունքը։ Ժողովուրդները պետք է ունենան ազատ, անկախ զարգանալու, իրենց բախտը անձամբ տնօրինելու իրավունք։ Եվ այն դեպքերում, երբ իմպերիալիզմը մերժում է նրանց այդ իրավունքը, երբ փորձեր են արվում պահպանելու կամ հաստատելու իմպերիալիստական ճնշումը, ժողովուրդները պայքարի են ելնում ու բոլոր մեթոդներով, այդ թվում և զինված ճանապարհով, պաշտպանում իրենց կենսական շահերը, իրենց սուվերեն իրավունքները։ Այդ օրինական ու արդարացի պայքարում նրանք կարող են հույսը դնել Սովետական Միության օգնության և աջակցության վրա։

Համագումարի ամբիոնից արտասահմանյան շատ հյուրեր բարձր գնահատական տվեցին մեր երկրի այդ անշահախնդիր, խոր ինտերնացիոնալիստական դիրքորոշմանը։ Խոսելով այն աջակցության մասին, որ Սովետական Միությունը ցույց տվեց Վիետնամին՝ ԱՄՆ-ի ագրեսիայի դեմ նրա մղած պայքարում, Վիետնամի աշխատավորների կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Լե Զուանը ՍՄԿԿ XXV համագումարի ամբիոնից հայտարարեց. «Որքան ավելի խորն է վիետնամական ժողովրդի նվիրվածությունը ազգային ա-

ղատագրությանն ու սոցիալիզմին, այնքան նա ավելի բարձր է գնահատում վիետնամա-սովետական մեծ բարեկամությունը։ Նա հավիտյան հիշելու է այդ աջակցությունն ու օգնությունը, որոնք տոգորված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ ոգով»։ Բնութագրելով Սովետական Միության և Կուբայի հարաբերությունները, Կուբայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար, Կուբայի Հանրապետության Հեղափոխական կառավարության պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրո Ռուսը, ելույթ ունենալով ՍՄԿԿ XXV համագումարում, նշեց, որ այդ հարաբերությունները «ինտերնացիոնալիզմի, փոխադարձ ըմբռնման, հարգանքի ու վստահության պրակտիկայի օրինակ են»։ «Մեր հաղթանակը պորտուգալական գաղութատիրության նկատմամբ հնարավոր եղավ Սովետական Միության օգնության շնորհիվ»,— ՍՄԿԿ XXV համագումարում ունեցած իր ելույթում հայտարարեց Անգոլայի ազատագրության ժողովրդական շարժման Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Անգոլայի Ժողովրդական Հանրապետության ներքին ադմինիստրացիայի մինիստր Ալվեշ Բատիշտան։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կայունության կարևոր տարր են հաղորդում միջազգային հարաբերություններին, դինամիզմ՝ քաղաքական, տնտեսական, կուլտուրական կապերի զարգացմանը։

ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերը, նրա առաջադրած խնդիրները Սովետական Միության արտաքին քաղաքականության բնագավառում լայն արձագանք գտան ամբողջ աշխարհում, արժանացան խաղաղասեր ու առաջադիմական բոլոր ուժերի հավանությանն ու պաշտպանությանը։ Այդ արձագանքները մի անգամ ևս բացահայտեցին համագումարի ակնբախ միջազգային նշանակությունը, նրա վիթխարի ավանդը համաշխարհային զարգացման հրատապ պրոբլեմների, մեր ժամանակի ամենակարևոր և ամենակենսական խնդիրների լուծման գործում։ «Դեռ երբեք կոմունիստական գաղափարները և ռեալ սոցիալիզմը չեն ունեցել այնպիսի ամուր դիրքեր, այնպիսի ազդեցություն միջազգային իրադարձությունների ընթացքի վրա, ինչպես ներկայումս,— գրել է բուլղարական «Ռաբոտնիչեսկո դելո» թերթը։— Այդ ՍՄԿԿ-ի, սովետների հզոր երկրի հիմնական ծառայությունն է»։ «Այն ամենը, ինչ տեղի է ունենում Կրեմլի համագումարների պալատում,— նշում է հունգարական «Նեպսաբադշագ» թերթը,— վերաբերում է ո՛չ միայն սովետական կոմունիստներին, ո՛չ միայն սովետական մարդկանց։ Իրադրության վերլուծությունը, որ տվեց համագումարը, դուրս է գալիս Սովետական Միության շրջանակներից, խթանում է այն հարցերի լուծումը, որոնք ընդգրկում են դարաշրջանի ու մարդկության համընդհանուր շահերը»։

Ոգեշնչված համագումարի նշած սքանչելի ծրագրով, սովետական ժողովուրդը վստահորեն ընթանում է կոմունիզմի կառուցման ուղիով։ Հանուն այդ վեհ նպատակի՝ նա նշանակալից հաղթանակներ է տանում խաղաղ աշխատանքի բնագավառում, իր ողջ եռանդը նվիրաբերում ստեղծարար աշխատանքին։ Հենց դրա համար էլ սովետական մարդիկ՝ համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, լի են խաղաղությունը պաշտպանելու վճռականությամբ։ «Սովետների երկիրը ամբողջ երկրագնդի ժողովուրդների աչքում իրավամբ հանդես է գալիս որպես խաղաղության պատվար և խաղաղության դրոշակակիր,— համագումարի ամբիոնից հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը։— Մենք հնարավոր ամեն ինչ անում ենք և կանենք, որպեսզի պաշտպանենք ու ամրապնդենք խաղաղությունը, մարդկությունը փրկենք նոր կործանարար պատերազմներից»։

Այդ հաստատուն վճռականությամբ է տոգորված մեր կուսակցության ամբողջ արտաքին քաղաքական գործունեությունը, նրա անսասան լենինյան կուրսը։

«Международная жизнь», № 4, 1976 г.

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Կ. Ռ. ՆԵՐՍԻՍՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆՆ ընդունել է մասսայական բնույթ, դարձել էկոնոմիկայի զարգացման հզոր շարժիչ ուժ, աճել է նրա դերը աշխատավորների ակտիվության ու նախաձեռնությունների զարգացման, աշխատանքի արտադրողականության և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում։

Գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում սոցմրցության անընդհատ զարգացումը, նրա որակական նոր դերը հասարակագիտության առջև խնդիր է դնում ավելի խորությամբ զբաղվել մրցության գործնական կազմակերպմամբ ու նրա տեսական հարցերի մշակմամբ։ Մասսաների մրցության հարցը հարկավոր է անդադար «...դնել ու քննարկել թե՛ տեսական, և թե՛ գործնական տեսակետից»,— ասել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 30, էջ 361)։

Սոցիալիստական մրցության էության, նրա կազմակերպման սկզբունքների մասին տնտեսագիտական ու փիլիսոփայական գրականության մեջ գոյություն ունեն տարբեր կարծիքներ։ Առանձին հեղինակներ մրցությունը դիտում են որպես տնտեսական կատեգորիա, սոցիալիզմի տնտեսական օրենք, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, արտադրության կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման մեթոդ, ընդհանուր սոցիոլոգիական օրինաչափություն, բարոյա-էթիկական կատեգորիա և այլն։

Մրցակցային հարաբերությունները բնորոշ են մարդկության զարգացման ողջ պատմությանը։ Մրցության սաղմերը երևան են եկել մարդկային հասարակության ծագման հետ՝ աշխատանքի պրոցեսում։ Դրանց առաջացման ու զարգացման նախադրյալներն են եղել մարդկանց համատեղ աշխատանքը, նրանց հասարակական շփումը։

Պարզ կոոպերացիան վերլուծելիս Կ. Մարքսը ընդգծել է, որ «...արտադրողական աշխատանքների մեծ մասի ընթացքում հասարակական կոնտակտն ինքն արդեն առաջ է բերում մրցակցություն և կենսական եռանդի յուրահատուկ բարձրացում, որն ուժեղացնում է առանձին անձերի անհատական գործունակությունը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 343)։

Մրցության սոցիալ-տնտեսական ձևը որոշվում է տվյալ արտադրաեղանակի ողջ արտադրահարաբերությունների սիստեմով։ Սոցիալիստական մրցությունն արմատապես տարբերվում է կապիտալիստական մրցակցությունից։ Կապիտալիզմի ժամանակ մասնավոր սեփականության հիման վրա մարդկանց միջև առաջացած հարաբերություններն անխուսափելիորեն ձեռք են բերում բուրժուական մրցակցության ձև՝ բոլորը բոլորի դեմ։ Կապիտալիստների միջև ընթանում է դաժան մրցակցային պայքար՝ հանուն կապիտալն ավելի շահութաբեր գործադրելու, հանուն շահույթի ավելի բարձր նորմայի և մասսայի։ «Մրցությունն ամենակատարյալ արտահայտությունն է այն պատերազմի, որ տիրում է ժամանակակից բուրժուական հասարակության մեջ և որը մղվում է

բոլորի կողմից՝ բոլորի դեմ» (Ֆ. Էնգելս, Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում, Երևան, 1934, էջ 140)։

Կ. Մարքսն իր Փիլիսոփայության աղքատությունը աշխատության մեջ, բանավիճելով մանրբուրժուական գաղափարախոս Պրուդոնի հետ, ցույց է տալիս կապիտալիստական ու արդյունաբերական մրցակցությունների միջև եղած արմատական տարբերությունը։ Կապիտալիստական մրցակցությունը մղվում է հանուն առևտրական նպատակների, հանուն շահույթի, իսկ «...արդյունաբերական մրցակցության անմիջական առարկան կլինի արդյունքը և ոչ թե շահույթը» (Կ. Մարքս, Փիլիսոփայության աղքատությունը, Երևան, 1948, էջ 159)։

Սոցիալիստական մրցությունը տեսական մեծ զարգացում և գործնական իմաստավորում ստացավ Վ. Ի. Լենինի մի շարք աշխատություններում։ Ինչպես ընդգծել է նա, կոնկուրենցիայի վերացումն ամենևին չի նշանակում մրցության վերացում, որ կապիտալիզմի ոչնչացումով ճանապարհ է բացվում, հնարավորություն է ստեղծվում կիրառելու մրցությունը «...իրոք լայնորեն..., իրոք մասսայական չափով...» (Վ. Ի. Լենին, Ինչպես կազմակերպել մրցությունը, Երևան 1973, էջ 4)։

Արտադրամիջոցների համաժողովրդական սեփականության տիրապետումը և սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումը օբյեկտիվ հիմք հանդիսացան մրցության լայն զարգացման համար։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները արմատական շրջադարձ առաջացրին մարդկանց գիտակցության, աշխատանքի ու միմյանց նկատմամբ նրանց ունեցած վերաբերմունքի մեջ։ Սոցիալիզմի օրոք է, որ աշխատավորի համար առաջին անգամ «...իր համար աշխատելու...» (նույն տեղը, էջ 5) հնարավորություն է ստեղծվում, օբյեկտիվ պայմաններ են առաջանում առանձին աշխատողների, արտադրական կոլեկտիվների տնտեսական և համաժողովրդական շահերի ճիշտ զուգակցման ու զարգացման համար։ Արտադրության պրոցեսում ստեղծվում ու զարգանում են փոխադարձ օգնության ու համագործակցության, կոլեկտիվիզմի հարաբերություններ՝ աշխատավորների ակտիվության և ստեղծագործական նախաձեռնությունների աճի պայմաններում։

Սոցիալիստական մրցությունն արտահայտում է աշխատավորների հենց այդ՝ արտադրության ընդհանուր վերելքի համար պայքարի, աշխատանքի ընդհանուր արդյունքի բարելավման նպատակին ուղղված հարաբերությունները։

Փոխադարձ օգնությունը և համագործակցությունը դրսևորվում են հատկապես արդյունավետ մրցակցության պայմաններում, երբ յուրաքանչյուր աշխատող ձգտում է առավելագույն ավանդ ներդնել աշխատանքի արտադրողականության աճի և արտադրության արդյունավետության բարձրացման գործում։ Այդ դեպքում անհանդուրժելի է, երբ մրցության ընթացքում «...ամլացվում է մրցության բուն էությունը՝ աշխատանքային փաստական մրցողականությունը, աշխատանքային փաստական մրցակցությունը, այսինքն այն գործոնները, որոնց հատուկ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ հիսնամյակի մասին, 1973, էջ 80)։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ և սովետական կառավարությունը սոցիալիստական մրցությունը գիտակցորեն նպատակաուղղում են բոլոր ռեզերվների լրիվ և արդյունավետ օգտագործմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և որակի բարձրացմանը, աշխատավորների ստեղծագործական ակտիվության լայն զարգացմանը, նրանց կոմունիստական դաստիարակությանը։ Մրցության գիտակցորեն կազմակերպումն ամենևին էլ չի ժխտում նրա տնտեսական կատեգորիա լինելու օբյեկտիվ բնույթը։ Սոցիալիստական հասարակարգում բոլոր տնտեսական օրենքները և կատեգորիաները գիտակցորեն ճանաչվում ու կիրառվում են։ Սոցմրցության էությունը սահմանելիս չի կարելի համաձայնել այն հեղինակների հետ, որոնք մրցությունը դիտում են որպես բարոյա-էթիկական կատեգորիա։ Նման մեկնաբանությունը գործնականում ժխտում է սոցմրցության օբյեկտիվ բնույթը, նրա կապը արտադրահարաբերությունների հետ և նրա տնտեսական ֆունկցիաները։ Անժխտելի է մրցության սոցիալ-դաստիարակչական ֆունկցիայի խոշոր նշանակությունը նոր մարդու



դաստիարակության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման, տնտեսավարման մեխանիզմի կատարելագործման ոլորտում։ Սոցիալիստական մրցությունը համարելով վերնաշենքային երևույթ, որոշ գիտնականներ դրանով իսկ անտեսում են նրա կարևոր նշանակությունը, որպես էկոնոմիկայի շարժիչ ուժի։ Մրցությունն ունի տարբեր առումներ, և նրա ֆունկցիաներն ընդգրկում են ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական ու բարոյական ոլորտները։ Սակայն մրցության էությունը պետք է տեսնել ոչ թե վերնաշենքի, այլ արտադրահարաբերությունների ոլորտում։

Սոցիալիստական արտադրաեղանակի զարգացման հետ մեկտեղ, մշտապես զարգանում ու հարստանում են սոցիալիստական մրցության բովանդակությունն ու կազմակերպման ձևերը։ Արդեն առաջին շաբաթօրյակները ցույց տվեցին «...բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն աշխատանքի արտադրողականության զարգացման մեջ, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 519)։ Վ. Ի. Լենինը այդ շաբաթօրյակներն անվանել է կոմունիստական՝ ընդգծելով դրանց խոշոր նշանակությունը նոր հասարակարգի կառուցման գործում։ Քսանական թվականներին մրցության պրակտիկայում երևացին հարվածային աշխատանքի խմբերը, արտադրական մրցույթները, արտադրանորմայի կամավոր բարձրացման համար շարժումը և այլն։

Առաջին հնգամյակի տարիները նշանավորվեցին մասսայական մրցության ծավալմամբ. գործարանը՝ գործարանի, կոլտնտեսությունը՝ կոլտնտեսության, բանվորը՝ բանվորի հետ։ Մասսայական մրցություն ծավալվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Լայն տարածում ստացան հարվածային ու տնտհաշվարկային բրիգադները, ըստ պրոֆեսիաների մրցությունը։

Մրցության ամենատարածված ձևը դարձավ հարվածայինների շարժումը, որը շարունակեց կոմունիստական շաբաթօրյակների ավանդույթը, ավելի լրիվ համապատասխանելով երկրի զարգացման նոր փուլին՝ ինդուստրացման իրագործմանը։ Մասսայական հարվածայնությունը շատ բանով նպաստեց առաջին և երկրորդ հնգամյակների ժամկետից շուտ կատարմանը, նախադրյալներ ստեղծեց ստախանովյան շարժման ծագման համար։

Ստախանովյան շարժման խթանները հանդիսացան բանվորների տեխնիկական ստեղծագործությունը, նրանց պայքարն աշխատանքի բարձր արտադրողականության համար՝ տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմամբ ու առաջավոր մեթոդների ներդրմամբ։ Միայն երկրորդ հնգամյակի տարիներին աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճեց 82 տոկոսով, պլանով նախատեսված 63 տոկոսի դիմաց։

Հենվելով հզոր ինդուստրիայի բազայի, նոր տիպի բանվորի վրա՝ ստախանովյան շարժումը գործնականում ցույց տվեց սոցիալիստական մրցության ամբողջ հարստությունը, նրա մեծ նշանակությունը որպես կադրերի դարբնոցի։ Կոմունիստական կուսակցությունը, խորաթափանցորեն այդ շարժման մեջ տեսնելով այն հզոր ուժը, որը կոչված էր կարևոր դեր կատարելու սոցիալիստական հասարակության կառուցման գործում, անհրաժեշտ բոլոր նախադրյալներն ստեղծեց նրա հաստատման ու լայն զարգացման համար։

Ստախանովյան շարժումը դրեց աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարի նոր փուլի սկիզբը։ Ինչպես նշվեց ստախանովյան շարժման 40-ամյակի առթիվ անցյալ տարվա սեպտեմբերին Մոսկվայում կայացած համամիութենական գիտագործնական կոնֆերանսում, այդ շարժումը կարևոր դեր խաղաց առաջին հնգամյակների պլանների կատարման գործում, Հայրենական մեծ պատերազմում մեր հաղթանակի ապահովման ու ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին, սոցիալիստական հասարակության հետագա զարգացման ասպարեզում։

Անձնվիրությունը և ընկերական փոխօգնությունն աշխատանքում, ստեղծագործական անդուլ որոնումները, տեխնիկայի հմուտ օգտագործումը— ստախանովականների այս ավանդույթները հիմա էլ առկա են մեր ժողովրդի աշխատանքային առօրյայում։

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ էական փոփոխություններ են առաջանում մրցության հարաբերությունների ոլորտում։ Դրանք որոշվում են, առաջին հերթին, արտադրաուժերի զարգացմամբ, գիտատեխնիկական հեղափոխության խոշոր ազդեցությամբ և սոցիալիստական արտադրահարաբերությունների ամբողջ սիստեմի ներգործությամբ։

Այդ փուլում, երբ բազմակողմանիորեն դրսևորվում են սոցիալիզմի բոլոր առավելությունները, մրցության մեջ երևան են գալիս որակական նոր առանձնահատկություններ։ Այժմ այն կրում է կոմպլեքսային բնույթ և նրա բոլոր հիմնական ֆունկցիաները դրսևորվում են օրգանական փոխադարձ կապի մեջ։

Սոցիալիստական մրցությունը նոր հասարակարգի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների կապն ապահովող գլխավոր միջոցներից մեկն է, գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր պայմանը։

Այսօր ավելի մեծ չափով, քան երբևէ, աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պայման է դարձել գիտատեխնիկական առաջընթացը։ Այժմ նոր տեխնիկան և տեխնոլոգիան պահանջում են առանձին աշխատողների կամ ամբողջ կոլեկտիվների ջանքերի ավելի սերտ միավորում, լայն պրոֆիլի պրոֆեսիաների առկայություն, մասնագիտությունների համատեղում։ Այդ ամենը հանգեցնում է աշխատանքի ստեղծագործական բնույթի զարգացման, աշխատողների անձնական նախաձեռնությունների դրսևորման, նրանց ունակությունների լրիվ օգտագործման։ Այսպիսով, աճում է մրցության հասարակական աշխատանքի արտադրողականության և գիտատեխնիկական առաջընթացի կապող օղակի դերը։ Արդի պայմաններում մրցության վրա ազդում են հասարակական վերարտադրության պրոցեսում կատարվող տեղաշարժերը։ Էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների առավելագույն օգտագործումը հարուցում է մրցության բովանդակության փոփոխում։ Զարգացած սոցիալիստական հասարակարգը ենթադրում է կտրուկ շրջադարձ արտադրության զարգացման էքստենսիվ մեթոդներից դեպի ինտենսիվը, հետևաբար, աշխատանքային կոլեկտիվների ուշադրությունը սևեռվում է արտադրության արդյունավետության, արդյունքի որակի վրա։ Այժմ մրցության գլխավոր խնդիրն է՝ բարձրացնել արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը։

ՍՄԿԿ XXV համագումարը, ամփոփելով անցած հնգամյակի արդյունքները, գոհունակությամբ ընդգծեց. «Մեր բոլոր նվաճումները բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության, բոլոր միութենական հանրապետությունների աշխատավորների անձնվեր ջանքերի՝ լայնորեն ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության արգասիքն են» («ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները», էջ 4)։

Հիրավի, լայնորեն ծավալելով սոցմրցությունը, մեր հանրապետության շատ տնտեսություններ նույնպես հասել են գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության և անասնապահական մթերքների որակի բարձրացման։ Այսպես, Ախուրյանի շրջանի Հովունիի կոլտնտեսությունում 1975 թ. հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը կազմել է 44 ցենտներ, որը, իններորդ հնգամյակի առաջին տարվա համեմատ, բարձր է մոտ 10 ցենտներով, կամ 29,4 տոկոսով։ Ցածր են աշխատանքային ու նյութական ծախսումները։ Հացահատիկի մեկ ցենտների արտադրման համար ծախսվել է 1,4 մարդ-ժամ, իսկ ինքնարժեքը չի գերազանցել 4,3 ռուբլուց։ Հաջողություններն էական են նաև անասնաբուծության բնագավառում։ Աշխատանքի արտադրողականությունը տնտեսությունում, 1974 թ. համեմատությամբ, մեկ աշխատողի հաշվով աճել է մոտ 27 տոկոսով։

Անիի շրջանի Ձորակապի տնտեսությունը 1975 թ. անջրդի պայմաններում մեկ հեկտարից ստացավ 32,8 ցենտներ հացահատիկի բերք։ Ցուցանիշները բարձր են նաև անասնաբուծության ճյուղում։ 1974 թ. համեմատ, արտադրության եկամտաբերությունը բարձրացել է 4,3, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 15 տոկոսով։

Հրազդանի շրջանի Մեղրաձորի կոլտնտեսությունում, որտեղ անհատական



և բրիգադային մրցություն է ծավալվում մթերքների արտադրության ավելացման և որակի բարձրացման նպատակով, խստորեն պահպանվում են մրցության սկզբունքները, նյութական և բարոյական խրախուսումը կատարվում է արտադրանքին ու նրա որակին համապատասխան։ 1975 թվականին պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների 98,6 տոկոսն ունեցել է միջակ և միջակից բարձր գիրություն։ Վաճառված մեկ գլխի միջին քաշը կազմել է 343 կգ, որ բարձր է շրջանի միջինից 60 կգ-ով, իսկ հանրապետության միջինից՝ 99 կգ-ով։ Անասունների ինտենսիվ աճեցման շնորհիվ տնտեսությունը 1975 թ. ստացել է շուրջ 75 հազար ռուբլու լրացուցիչ շահույթ։

Աշխատավորների նախաձեռնություններն ամենուր ծնում են արտադրության արդյունավետության բարձրացման պայքարի նոր ձևեր։ Օրինակ՝ այժմ հանդիպական պլանների ընդունման մասսայական լայն շարժում է սկսվել։ Այն օրգանապես զուգակցում է պետական առաջադրանքը տեղական նախաձեռնությունների, առանձին աշխատողների և բրիգադի, տեղամասերի և ձեռնարկությունների կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունների հետ։ Հանդիպական պլանը դառնում է մրցության և ժողովրդատնտեսական պլանավորման տարրերի օրգանական միացման միջոցներից մեկը։ Այն իրենից ներկայացնում է մրցության կազմակերպման ավելի առաջավոր ձև։

Հանդիպական պլանների շարժման ժողովրդատնտեսական մեծ նշանակությունն այն է, որ արտադրանքի թողարկման ավելացումը ձեռք է բերվում հիմնականում ներքին ռեզերվների մոբիլիզացման, աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրակարողությունների, առաջավոր փորձի, ռեսուրսների ավելի լրիվ և արդյունավետ օգտագործման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունների ծավալման հիման վրա։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆՆ անմիջականորեն կախված է դրա ղեկավարման մակարդակից, կազմակերպման կատարելագործման աստիճանից։

Հասարակական կազմակերպությունները կոչված են մշտապես հոգալու արտադրական կոլեկտիվներում ստեղծելու բարոյա-քաղաքական այնպիսի մթնոլորտ, որը կօժանդակի մարդկանց նախաձեռնությունների լրիվ դրսևորմանը։ Այդ գործում կարևոր դեր ունեն արհմիութենական կազմակերպությունները։ Մրցության կազմակերպման ասպարեզում արհմիությունների դերի ուժեղացման մասին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշման մեջ նշված է. «Արհմիությունները կոչված են ուժեղացնելու երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման աշխատանքը, աշխատավորությանն է՛լ ավելի ակտիվորեն ներգրավելու արտադրության ու հասարակական գործերի կառավարման մեջ, բարելավելու սոցիալիստական մրցության կազմակերպումը, դաստիարակելու կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 269)։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ մրցության կազմակերպումը մեկնում է տնտեսական խոր վերլուծումից, իրոք, հաշվի առնելով առաջավոր փորձը ու գիտության բոլոր նվաճումները, անչափ մեծանում է նաև տնտեսական մարմինների դերն այդ գործում։

«Տնտեսական ղեկավարները,— ասված է Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. որոշման մեջ,— պարտավոր են կազմակերպական-տեխնիկական և տնտեսական անհրաժեշտ պայմաններ ստեղծել բարձր արտադրողական աշխատանքի համար, որոնք յուրաքանչյուր աշխատավորի հնարավորություն ընձեռեն կատարելու ստանձնած պարտավորությունները, առավել լիովին դրսևորելու ընդունակությունները»։

Արդի փուլում հատուկ նշանակություն է ձեռք բերել արտադրության կազմակերպման նոր մեթոդների, տնտեսավարման լավագույն փորձի օպերատիվ և պլանաչափ տարածումը։ Դա պայմանավորված է փորձի նշանակության աճով, էկոնոմիկայի զարգացման վիթխարի մասշտաբներով և գիտատեխնիկա-

կան հեղափոխության պայմաններում արտադրաժամանակի տևողության կրճատմամբ։

Վերջին տարիներին մրցության պրակտիկայում մշակվել են առաջավոր փորձի ներդրման ու տարածման տարբեր ձևեր և մեթոդներ։ Դրանցից են կոմունիստական աշխատանքի, առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոցները և այլն։ Սակայն առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման գործում դեռևս կան լուրջ թերություններ, հատկապես գյուղատնտեսության բնագավառում։ Առանձին դեպքերում ավելի շատ խոսվում է այդ մասին, քան գործնական քայլեր արվում փորձը կիրառելու համար։ Բացի այդ, միշտ չէ որ հաշվի է առնվում առաջավոր փորձի ներդրման անհրաժեշտ պայմանների առկայությունը։ Դրա համար պետք է նախապես ստեղծել նյութական և այլ պայմաններ։ Առաջավոր փորձի ներդրումը չպետք է դիտել սոսկ իբրև կրկնօրինակում, դրան պետք է տալ ստեղծագործական բնույթ։

Առաջավոր փորձի ներդրումը պետք է մշտապես ուղեկցվի տնտեսագիտական հիմնավորումներով, համապատասխան մասնագետների ապահովումով։

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ մեծ նշանակություն է տրվում, հատկապես, աշխատավորների և կադրերի տնտեսագիտական կրթությանը, որը զգալիորեն օժանդակում է մրցության արդյունավետության, նրա դերի բարձրացմանը։

Պլանավորման սիստեմի կատարելագործումը, հաշվառման ու հաշվետվության գործի բարելավումը հրամայաբար պահանջում են ուժեղացնել տնտեսագիտական ծառայությունը պետական ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։ Տնտեսագիտական կադրերի գործունեությամբ է մեծապես պայմանավորված աշխատանքների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վերլուծումը, արտադրանքի ինքնարժեքի ճիշտ հաշվարկումը և դրա հիման վրա ռեզերվների բացահայտումն ու օգտագործումը, առաջավոր փորձի ներդրման հիմնավորումը և այլն։

«Է՛լ ավելի զարգացնելով տնտեսագիտական կրթությունը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— մենք պետք է հոգանք այն մասին, որ դա առավելագույն չափով նպաստի ամենուրեք աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի տարածմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորմանը արտադրության մեջ» (Լ. Ի. Բրեժնև, «ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում», «Հայաստան» հրատ., 1976, էջ 128)։ Առաջավոր փորձի պրոպագանդան օրգանապես զուգորդվում է տնտեսագիտական աշխատանքի լավ դրվածքի հետ։ Կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղատնտեսության առաջավորների նախաձեռնությունը, օրինակելի աշխատանքը ավելի գործնական ու արդյունավետ կլինեն, եթե դրանց ակտիվորեն մասնակցեն կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսագիտական ծառայությունը, տնտեսագետները, որոնք կոչված են ամեն կերպ նպաստելու աշխատանքի վարձատրման ու կազմակերպման կատարելագործմանը, նյութական ու բարոյական խրախուսման առաջավոր մեթոդների ներդրմանը։ Տնտեսագետները պետք է խորությամբ բացահայտեն փոխօգնության տնտեսական նշանակությունը, նրա ազդեցությունը աշխատանքի արտադրողականության աճի, աշխատանքի որակի և մյուս ցուցանիշների վրա։ Նրանք, տեղյակ լինելով տվյալ գոտու արտադրության ավելի առաջավոր տեխնոլոգիային, կարող են տալ դրա ներդրման տնտեսական հիմնավորումը և լուծել տնտեսագիտական ծառայության առջև հենց կյանքի, պրակտիկայի կողմից առաջ քաշված մի շարք հարցեր։ Այս տեսակետից խիստ կարևոր է նաև տնտեսություններում տնտեսագիտական ծառայությունը որակյալ մասնագետներով ապահովելու հարցը։ Մեր օրերում, օրինակ, չի կարելի նորմալ համարել այն փաստը, որ հանրապետության շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտեսագիտական ծառայությունը վստահված է մասնագիտական կրթություն չունեցող մարդկանց։ Գյուղատնտեսական արտադրության մեջ տնտեսագիտական ծառայության մա-



կարդակի բարձրացումը պետք է լրջորեն անհանգստացնի համապատասխան կազմակերպություններին։

Սոցիալիստական մրցության կազմակերպման արդյունավետության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի նաև մրցության մեջ հաղթողներին որոշելու մեթոդների ու չափանիշների կատարելագործումը։ Մրցության արդյունքներն ամփոփելիս կարևոր է, ամենից առաջ, հաշվի առնել պլանների կատարվածությունը և աշխատանքային ծախսումները, արտադրանքի որակը, աշխատանքի արտադրողականության մակարդակը, արտադրության ծավալի ավելացման փաստացի վիճակը։ Գյուղատնտեսության մեջ կարևոր է նաև հաշվի առնել յուրաքանչյուր շրջանի, սովխոզի ու կոլտնտեսության կոնկրետ հնարավորություններն ու բնատնտեսական պայմանները։ Դրա համար էլ մրցության հաղթողներին չպետք է բնորոշել միայն արտադրանքի բացարձակ աճով։

Սոցիալիստական մրցության բովանդակության, նրա կազմակերպման ձևերի հարստացման կարևոր պայմաններից մեկը աշխատանքի նկատմամբ նյութական ու բարոյական խթանների հետագա զարգացումն է։ Մրցության մեջ հարկավոր է ճիշտ կիրառել խրախուսման միջոցները, առանձնապես անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունը բարոյական խթանների նկատմամբ, որոնք կոմունիզմի կառուցման պայմաններում հետզհետե ավելի մեծ չափով են դառնում մեր առաջընթացի ներգործուն ուժը։

Ղեկավարվելով լենինյան պատգամներով, մեր կուսակցությունը և նրա Կենտրոնական կոմիտեն մշտապես քննարկում են սոցիալիստական մրցության հարցերը՝ տեսական ու գործնական առումով։ Սոցիալիստական մրցության գործնական կազմակերպման ու տեսական զարգացման համար կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ XXV համագումարը։ Այն գոհունակությամբ ընդգծեց, որ մեր երկրում մրցությունը ձեռք է բերել իսկապես համաժողովրդական թափ, որի շնորհիվ կատարվել է նոր խոշոր քայլ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, երկրի հզորության ամրապնդման գործում, որ մեր աշխատանքային առօրյայի նշանակալի երևույթներից են դարձել համաժողովրդական սոցիալիստական մրցության նոր, հզոր վերելքը, հանդիպական պլանների ընդունման շարժումը։

Հիրավի, ակնհայտ է, թե ինչպիսի խոր արմատներ են արձակել սոցիալիստական մրցության լենինյան գաղափարները։ Մրցությունը մեծ ազդեցություն է գործում երկրի ողջ տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքի, ինչպես նաև բարոյական մթնոլորտի վրա։

Սոցիալիստական մրցության դերն է՛լ ավելի է աճում մեր երկրի զարգացման արդի փուլում, տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման նպատակով մարդկանց ակտիվության, նրանց ստեղծագործական հնարավորությունների զարգացման գործում։ Ահա թե ինչու կուսակցությունը նոր ուժով է դնում սոցիալիստական մրցության հետագա ծավալման անհրաժեշտությունը, կուսակցական և հասարակական կազմակերպությունների, պետական և տնտեսական օրգանների ուժերն ուղղում մրցության կազմակերպման հետագա կատարելագործմանն ու զարգացմանը։ «Անհրաժեշտ է,— ասված է ՍՄԿԿ XXV համագումարի կողմից հաստատված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում,— է՛լ ավելի լայնորեն ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ աշխատանքում բարձր ցուցանիշների հասնելու, ժողովրդատնտեսական պլանները կատարելու համար, ամեն ինչ անել, որպեսզի տասներորդ հնգամյակը դառնա արդյունավետության հնգամյակ, որակի հնգամյակ՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի»։ Համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևը խնդիր դրեց «...այսուհետև ևս համակողմանիորեն զարգացնել սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը...» (էջ 126—127)։ Այդ խնդրի վրա է կուսկազմակերպությունների ուշադրությունը բևեռում նաև ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, 1976 թ. ժողովրդատնտեսական պլանը հա-

ջողությամբ կատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշումը։

Կուսակցությունը աշխատավորներին կոչ է անում հատուկ ուշադրություն դարձնել հատկապես սոցիալիստական մրցության մեջ աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության, աշխատանքի որակի բարձրացմանը։

Աշխատավորական կոլեկտիվները տասներորդ հնգամյակի առաջին օրերից համաժողովրդական լայն սոցմրցություն են ծավալել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների սոցիալ-տնտեսական վիթխարի ծրագրի իրականացման համար։ Արդյունավետություն և որակ՝ ահա թե որն է նոր հնգամյակում սոցիալիստական մրցության գլխավոր առանցքը։ Մրցությունն այժմ աշխատավորներին նպատակամղում է իրենց ձեռնարկության, կառույցի, սովխոզի, կոլտնտեսության գործունեության որակական ցուցանիշների բարելավմանը, յուրաքանչյուր աշխատատեղում, բոլոր օղակներում աշխատանքի որակի բարձրացմանը։ Այսուհետև ամեն մի աշխատող ու աշխատանքային կոլեկտիվ հաստատակամորեն կպայքարի հասնելու առավելագույն արդյունքների՝ նվազագույն ծախսումներով, առավել լրիվ և ռացիոնալ օգտագործելու մեքենաներն ու սարքավորումները, նյութական ու ֆինանսական ռեսուրսները, խնայելու աշխատաժամանակը, հումքը, վառելիքն ու էներգիան, հասնելու արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արագ ներդրման։

Սոցիալիստական մրցության լայն ծավալումը, նրա կազմակերպման մեթոդների կատարելագործումը այն կարևոր լծակներից են, որոնք մեծապես նպաստում են կուսակցության XXV համագումարի վիթխարի կանխագծումների իրականացմանը։

# ԲԱՐՁՐ ՏԵՄՊԵՐԻ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ

**Հայկական ՍՍՀ արդյունաբերության համար տասներորդ հնգամյակում սահմանվել են զարգացման ավելի բարձր տեմպեր քան միութենական մյուս հանրապետությունների (բացառությամբ Մոլդավական ՍՍՀ-ի):**

**Որո՞նք են դրա նախադրյալները։**

**Գ. ԱՂԱԲԱԲՅԱՆ**

Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի կոնստրուկտորական բաժնի պետ

**Խմբագրության խնդրանքով այս հարցին պատասխանում է տնտեսագիտության թեկնածու Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆԸ։**

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ընդունած «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում», իրոք, նախատեսված է Հայկական ՍՍՀ արդյունաբերության զարգացման ավելի բարձր տեմպ, քան ՍՍՀՄ միջինն է։ Տասներորդ հնգամյակի տարիներին ՀՍՍՀ արդյունաբերությունն իր զարգացման տեմպերով կզիջի միայն Մոլդավական ՍՍՀ-ին։

Արտադրամիջոցների հասարակական սեփականության պայմաններում հանրային արտադրությունը հանդես է գալիս որպես մեկ միասնական ամբողջություն, որի տարբեր ճյուղերն ու արտադրամիավորումներն այդ միասնական օրգանիզմի բաղկացուցիչ մասերն են։ Ուստի, ամեն մի միութենական հանրապետության էկոնոմիկա ՍՍՀՄ էկոնոմիկայի բաղկացուցիչ մասն է։

Հասկանալի է, որ գիտատեխնիկական առաջընթացի արդի շրջանում ժողովրդական տնտեսության այդ ամբողջական ու բարդ օրգանիզմի ներդաշնակ զարգացումը պայմանավորված է դրա տարբեր բաղադրամասերի միջև սահմանվող համամասնությունների ճշտությամբ, առավել արագ զարգացման համար ժողովրդատնտեսական այն ճյուղերի ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, որոնք նյութական ու աշխատանքային համեմատաբար քիչ ծախսումներով խոստանում են ավելի լավ հեռանկար։

Ամբողջ երկրի, ինչպես նաև նրա առանձին տնտեսական շրջանների ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման համար առաջնահերթ նշանակություն է ստանում նաև բնակչության աճի օրինաչափությունների հաշվառումը։ Այդ կապակցությամբ դեռևս XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «...ծառանում է ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի հեռանկարային երկարաժամկետ պլանավորման հարցը, որը հիմնվեր երկրի բնակչության աճի, ժողովրդական տնտեսության պահանջմունքների, գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումների վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 88)։

ՍՄԿԿ XXV համագումարը, անդրադառնալով աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման հարցին, խնդիր դրեց՝ ապահովել պլանների հավասարակշռվածությունը նատուրալ և արժեքային բալանսների, արտադրակարողությունների և աշխատանքային ռեսուրսների բալանսների սիստեմը կատարելագործելու հիման վրա։

Հայտնի է, որ ՍՍՀՄ միասնական էկոնոմիկայի պայմաններում ամեն մի տնտեսական շրջան, յուրաքանչյուր կոնկրետ ժամանակաշրջանում, բնութա-



3. «Լենինյան ուղիով», № 5

գրվում է բնակչության աճի որոշակի տեմպերով և աշխատանքային ռեսուրսների կազմավորման ուրույն աղբյուրներով։ Դա տվյալ շրջանի արտադրաուժերի զարգացման, սոցիալ-տնտեսական պայմանների և բնակչության պատմական զարգացման օրինաչափությունների արտահայտությունն է։ Օրինակ, եթե 1959—1975 թթ. ՍՍՀՄ-ում բնակչությունը, ամբողջությամբ վերցրած, ավելացել է 121,3 տոկոսով, ապա ՌՍՖՍՀ-ում՝ 113,8, Ուկրաինական ՍՍՀ-ում՝ 116,6, Բելոռուսիայում՝ 115,8, Մոլդավիայում՝ 132,1, մերձբալթյան հանրապետություններում՝ 120,6 տոկոսով։ Մինչդեռ միջինասիական հանրապետություններում այն կազմում է 167,2, Ղազախստանում՝ 152,4, անդրկովկասյան հանրապետություններում՝ 140,1 տոկոս։ Հայկական ՍՍՀ-ում այն նույնպես բնութագրվում է աճի բարձր ցուցանիշով՝ 158 տոկոս։ Նկատենք նաև, որ բնակչության աճի տեմպերով տարբերվում են ո՛չ միայն առանձին տնտեսական շրջաններ, այլև միևնույն տնտեսական շրջանը՝ տարբեր ժամանակահատվածներում։

Տնտեսական շրջանի աշխատանքային տարիք ունեցող և տարիքն անց բնակչության, ինչպես նաև հանրային տնտեսությունը համալրող աշխատանքային ռեսուրսների ի հայտ բերմամբ միայն հնարավոր է ապահովել նրա լրիվ ու բնական զբաղվածությունը, կարգավորել բնակչության մեխանիկական տեղաշարժերը, նպաստել աշխատանքային ռեսուրսներով չապահովված, բայց բնական հարուստ պաշարներ ունեցող տնտեսական շրջանների արտադրաուժերի զարգացմանը։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXV համագումարը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունների վերաբերյալ որոշման մեջ առանձնապես շեշտեց աշխատանքային ռեսուրսներով հարուստ տնտեսական շրջաններում դրանց օգտագործման արդյունավետությունն ապահովելու անհրաժեշտությունը։ Այստեղից էլ տրամաբանորեն բխում է այն պահանջը, որ անհրաժեշտ է արդյունաբերության աշխատատար արտադրությունները տեղաբաշխել՝ աշխատանքային ռեսուրսների բարենպաստ հաշվեկշիռ ունեցող միութենական հանրապետություններում և տնտեսական շրջաններում։

Ելնելով վերոհիշյալից, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի հիմնական ուղղություններում զուգակցվում են տընտեսական շրջանների տեղական առանձնահատկություններն ու երկրի տնտեսական զարգացման ընդհանուր օրինաչափություններից բխող ընդհանրությունները։ Այն դեպքում, օրինակ, երբ ՍՍՀՄ Եվրոպական մասում խնդիր է դրվում նյութական արտադրության ճյուղերում, գերազանցապես արդյունաբերության մեջ, առանց լրացուցիչ աշխատանքային ռեսուրսների ընդգրկման, ապահովել հասարակական ամբողջական արդյունքի ողջ հավելաճը, ապա տընտեսական այլ շրջանների (այդ թվում և Հայկական ՍՍՀ-ի) որոշ արտադրաճյուղերում շեշտը դրվում է հասարակական արտադրության ինտենսիվ զարգացումը նրա էքստենսիվ ընդլայնման հետ զուգակցելու վրա։

Բանն այն է, որ Հայկական ՍՍՀ-ն, Միութենական մյուս հանրապետություններում դրսևորվող ընդհանուր օրինաչափությունների հետ մեկտեղ, բնութագրվում է մի շարք առանձնահատկություններով։ Դա, ամենից առաջ, վերաբերում է նրա բնակչության բարձր աճին, որ, միութենական միջին ցուցանիշի համեմատությամբ, այս հնգամյակում ավելին կլինի։ Երկրորդ, բնակչության ընդհանուր թվի համեմատությամբ, առավել արագ կաճի նաև աշխատանքային տարիք ունեցողների թիվը։ Երրորդ, այդ նույն ժամանակամիջոցում կբարձրանա աշխատանքային տարիք ունեցող բնակչության կազմում առավել ակտիվ աշխատանքային տարիքի բնակչության տեսակարար կշիռը։ Չորրորդ, ժողովրդական տնտեսության, մասնավորապես արդյունաբերության կառուցվածքում, աշխատատար ճյուղերի գերակշռությունը։ Հինգերորդ, մշակելի հողերն ընդարձակելու խիստ սահմանափակ հնարավորությունները, ջրի ու էներգիայի ոչ մեծ պոտենցիալը։ Վեցերորդ, բնակչության բարձր և անընդհատ ավելացող խտությունը և այլն։

ՀԿԿ XXVI համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ նշվում է.



«Հաշվի առնելով հանրապետության յուրահատուկ դեմոգրաֆիկ պայմանները առկա աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործման նպատակով, պետք է պլանավորել արդյունաբերական նոր հանգույցների և արտադրական կոմպլեքսների հիմնումը և գոյություն ունեցողների հետագա զարգացումը, դրանց ճիշտ տեղաբաշխումը հանրապետության զանազան շրջանախմբերում»։

Դեմոգրաֆիական այդ ի՞նչ յուրահատուկ պայմանների մասին է խոսքը։

Բնակչության վերարտադրության բնորոշ կողմերից մեկը նրա աշխատունակ հատվածի վերարտադրությունն է, որի շնորհիվ կազմավորվում են հասարակության աշխատանքային ռեսուրսները։ Տվյալ ժամանակահատվածում որոշակի տարբերություններ են ի հայտ գալիս տնտեսական նույն շրջանի ողջ բնակչության և նրա աշխատունակ մասի աճի տեմպերի միջև։ Օրինակ, 1959—1970 թթ. ՀՍՍՀ բնակչությունն ավելացավ 41 տոկոսով, իսկ նրա աշխատանքային տարիք ունեցող մասը զգալիորեն պակաս էր։ Մինչդեռ թոշակառու և անչափահաս տարիքի բնակչությունն ավելացավ 53 տոկոսով։ Այդ պատճառով էլ 1959 թ. համեմատությամբ 1970 թվականին Հայկական ՍՍՀ բնակչության աշխատունակ տարիքը տոկոսային հարաբերությամբ նկատելիորեն նվազեց։ Դա բացատրվում էր նրանով, որ աշխատանքային տարիք էին մուտք գործում Հայրենական պատերազմի տարիներին ծնված երեխաները։ Այդ պատճառով էլ 1970 թ. Հայկական ՍՍՀ-ում 25—29 տարեկանները 24 տոկոսով, իսկ գյուղական վայրերում՝ 50 տոկոսով ավելի քիչ էին, քան 1959 թվականին։

Ներկայումս Հայաստանի բնակչությունը թևակոխել է վերարտադրության մի այնպիսի փուլ, երբ շեշտակիորեն ավելանում է նրա աշխատանքային տարիքի բնակչությունը։ Դա բացատրվում է նրանով, որ աշխատանքային տարիքը համալրում են 50-ական թվականների վերջերին ծնված երեխաները, մի ժամանակաշրջան, որ բնութագրվում էր ծնունդի բավականին բարձր մակարդակով։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատանքային տարիք թևակոխող բնակչությունը Հայաստանում դեռ բավական երկար ժամանակ կմնա իբրև աշխատանքային ռեսուրսների համալրման հիմնական աղբյուր։ Միայն տասներորդ հնգամյակում աշխատանքային տարիքի կհասնի մի քանի հարյուր հազար մարդ։ Պետք է ասել, որ դա մեր հանրապետությունում մինչև այժ նկատված աշխատանքային տարիք մուտք գործող բնակչության ամենամեծ թիվն է։ Պետք է հաշվի առնել նաև այն, որ իններորդ հնգամյակի տարիներին աշխատանքային տարիքի հասած սովորող բնակչության մի զգալի մասը կսկսի աշխատել այս հնգամյակում։ Ընդ որում, իններորդ հնգամյակում ևս աշխատանքային տարիքի են հասել բավական շատ պատանիներ ու աղջիկներ՝ շուրջ 315 հազար։ Մինչդեռ 60-ական թվականների սկզբներին դրանց տարեկան թիվը 22—25 հազար մարդ էր։

Այսուհետև ևս տարեցտարի կավելանա աշխատանքային տարիք մուտք գործողների բացարձակ թիվը և 90-ական թվականներին կհասնի բացարձակ աճի ամենաբարձր սահմանին։ 1991—2000 թթ. յուրաքանչյուր տարում աշխատանքային տարիքի կհասնեն տասնյակ հազարավոր պատանիներ ու աղջիկներ։ Դրա շնորհիվ ընդհանուր բնակչության կազմում նրա աշխատանքային տարիք ունեցողների տեսակարար կշիռը աստիճանաբար կբարձրանա և 80-ական թվականների կեսերին շատ ավելի մեծ կլինի, քան 1970 թվականին։ Իսկ հետագայում՝ ընդհուպ մինչև 90-ական թվականների վերջերը, թեև դանդաղ, բայց կսկսի իջնել։ 2000 թվականին Հայկական ՍՍՀ աշխատանքային տարիքի բնակչությունը ավելի շատ կլինի, քան 1970 թ. ողջ ազգաբնակչությունը։ Դրա հետ մեկտեղ, տասներորդ հնգամյակում աշխատանքային տարիքից կենսաթոշակայինի անցնողների թիվը կավելանա ընդամենը մի քանի հազար մարդով, ուստի դրանց հաշվին աշխատատեղեր գրեթե չեն ազատվի։ Ըստ որում,

կենսաթոշակի անցնող տղամարդկանց թիվը շուրջ 23 տոկոսով պակաս կլինի, քան 9-րդ հնգամյակի տարիներին։ Այսպիսով, աշխատանքային տարիք մուտք գործողների թվի ավելացումը, որ ուղեկցվում է կենսաթոշակի անցնող տղամարդ բնակչության թվի նվազման հետ, ավելի հրատապ է դարձնում տասնեբորդ հնգամյակում արտադրության մասշտաբների էքստենսիվ ընդլայնումը, այսինքն՝ նոր աշխատատեղերի ստեղծումը։

Ներքոհիշյալ աղյուսակը պատկերացում է տալիս ՀՍՍՀ աշխատունակ բնակչության աճի մասին։

ՀՍՍՀ աշխատանքային տարիքի բնակչության աճը, վերարտադրության փաստացի և հավանական գործակիցները (հազար մարդ)

| Տարիներ | Մուտքն աշխատունակ տարիք | Ելքն աշխատունակ տարիքից | Աշխատունակ բնակչության վերարտադրության գործակիցը |
|---|---|---|---|
| 1961—1965 | 160 | 55,4 | 0,65 |
| 1966—1970 | 232 | 69,3 | 0,70 |
| 1971—1975 | 315 | 66 | 0,79 |
| 1976—1980 | 366 | 76 | 0,79 |

Հայկական ՍՍՀ բնակչության, հատկապես աշխատանքային տարիք ունեցողների այդպիսի արագ աճը, որ տեղի է ունենում գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում, առաջիկայում կանխորոշում է աշխատանքային ռեսուրսներով հանրապետության ապահովվածության բարձր մակարդակ։ Դա էլ հենց դարձել է հանրապետության տնտեսական զարգացման ուղղությունների ընտրության, և, առաջին հերթին, արդյունաբերության զարգացման աճող տեմպերի որոշիչ գործոններից մեկը։

ՀՍՍՀ բնակչության համեմատաբար արագ տեմպերով աճը բացատրվում է ո՛չ միայն բնակչության բնական աճի ավելի բարձր ցուցանիշով (1974 թ. ՍՍՀՄ-ում, միջին հաշվով, բնական աճը կազմում էր 9,3, ՀՍՍՀ-ում՝ 16,7 մարդ), այլև հայրենադարձությամբ ու միջհանրապետական միգրացիայի դրական մնացորդով։ Ներկայումս ՀՍՍՀ բնակչության աճի շուրջ 20 տոկոսը բաժին է ընկնում միջհանրապետական միգրացիային։ Մարդահամարների տվյալներով՝ 1959—1970 թթ. հանրապետությունում բնակչության ընդհանուր աճի 20 տոկոսը՝ շուրջ 146 հազար մարդ, ապահովվել է միջհանրապետական միգրացիայի հաշվին։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության զարգացման արագ տեմպերը թելադրվում են նաև հանրապետությանը բնորոշ մի այլ առանձնահատկությամբ։ Դա մշակելի հողատարածություններն ընդարձակելու սահմանափակ հնարավորություններն են։ Ինչպես վերը նշեցինք, ներկայումս բնակչության ավելացման բավական բարձր ցուցանիշով են բնութագրվում նաև Միջինասիական հանրապետությունները և Ադրբեջանական ՍՍՀ-ն։ Բայց, արդյունաբերության հետ մեկտեղ, այդ հանրապետություններն ունեն գյուղատնտեսությունն ընդարձակելու լայն հնարավորություններ, մի հանգամանք, որից զուրկ է Հայկական ՍՍՀ-ն։ Միաժամանակ, չպետք է մոռանալ, որ այս տասնամյակում, ՀՍՍՀ գյուղատնտեսության մեջ զբաղվածության կրճատումը պետք է ավելի ինտենսիվ բնույթ կրի, քան ողջ ՍՍՀՄ-ում։ Պատճառը ոչ միայն նոր հողեր յուրացնելու սահմանափակ հնարավորություններն են, այլև ներկայումս մի շարք աշխատատար ճյուղերում զբաղվածության համեմատաբար բարձր տեսակարար կշիռը և ապագայում դրանք մեքենայացնելու խիստ անհրաժեշտությունը։

Հանրապետության գյուղատնտեսության բնագավառում դեռևս ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ ՀՍՍՀ գյուղատնտեսությունն իր



ֆոնդազինվածության և էներգազինվածության մակարդակով, ընդհանրապես, շատ է զիջում Միության միջին ցուցանիշին։ Իսկ վերջինս էլ, իր հերթին, ետ է մնում արդյունաբերության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ֆոնդազինվածության և էներգազինվածության մակարդակից։ Այդ պատճառով էլ ներկայումս գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ զբաղված է բնակչության 23—24 տոկոսը։ Մինչդեռ ԱՄՆ-ում, Կանադայում և տընտեսապես զարգացած մի շարք այլ կապիտալիստական երկրներում գյուղատնտեսության մեջ զբաղված է ինքնագործ բնակչության շատ ավելի փոքր մասը։

Ուստի, եթե միութենական հանրապետությունների մեծ մասում գյուղատնտեսության մեքենայացման շնորհիվ գյուղատնտեսական արտադրության որևէ բնագավառից ազատվող աշխատուժը կարող է ընդգրկվել այդ նույն արտադրության ընդլայնվող ճյուղերում, ապա ՀՍՍՀ-ում գյուղատնտեսությունից ազատվող աշխատուժը նույն բնագավառում ընդգրկվել չի կարող։ Էլ չենք խոսում աշխատանքային տարիքն համալրող գյուղական բնակչության մասին, որի քիչ մասը միայն կարող է ընդգրկվել բուն գյուղատնտեսության մեջ։

Հայկական ՍՍՀ-ն ներկայումս բնութագրվում է բնակչության խիստ բարձր խտությամբ։ Այդ ցուցանիշով այն զիջում է միայն Մոլդավական ՍՍՀ-ին։ Նախնական տվյալներով, 2000 թ. Հայաստանը կդառնա, հավանաբար, ամենախիտ բնակեցված հանրապետությունը. չմոռանանք, որ այստեղ, յուրաքանչյուր բնակչի հաշվով, պիտանի հողատարածությունները շատ ավելի քիչ են։

Այս բոլորի հետ մեկտեղ, կարևոր նշանակություն է ստանում հանրապետության բնական և հանքային արժեքավոր հարստությունների յուրացումը։ Հանքային հումքի բազմաթիվ կարևոր տեսակների արդյունահանման, ինչպես նաև հումքի կոմպլեքսային մշակման աստիճանի բարձրացման շնորհիվ ՀՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքում կբարձրանա թանկարժեք նյութերի տեսակարար կշիռը։

Հանրապետության գիտատեխնիկական առաջընթացի նյութական հիմքը կազմող մի շարք առաջատար ճյուղերի զարգացման բարձր մակարդակը և դրան համապատասխան ինժեներա-տեխնիկական ու բանվորական որակյալ կադրերի առկայությունը թելադրում են որակավորում պահանջող խիստ աշխատատար, քիչ էներգատար և ոչ ջրատար ճյուղերի զարգացումը։ ՍՄԿԿ XXV համագումարի մշակած պլանով Հայկական ՍՍՀ արդյունաբերության համար նախատեսվում է. «Շարունակել արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործումը, բարձրացնելով աշխատատար արտադրությունների բաժինը։ Նախատեսել մեքենաշինության ու մետաղատար ճյուղերի՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերության և սարքաշինության զարգացում» (տե՛ս ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները)։

Հասկանալի է, որ աշխատատար այդ արտադրությունների տեսակարար կշռի ավելացումը, իր հերթին, կհանգեցնի համախառն արտադրանքի աճի տեմպերի արագացմանը։

Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերական արտադրանքի ծավալի արագ տեմպերով աճը թելադրվում է առանձնապես փոքր քաղաքների զարգացման և դրանցում աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացմամբ։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց խոշոր քաղաքների աճի հետագա սահմանափակման և փոքր ու միջին քաղաքների զարգացման անհրաժեշտությունը։ Դա հավասարապես վերաբերում է և Հայկական ՍՍՀ-ին։ Բավական է ասել, որ 1975 թ. տվյալներով, հանրապետության միայն 3 քաղաքներում (Երևան, Լենինական, Կիրովական) կենտրոնացված է քաղաքային բնակչության 69 տոկոսը։ Դրանցում են կենտրոնացված հանրապետության հիմնական արտադրաֆոնդերի 65 տոկոսը, որոնց միջոցով թողարկվում է արդյունաբերության համախառն արտադրանքի ավելի քան երեք քառորդը։

Ճիշտ է, վերջին երկու տասնամյակների ընթացքում հանրապետությունում լուրջ ուշադրություն է նվիրվել նաև փոքր ու միջին քաղաքների զարգացման

հարցերին, բայց և այնպես քաղաքային բնակչությունը հիմնականում կենտրոնանում է թվարկված երեք քաղաքներում։ 1959—1975 թթ. ՀՍՍՀ քաղաքային բնակչության հավելաճի շուրջ 47 տոկոսը բաժին է ընկել Երևանին, 17,5 տոկոսը՝ Լենինականին և Կիրովականին։

Այսպիսով, ՀՍՍՀ արդյունաբերությունն այսուհետև ևս, մասնագիտացումը խորացնելու հետ մեկտեղ, պետք է պահպանի իր զարգացման համեմատաբար բարձր տեմպերը։ Այդ պայմաններում նրա մի շարք առաջատար ճյուղերում (այլ ճյուղերում ամբողջությամբ) նման տեմպերը կապահովվեն աշխատանքի արտադրողականության աճի հաշվին։ Դա կհանգեցնի արդյունաբերության մեջ (նախորդ հնգամյակի համեմատությամբ) զբաղվածության տեմպերի նվազեցմանը։ Այնուհանդերձ, նրա մի շարք ճյուղերին բնորոշ կլինի զբաղվածության բարձրացումը։ Արդյունաբերությունը, ընդհանուր առմամբ, կմնա աշխատանքային տարիքի հասնող բնակչության մի զգալի մասն ընդգրկող հիմնական բնագավառներից մեկը։

ՀՍՍՀ արդյունաբերության այլ ճյուղերում (քիմիական, շինանյութերի, տարբեր ժամանակաշրջաններում նաև՝ սննդարդյունաբերության որոշ ճյուղերում) զբաղվածների միայն բացարձակ ավելացման և հարաբերական կրճատման պայմաններում աշխատանքային ռեսուրսները հիմնականում կընդգրկվեն մեքենաշինության ու թեթև արդյունաբերության մեջ։

Նման երևույթը պայմանավորված է ո՛չ միայն հանրապետության բնակչության զարգացման օրինաչափություններով և աշխատանքային ռեսուրսների բանական զբաղվածությունն ապահովելու անհրաժեշտությամբ։ Բանն այն է, որ այդ ճյուղերի ձեռնարկությունները, հիմնականում լինելով աշխատատար, միաժամանակ ջրի և էներգիայի մեծ պահանջ չեն հարուցում, կարող են տեղաբաշխվել ցանկացած վայրում։ Դա կնպաստի փոքր քաղաքների և գյուղական վայրերի աշխատանքային տարիք մուտք գործողների ու գյուղատնտեսության հետագա մեքենայացման շնորհիվ ազատված աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածությանը, բնակչության սպասարկման բարելավմանն ու ներհանրապետական մեխանիկական տեղաշարժերի մեղմացմանը։ Միաժամանակ, այդ ճյուղերի ձեռնարկությունները զբաղեցնում են համեմատաբար քիչ տարածություն, չեն աղտոտում մթնոլորտն ու միջավայրը և, բացի այդ, կարևոր են գյուղատնտեսական շրջաններում ու փոքր քաղաքներում ապրող կանանց աշխատուժն օգտագործելու տեսակետից։ Արդյունաբերության և ոչ-արտադրական ոլորտի ճյուղերի հետագա տեղաբաշխման բարելավումով միայն կհաղթահարվի աշխատուժի օգտագործման բնագավառում ներկայումս նկատվող միակողմանիությունը։ Չնայած ՀՍՍՀ արդյունաբերության մեջ զբաղվածության բացարձակ աճին, բնակչության ընդհանուր թվում այդ ճյուղում զբաղվածների հարաբերական ցուցանիշը, նախկինի նման, կզիջի Միության միջինին, այն դեպքում, երբ հանրապետությունում քաղաքային բնակչության տոկոսն ավելի բարձր կլինի։ Այլ պատճառների հետ մեկտեղ, դա բացատրվում է, ՍՍՀՄ միջինի համեմատությամբ, հանրապետության բնակչության կազմում անչափահասների (0-ից 15 տարեկաններ) ավելի մեծ տեսակարար կշռով։ ՍՍՀՄ միջինի համեմատությամբ, արդյունաբերության մեջ զբաղվածների հարաբերական ցուցանիշը ներկայիս նման ցածր կլինի նաև աշխատանքային ռեսուրսների ընդհանուր թվի մեջ։ Դա բացատրվում է ոչ-արտադրական ոլորտի որոշ ճյուղերում, մասնավորապես լուսավորության և առողջապահության մեջ, բնակչության 1000 շնչի հաշվով ավելի բարձր զբաղվածությամբ։

ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործումը վիթխարի չափով կխթանի հանրապետության արդյունաբերության հետագա զարգացումը և էապես կնպաստի արտադրաուժերի ճիշտ տեղաբաշխմանն ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացմանը։

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԻՄՆԱՐԱՐ ԵՐԿԸ

## 1.

ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂԻ ԳՐԱԴԱՐԱՆԸ հարստացավ մի հոյակապ երկով ևս։ Վ. Ի. Լենինի **Երկերի լիակատար ժողովածուի** հայերեն երրորդ հատորն է այդ, որի բնագրի առաջին հրապարակումից 77 տարի է անցել։ Հիրավի, դա մեր ապրած դարի նախաշեմին էր, երբ Ռուսաստանի հեղափոխական շարժման լենինյան փաղանգը հասարակական գոռ բախումների ասպարեզ էր իջել՝ աշխարհը մարքսիստաբար վերափոխող իր քաղաքական մաքառումներով ու տեսական ծանրակշիռ, ուղեցույց հետազոտություններով։ Դրանցից մեկը **Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում** խորագրով աշխատությունն էր։

Հանկայական ջանքերի այդ մեծարժեք երկը հեղինակն սկսեց գրել (1896 թ.) բանտում և ավարտեց (1899 թ.) աքսորավայրում։ Անհրաժեշտ է նշել, որ Լենինն այդ երկը շարադրելիս ուսումնասիրել է տարբեր բնույթի ավելի քան 500 աղբյուրներ։ Հանդիսանալով ստեղծագործական մարքսիզմի ներդաշնակ մարմնավորումը և Կ. Մարքսի **Կապիտալի** պատմա-տրամաբանական շարունակությունն ու զարգացումը՝ Լենինի այդ երևելի երկը ո՛չ միայն նշանավորեց նարոդնիկության գաղափարական վերջնական ջախջախման փուլը, այլև հեղափոխական մարքսիզմի լուսարձակի ներքո հստակ ցուցահանեց ռուսաստանյան կապիտալիզմի երկունքի գալարումները, ամենայն ճշգրտությամբ մշակեց հայրենի երկրի հեղափոխության մանկաբարձի՝ նոր-նոր առնացող պրոլետարիատի մոտալուտ մարտերի տակտիկան, կոնկրետ նշեց սոցիալիստական հեղափոխության հաղթության բաղձալի ելքը։

Իր ստվարածավալ այս աշխատության առաջին գլխում Վ. Ի. Լենինն ընթերցողներին համառոտակի ծանոթացնում է կապիտալիզմի ներքին շուկայի վերաբերյալ գիտական քաղաքատնտեսության տեսական հիմնական դրույթներին։ Իսկ հաջորդ երեք գլուխներում փաստական հարուստ նյութերի օգնությամբ բնութագրում է «...հետռեֆորմյան Ռուսաստանի հողագործության կապիտալիստական էվոլյուցիան», որը դրսևորվում է սաստիկ կեղեքվող գյուղացիության զանգվածային քայքայմամբ, կալվածատիրական կոռվորային տնտեսակարգը՝ կապիտալիստականով փոխարինվելով և առևտրային ու կապիտալիստական հողագործության արագ հաստատմամբ։

Մնացյալ չորս գլուխներում հեղինակը համակողմանի ու խոր վերլուծում է ռուսաստանյան կապիտալիզմի տարբեր փուլերի բուռն ընթացքի սոցիալ-տնտեսական արմատական փոփոխությունները և այդ ամենի հետևանքով՝ նարոդնիկական ու լիբերալ-բուրժուական գաղափարաբանների ակներև սնանկությունը։ Գիտական սխրանք հանդիսացող վերոհիշյալ գրքի երկրորդ հրատարակության (1907 թ.) հակիրճ առաջաբանում Լենինը մի քանի պարբերությամբ արտահայտել է այն համոզումը, ըստ որի, Ռուսաստանի հեղափոխական գոտեմարտերին մասնակցող բոլոր դասակարգերի դրսևորած քաղաքական տակտիկան հաստատեց սույն աշխատության էջերում հեղինակի

սևեռած՝ դասակարգային ուժերի փոխհարաբերության գնահատականի ճըշտությունը: Եվ որ գլխավորն է, ակներև դարձավ «պրոլետարիատի ղեկավար դերը: Երևաց և այն, որ պատմական շարժման մեջ նրա ուժն անչափ ավելի է, քան նրա բաժինն է բնակչության ընդհանուր զանգվածում: Մեկ և մյուս երևույթի տնտեսական հիմքն ապացուցված է այս աշխատության մեջ» (էջ 13):

Հեղափոխական շարժման առաջընթացին մատուցած Լենինի խոշորագույն ծառայություններից է և այն, որ պատմա-տնտեսական ու վիճակագրական բազում փաստերի քննությամբ վերհանեց «...գյուղացիական հեղափոխական շարժման խոր աղբյուրները..», գյուղացիական «զանգվածի հեղափոխականության խոր արմատները» Ռուսաստանում, նրա «մանր-բուրժուականությունը և՛ տնտեսատիրական, և՛ պրոլետարական տենդենցների հակամարտությունը նրա ներսում»: Սրա հետ մեկտեղ, Լենինը պարզ նշմարում էր այն իսկությունը, որ «Աղքատացած մանր տնտեսատիրոջ տատանումը հակահեղափոխական բուրժուազիայի ու հեղափոխական պրոլետարիատի միջև, հարկավ, անխուսափելի է: Բանիմաց ընթերցողը դյուրավ կնկատի Ռուսաստանում եռևեկող իրականության մեջ դրսևորվող այդ «...երկու հոսանքի տնտեսական հիմք»-ի լենինյան գերակշռող լեյտմոտիվի գիտական փաստարկումը:

Վաղո՜ւց հայտնի է, որ նարոդնիկ տեսաբանները ջանում էին հերքել կապիտալիզմի զարգացման անխուսափելիությունը Ռուսաստանում, հետևաբար և՝ դրանից բխող սոցիալ-քաղաքական ուժերի փոխհարաբերություններն ու գործելակերպը: Անհրաժեշտ էր գիտական ճշգրտությամբ մշակել հեղափոխական պրոլետարիատի դասակարգային կռվի ստրատեգիան ու տակտիկան, դասակարգերի բորբոքվող գոյամարտերից գործնական, ուղենիշ հետևություններ անել, օգնել կեղեքվող մարդուն, ընթանալու ճիշտ ուղիով, ազատագրվել հնարավորին չափ՝ սակավ զոհերով: Այս վսեմ իդեալների գիտական հիմնավորման միտումով էր Լենինը հանձն առել այդ դժվարալույծ պրոբլեմի մշակումը՝ «բացառապես ներքին շուկայի» գոյավորման առումով:

Գրախոսվող երկի առաջին գլխում, մեկնելով մարքսյան քաղաքատնտեսության հիմնական սկզբունքներից, Լենինն ապացուցեց, որ ապրանքային տնտեսությունն իր զարգացման ընթացքում անխուսափելիորեն նաև արագ փոխարկվում է կապիտալիստականի: Խարսխված լինելով աշխատանքի հանրային բաժանման պրոգրեսիվ ընթացքի վրա, ապրանքային տնտեսությունն ի վերջո ծավալելով ապրանքափոխանակությունը երկրի ներսում, ներքին շուկա է ստեղծում կապիտալիզմի անարգել զարգացման համար: Եվ ահա, մարքսիստական քաղաքատնտեսության մեթոդոլոգիայի վարպետ կիրառմամբ, Լենինը լիովին ապացուցեց, որ «...աշխատանքի հասարակական բաժանումն ապրանքային տնտեսության ու կապիտալիզմի զարգացման ողջ պրոցեսի հիմքն է» (էջ 29): Կիրառելով այս հիմնարար գաղափարը՝ Լենինը հերքեց նարոդնիկության այն մտահնարները, ըստ որոնց՝ կապիտալիզմը Ռուսաստանում զուրկ է բնապատմական հիմքից, աշխատանքի հասարակական բաժանումից, զերծ է ներքին շուկայի գոյավորումից, գյուղի քայքայումից ու դասակարգային շերտավորումից: Ռուսաստանի տնտեսակարգը որպես թե հանգչում է համայնքի՝ առհավետ անսասան սյուներին:

Ինչ խոսք, այս պատրանքների ակունքը ո՛չ միայն անիմացությունն էր, այլև հայրենի երկրի սոցիալ-տնտեսական իրական երթի կատարյալ անտեսումը: Նարոդնիկները, գրում է Լենինը, «...արդյունքի իրացման ողջ հարցը հանգեցնում են գերարժեքի իրացման հարցին, երևակայելով, երևի, որ հաստատուն կապիտալի իրացումը դժվարություն չի ներկայացնում: Այս միամիտ հայացքն իր մեջ պարունակում է ամենախոր սխալը, որից բխել են իրացման վերաբերյալ նարոդնիկական ուսմունքի հետագա բոլոր սխալները: Մինչդեռ իրոք իրացումը բացատրելիս հարցի դժվարությունը բուն հաստատուն կապիտալի իրացման բացատրումն է» (էջ 31): Ըստ Լենինի, նարոդնիկական տնտեսագետները չէին ըմբռնում նաև արտադրամիջոցներ արտադրող ու սպառարկաներ պատրաստող ստորաբաժանումների միջև կատարվող ապրանքափոխանակության անհրաժեշտությունը: Մինչ իրականում այստեղ էր



թաքնված հարցի լուծման բանալին: Լենինի ԵԼԺ այս հատորում ընթերցողը կտեսնի իրացման մարքսյան տեսության և նարոդնիկների մոլորությունների միջև առկա թեորիական անդունդը, ու նշված առեղծվածի խորագույն լուծումն այս երկի առաջին գլխում (տե՛ս էջ 41—53):

Բանն այն է, որ Լենինի նարոդնիկ հակառակորդները (և ո՛չ միայն նրանք) չէին կարողանում հասկանալ, որ կապիտալիստական արտադրահարաբերությունների օրոք առկա ապրանքային ֆետիշիզմի ներգործության հետևանքով «...մարդկանց հասարակական հարաբերությունները» դրսևորվում են որպես «ապրանքների հարաբերություններ, այն բանի շնորհիվ, որ յուրաքանչյուր արդյունք փոխարկվում է ապրանքի, որն արտադրվում է անհայտ սպառողի համար և իրացվելու է անհայտ շուկայում» (էջ 50): Իրականում կապիտալիստական տնտեսության մեջ անհամեմատ արագ է զարգանում արտադրամիջոցների, քան սպառարժեքների արտադրությունը: Արտադրության ընդլայնումն առանց հասարակության սպառման համամասնական ընդարձակման հանգամանքը «...համապատասխանում է կապիտալիզմի պատմական միսիային ու նրա սպեցիֆիկ հասարակական կառուցվածքին», գրել է Լենինը:

Հետևաբար, կապիտալի վերարտադրությունը, թեկուզ ընդլայնված մասշտաբով, առարկայորեն սահմանափակում է ժողովրդական զանգվածների սպառունակությունը: Սա կապիտալիզմի **էական** ներհակություններից մեկն է, որից ևս գլուխ չհանեցին նարոդնիկության տեսաբանները: Լենինն այս առթիվ շեշտել է, թե դրանից բնավ չի հետևում, որ «Մարքսն իբր հնարավոր չէր համարում գերարժեքի իրացումը կապիտալիստական հասարակության մեջ և որ նա իբրև թե ճգնաժամերը բացատրում էր անբավարար սպառումով և այլն»: Մարքսի կողմից իրացման վերլուծությունը ցույց է տվել, որ «վերջին հաշվով հաստատուն կապիտալի ու հաստատուն կապիտալի միջև կատարվող շրջանառությունը սահմանափակված է անձնական սպառմամբ» (էջ 52—53): Այս իրողության վերլուծումից Լենինը եզրակացրել է, թե «...կապիտալիզմի հակասությունները վկայում են նրա պատմականորեն անցողիկ բնույթի մասին, ցույց տալիս նրա քայքայման և բարձրագույն ձևի անցնելու պայմաններն ու պատճառները...» (էջ 53):

Չհասկանալով կապիտալիստական տնտեսության զարգացման օրենքների հակամարտական բնույթը՝ բանավիճելիս նարոդնիկները ելնում էին արտաքին շուկայի դերի սխալ ըմբռնումից, իսկ դա իրականում ոչ թե լուսաբանում, այլ մշուշում էր գերարժեքի իրացման հարցը: Թեև, հիշատակում է Լենինը, չի կարելի կապիտալիստական ազգ պատկերացնել առանց արտաքին շուկայի (տե՛ս էջ 62): Հանրային արդյունքը տրոհելով երեք մասի (հաստատուն, փոփոխուն կապիտալ և գերարժեք), բացատրել է Լենինը, Մարքսը լիովին լուծել է ընդհանրապես հանրային արդյունքի ու, հատկապես, գերարժեքի իրացման առեղծվածը և, այդպիսով, հերքել նարոդնիկական հայացքն այդ հարցի վերաբերյալ: Հիշատակելով, թե ներքին շուկայի զարգացման աստիճանը կապիտալիզմի զարգացման ցուցանիշն է, Լենինը մեր ուշադրությունը սևեռում է այն իրողության վրա, որ միայն իրացման մարքսյան տեսությունը ճիշտ լուծեց նաև ազգային սպառման ու եկամտի պրոբլեմը:

Քանի որ կապիտալիստական տնտեսակարգում շուկայի գոյավորման հիմքը մանր հողագործների, ձեռնարկատերերի ու բանվորների անվերջ տրոհման պրոցեսն է, ասում է Լենինը, ապա անհրաժեշտ է փաստական նյութերի օգնությամբ հանգամանորեն հետազոտել այն: Ռուսական իրականության համակողմանի ուսումնասիրությունից նա հանգեց այն մտքին, որ ապրանքային տնտեսության փուլը թևակոխած գյուղում չկա որևէ տնտեսական երևույթ, որն իր էությամբ կապիտալիստական չլինի: Այս եզրակացությունը նա որակեց՝ **արմատական** և հակադրեց նարոդնիկական «համայնականության» ըմբռնումին, որն իրականում մանրբուրժուական կացութաձևի դրսևորումն էր: Հիրավի, իր այս աշխատությամբ Լենինն աներկբայորեն ապացուցեց, որ «...ռուսական համայնքային գյուղացիությունը ոչ թե կապիտալիզմի հակա-

դրությունն է, այլ, ընդհակառակը, նրա ամենախոր և ամենահաստատուն հիմքն է» (էջ 196—197)։ Ահա թե ինչու Լենինը ճիշտ էր համարում համայնքի քայքայման պրոցեսի «ապագեղջկացում» որակումը։ Խոսքն այն պրոցեսին է վերաբերում, որի ընթացքում Ռուսաստանի զանգվածային գյուղացիությունը բռնում էր արդյունաբերական ու գյուղատնտեսական վարձու բանվորների տեղը։

Պատշաճ խորությամբ ու կոնկրետությամբ լուսաբանելով ռենտայի մարքսյան տեսությունը և կիրառելով այն ռուսաստանյան գյուղի էվոլյուցիայի նկատմամբ՝ Լենինն անհերքելի փաստերով հաստատեց, որ գյուղատնտեսական արտադրանքների առուծախի, հողերի վաճառքի ու մասսայական վարձակալման, դրամական ռենտայի տիրապետման, բատրակների ու օրամշակների անլուր կեղեքման միջավայրում ուռճացած «...գյուղացիական բուրժուազիան անկասկած գերակշռող է» դարձել։ Դեռ ավելին, չնայած այն իրողությանը, որ ռուսաստանյան գյուղական պրոլետարիատը կազմում է ծխերի կեսից ոչ պակաս, նրա ցեցերի ձեռքում է գտնվում արտադրամիջոցների ու արդյունքների ընդհանուր քանակի մեծ մասը։

Հակառակ այս իրողությանը, նարոդնիկ տեսաբանները, իդեալականացնելով գյուղական կացույթը, «...միաձի բատրակներին միացնում են հարուստ գյուղացիների հետ, «միջինն» են դուրս բերում, գորովանքով դատում են «համայնքային ոգու», «աշխատավորական սկզբունքի», «ժողովրդական արտադրության», «հողագործությունն արհեստագործությունների հետ զուգորդելու մասին» և այլն (տե՛ս էջ 206—207)։

Ավելի քան երեքամյա իր տքնաջան հետազոտությամբ, Լենինը քարը քարի վրա չթողեց նարոդնիկական տնտեսագետների մտահնարներից, որովհետև նրանց երանավետ գյուղում նա բացահայտել էր կեղեքման ամենավայրագ եղանակներ, զանգվածային թշվառություն և զրկանքների օվկիանոս, մի վիճակ, որի պայմաններում «...**գյուղացիության քայքայումը ներքին շուկա է ստեղծում կապիտալիզմի** համար» (էջ 207)։ Ամենուր ծայր էին առել գյուղացիների վերաբնակեցման շարժումը, առևտրական ու վաշխառուական կապիտալների անարգել կեղեքումը, որոնք ծավալվելով գյուղում, զգալիորեն դանդաղեցնում էին դրա կապիտալիստական վերընթացը։ Կոռային տնտեսության մնացուկները ևս՝ աշխատավճարումները, գրել է Լենինը, կասեցնում են ռուսական գյուղի քայքայումը։ Նարոդնիկները երբեք չհասկացան գյուղի բնականոն վերելքին հակոտնյա այդ երևույթների բացասական դերը։

Իհարկե, սխալ կլինի իրականությունն այնպես ընկալել, թե իբր կալվածատիրական կոռային տնտեսությունը խորտակվեց մեկեն և անհապաղ հաղթանակեց ամենազոր կապիտալը։ Այս դեպքում, գրում է Լենինը, անհրաժեշտ էր մի անցումնային սիստեմ, որը զուգակցեր կոռային ու կապիտալիստական արտադրաեղանակների հատկանիշները։ Եվ որոշ ժամանակ զուգորդվեցին աշխատավճարն ու աշխատավարձը։ Բայց կապիտալիզմն ի վերջո բացառում է բնատնտեսությանը հատուկ աշխատավճարը։ Հարկ է նշել, որ նարոդնիկական հովերգությունը սնվում էր և աշխատավճարի սիստեմից։ Սակայն, կարճ ժամանակ անց, կապիտալիզմը Ռուսաստանում ևս հողագործությունը «աղայական զվարճանքից» փոխարկեց սովորական արդյունաբերության, գրում է Լենինը։ Այժմ արդեն արդյունաբերության բոլոր ոլորտներում մուտք է գործում մեքենան, որն արագ համակենտրոնացնում է արտադրությունը քաղաքում և գյուղում, գործարանից դուրս է մղում որոշ բանվորների, գյուղից՝ «համայնքի» անդամներին։ Բայց և այնպես, ազատավարձու աշխատանքի համատարած կիրառումը հողագործության մեջ Լենինը համարում էր կապիտալիզմի գլխավոր առավելություններից մեկը։

Լենինի վկայակոչած բազում փաստերն ու վիճակագրական տվյալները հաստատում են հետևյալը. Ռուսաստանի «հողագործության հետռեֆորմյան էվոլյուցիայի հիմնական գիծն այն է, որ դա հետզհետե ավելի ու ավելի է ընդունում առևտրային ձեռնարկատիրական բնույթ» (էջ 279)։ Սպառիչ վերլուծելով և ընդհանրացնելով կապիտալիզմի դրսևորման ձևերը, Լենինը



(378—388 էջերում) ամփոփում է. «...շեշտելով կապիտալիզմի պատմական պրոգրեսիվ դերը ռուսական հողագործության մեջ, ամենևին չենք մոռանում ոչ այս տնտեսական ռեժիմի **պատմականորեն անցողիկ բնույթը** և ոչ էլ դրան ներհատուկ հասարակական **խոր հակասությունները**» (էջ 388, ընդգծումը մերն է։ Ա. Ա.)։

Լենինը գրել է, թե Ռուսաստանում բավականին տարածված է նարոդնիկական այն թյուր հայացքը, որի համաձայն գյուղացիական արհեստագործություններում «արտելային հիմունքներն» են գերակշռում։ Այս մտացածին հայացքը ևս հերքվեց Լենինի աշխատությամբ։ Կապիտալիզմի ստորին փուլում, կարդում ենք նրա երկում, սովորաբար արդյունաբերողը համարյա թե չի տարբերակվել գյուղացուց։ Իրականում արհեստագործության միացումը հողագործության հետ ամրակայում ու զարգացնում է կապիտալիստական հարաբերությունները, որոնք և արմատավորվում են հողագործության բնագավառում։ Բայց զարգացման որոշ աստիճանում ունևոր փոքրաթիվ մարդիկ կազմակերպում են արդյունագործական գործատներ, բատրակներ վարձում և շուտով իրենց այդ ձեռնարկություններն անջատում հողագործությունից։ Մյուս բևեռում թշվառ գյուղացիները դառնում են վարձու բանվորներ։ Հետևաբար, եզրակացնում է Լենինը, արդյունագործությունը հողագործությունից անջատելու պրոցեսն այստեղ մանր արտադրողի սեփականազրկման պրոցեսն է (տե՛ս էջ 467)։ Հաջորդ էջերում համոզիչ շարադրանքով ու տրամաբանական փաստարկումներով Լենինը ցուցադրում է գյուղական կյանքի ընդերքից առաջացած կապիտալիստական ձեռնարկության կազմավորումը։

Քննարկվող պրոբլեմի համակողմանի ուսումնասիրումը հետապնդելով, Լենինն սպառիչ գաղափար է հաղորդում ընթերցողներին՝ կապիտալիստական մանուֆակտուրայի ու տանը կապիտալիստական եղանակով կատարվող աշխատափուլերի վերաբերյալ։ «Արդյունաբերության կապիտալիստական ձևերի զարգացման մեջ մանուֆակտուրան կարևոր նշանակություն ունի՝ միջնօղակ հանդիսանալով արհեստի ու կապիտալի նախաձևերն ունեցող մանր ապրանքային արտադրության և խոշոր մեքենայական ինդուստրիայի (ֆաբրիկայի) միջև» (էջ 477)։ Որպես սույն հայացքը հաստատող հեղինակավոր վկայություն, նա առկոչում է իր ուսուցիչ Կ. Մարքսի ասույթը. «Մանուֆակտուրան հին համքարությունների խորքերում չի ծագել։ Նորագույն արհեստանոցի գլուխ կանգնած է եղել վաճառականը և ոչ թե հին համքարային վարպետը» (նույն տեղը)։

Բացահայտելով առևտրային ու արդյունաբերական կապիտալների անխզելի կապը՝ Լենինը հատկապես շեշտում է, թե այս դեպքում ևս ցայտուն դրսևորվում է Կ. Մարքսի սահմանած այն օրենքը, որ **«...առևտրական կապիտալի զարգացման աստիճանը հակառակ հարաբերական է արդյունաբերական կապիտալի զարգացման աստիճանին»** (էջ 550, ընդգծումը մերն է։ Ա. Ա.)։

Հարց է ծագում. ո՞րն է նարոդնիկական տնտեսագիտության հիմնական սխալը։ Այն, որ անտեսվում կամ քողարկվում է մի կողմից՝ խոշոր ու մանր գործատների, մյուս կողմից՝ առևտրական ու արդյունաբերական կապիտալի միջև եղած կապը (տե՛ս նույն տեղը)։ Բայց այս դեպքում ևս «վատթարանում է անմիջական արտադրողի դրությունը...»։

Կապիտալիզմի զարգացման բոլոր փուլերում մարդկանց կեղեքել է կապիտալը՝ տնային աշխատանք հայթայթելով։ Թեև դա առավելապես բնորոշ է մանուֆակտուրային, որն ըստ Լենինի՝ «քրտնաքամության սիստեմ» է։ Պատմական անխուսափելիությամբ կյանքի կոչված տեխնիկական լիակատար հեղաշրջման շնորհիվ մանուֆակտուրան ներաճում է ֆաբրիկայի, որով և նշանավորվում է հասարակական հարաբերությունների ամենասուր բեկումը. արտադրապրոցեսին մասնակցող մարդկանց խմբերը վերջնականապես պառակտվում են։ Զարգացման այս փուլում ավելի քան սրվում ու տարածվում են կապիտալիզմի բոլոր մռայլ կողմերը. դրան զուգընթաց կապիտալիզմը հանրայնացնում է մարդկային աշխատանքը (տե՛ս էջ 571—572)։

Իր այս հիմնարար հետազոտության էջերում, համեմատելով ու համադրելով տարբեր երկրների ինդուստրիալ զարգացման տվյալները, Լենինն ապացուցել է, որ Ռուսաստանում տեխնիկական հեղափոխություն է կատարվել, որի շնորհիվ երևան է եկել արտադրաուժերի զարգացման վիթխարի պոտենցիա: «Լեռնարդյունաբերության զարգացումը Ռուսաստանում,— ասել է նա,— ավելի արագ է ընթանում, քան Արևմտյան Եվրոպայում, մասամբ նույնիսկ ավելի արագ, քան Հյուսիսային Ամերիկայում»: Այս իրողությունը ևս հուշում է, թե «առհասարակ կապիտալիստական զարգացումը չի կարող այլ կերպ ընթանալ, քան թռիչքներով» (էջ 620): Բնորոշ է, երբ, ասես, ընթերցողներին միակողմանիությունից զերծ պահելու միտումով, Լենինն արտահայտում է իր խոր մտքի մի այլ կողմ ևս. «Արդյունաբերության ձևերը, ինչպես և առհասարակ բոլոր տեսակի հասարակական հարաբերությունների ձևերը այլ կերպ զարգանալ չեն կարող, քան մեծ աստիճանականությամբ, միահյուսվող, անցումնային բազմաթիվ ձևերի միջով և առերևույթ՝ դեպի անցյալը վերադարձերով» (էջ 679—680):

Այս երկու մտքերը, ավելի ճիշտ՝ գաղափարները, Լենինն արտահայտել է 1894 թվականին: Իսկ դրանից 20 տարի անց (1914 թ.), երբ հանճարեղ մտածողը կոնսպեկտավորել է Հեգելի **«Տրամաբանության գիտություն»** գիրքը, գրել է. «Մարդը չի կարող ընդգրկել=արտացոլել=արտապատկերել բնությունն **ամբողջովին,** լրիվ, սրա «անմիջական ամբողջականությունը», նա կարող է միայն դրան անվերջ մոտենալ, ստեղծել աբստրակցիաներ, հասկացություններ, օրենքներ, աշխարհի գիտական պատկերը և այլն, և այլն» (Լենին, **Երկեր,** հ. 38, Երևան, 1962, էջ 221):

Փիլիսոփայական, խոր գիտական նման բազում խոհերով ու խորհրդածություններով լի են Լենինի երկերը: Միևնույն գոյի, երևույթի, էության, իրադրության, մտքի, գաղափարի առանձին կողմերի վերլուծական լենինյան ընդգրկումը շա՜տ է խոր ու հստակ. միշտ համապարփակության խոր կնիքով, հարաշարժ կյանքի կենսաթրթիռ ու կենսահաստատ տրոփով է հառնում նրա մտքերի օվկիանը: Ահա մի քանի տող ևս այդ բնույթի մտորումներից: Նա գրում է, թե մեր աչքի առջև մանուֆակտուրան վիթխարի արագությամբ գերաճում է խոշոր մեքենայական ինդուստրիայի: Իսկ այդ զարգացող ինդուստրիալ կապիտալիզմին հատուկ է անկայունությունը, որն անհեթեթ չափերի է հասել մեր օրերում: Կրկին շեշտելով, թե խոշոր ինդուստրիան կապիտալիզմի օրոք **չի կարող առանց թռիչքների զարգանալ,** Լենինը լրացնում է այդ միտքը. առանց ծաղկման ու ճգնաժամերի ժամանակահատվածների պարբերական հերթափոխումների (տե՛ս էջ 687, 691—692):

Աշխատության վերջում, կամենալով ընդհանրացումներ անել, նա կրկին անդրադառնում է կապիտալիզմի զարգացման նկրտումին, ասելով, թե արդյունաբերության կապիտալիստական զարգացումն աչքի է զարնում առավելապես աշխատանքի հանրայնացմամբ, որը պրոգրեսիվ երևույթ է: Հիրավի, «թե՛ ազգային ու միջազգային վիթխարի շուկայի համար կատարվող արտադրությունը, թե՛ առևտրային սերտ կապերի զարգացումը երկրի տարբեր շրջանների ու զանազան երկրների հետ... թե՛ տեխնիկական վիթխարի պրոգրեսը, թե՛ արտադրության ու բնակչության համակենտրոնացումը... թե՛ նահապետական կենցաղի հնագույն ավանդույթների խորտակումը, թե՛ բնակչության շարժունության առաջացումը, թե՛ աշխատողի պահանջմունքների ու զարգացման մակարդակի բարձրացումը,— այս բոլորը տարրերն են կապիտալիստական այն պրոցեսի, որն ավելի ու ավելի է հանրայնացնում երկրի արտադրությունը և, դրա հետ միասին, նաև արտադրության մասնակցողներին» (էջ 698):

Նարոդնիկ տեսաբանների հետ բանավիճելիս, Լենինը տարբեր առումներով արծարծում է կապիտալիզմի պրոգրեսիվության հարցը: Այսպես, օրինակ, հետռեֆորմյան Ռուսաստանի ամենաբնորոշ հատկանիշներից է նա համարում ինդուստրիալ խոշոր կենտրոնների հսկայական աճը և նորանոր կենտրոնների գոյավորումը: Երբ հողագործ բնակչությունն իր զբաղմունքը գտնում



է քաղաքներում, երբ երկրի խուլ ու հետամնաց անկյուններից մարդիկ ներքաշվում են հասարակական կյանքի հորձանուտը, երբ կապիտալիզմը բարձրացնում է բնակչության գրագիտության ու գիտակցականության մակարդակը, նրան կուլտուրական սովորույթներ ու նոր պահանջմունքներ պատվաստում, այս ամենը, հակառակ նարոդնիկության գաղափարաբանների, նա համարել է պրոգրեսիվ: Գեղջուկներին քաղաք մղելով, կապիտալիզմը բարձրացնում է նրանց «քաղաքացիական անձնականությունը», սատարում ժողովրդական զանգվածների ինքնագիտակցությանը, հրահրում գյուղացու «գոհացուցիչ, անկախ ու պատվավոր վիճակի հասնելու ձգտումը»: Նահապետական գյուղի քայքայման հարուցած արտագնացությունը, գրում է Լենինը, թուլացնում է նահապետական հին ընտանիքը, կնոջը դնում ավելի ինքնուրույն՝ տղամարդուն հավասար պայմաններում: Հիմնովին փոխվում են ծնողների ու զավակների երբեմնի մտերմիկ կապերը՝ վերջիններիս կոսմոպոլիտներ դարձնելով: «Որտեղ լա՜վ, այնտեղ է հայրենիքը»: Սա է նրանց նշանաբանը:

Նարոդնիկության ջատագովների վայնասունը կապիտալիզմի պրոգրեսիվ հասումների վերաբերյալ Լենինը համարում էր պահպանողական, դատապարտելի: Մարդկանց աշխատավայրի ու բնակավայրի ազատ ընտրությունը, վարձու աշխատանքի ծավալումը, շուկաների ընդլայնումը նույնիսկ երկրի սահմաններից դուրս՝ Լենինը սեպում էր պրոգրեսիվ: Կովկասը, Միջին Ասիան, Սիբիրը գաղութացվել են շուկա որոնող կապիտալի ապասավորների ջանքերով: Հիրավի, «...կապիտալիզմը չի կարող գոյատևել ու զարգանալ, առանց իր տիրապետության ոլորտները շարունակաբար ընդլայնելու, առանց նորանոր երկրներ գաղութացնելու և ոչ կապիտալիստական հին երկրները համաշխարհային տնտեսության հորձանուտի մեջ ներգրավելու: Եվ կապիտալիզմի այդ առանձնահատկությունը վիթխարի ուժով երևան է եկել ու շարունակում է երևան գալ հետռեֆորմյան Ռուսաստանում» (էջ 755—756):

**Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում** երկում Լենինը ստեղծարար մարքսիզմի տեսանկյունից լուսաբանեց կապիտալիզմի ներհակությունները, մանր տնտեսությունների արագ միավորումը և տեղական շուկաների կենտրոնացումը մեկ ազգային, ապա՝ համաշխարհային վիթխարի շուկայի մեջ: Գնալով սրվում են բախումները արտադրապրոցեսի կոլեկտիվ բնույթի ու յուրացման անհատական բնույթի միջև: Սաստկացող դասակարգային մարտերը վերափոխում են բնակչության հոգևոր կերպարանքը: Բայց խնդիրն այն է, ասում է Լենինը, որ նարոդնիկները չկարողացան և չէին կամենում հասկանալ կապիտալիզմի առաջընթացի պատմական միտումն ու դարակազմիկ հետևանքները: Նրանք չէին ըմբռնում, թե ինչո՛ւ կապիտալիզմն իրեն ներհատուկ օրենքների դրդմամբ «...չի կարող ընթանալ այլ կերպ, քան մի շարք անհամաչափությունների ու անհամամասնությունների միջով...» (էջ 759):

Հայտնի է, որ պատմության անողոք ընթացքը Ռուսաստանի հեղափոխական շարժման խոր հորձանուտում թաղեց նարոդնիկական տեսաբանների հետադիմական պատրանքները:

Լենինի ԵԼԺ կազմողների հակիրճ առաջաբանում ըստ արժանվույն գնահատված են նրա վիթխարի դերն ու հոգևոր արժանիքները: Ուստի, մեզ մնում է մի քանի խոսք ասել հեղինակի՝ գրախոսվող հատորում զետեղված **Ոչ քննադատական քննադատություն** հոդվածի մասին: Այն պատասխանն է **Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում** գրքի լեգալ մարքսիստ պ-ն Սկվորցովի զրպարտալի գրախոսականի, որի հեղինակը ճգնել է «հնչեղ ու միանգամայն բովանդակազուրկ ֆրազներով» մեղադրել Լենինին, որ իբր նա չի հասկացել Մարքսին, վերջինիս թարգմանել է քմահաճաբար և նման անհեթեթություններ: Սարկազմով, զվարթ հումորով թաթախուն իր պատասխան հոդվածում Լենինը փայլուն կերպով ապացուցում է իր «քննադատ»-ի կատարյալ անիրազեկությունը տեսության ասպարեզում առհասարակ, մարքսիզմի հարցում՝ առանձնապես: Վերջում իր «ահեղ քննադատին» Լենինը հայտնում է, թե ինքը այլոց նման չի լքում Մարքսին և չի հարում նեոկանտականությանը, այլ

մտադիր է մնալ հետևողական մարքսիստ և «զարգացնել մարքսիզմի հիմնական դրույթները՝ փոփոխվող պայմաններին ու տարբեր երկրների տեղական առանձնահատկություններին համապատասխան, և առ առավել մշակել դիալեկտիկական մատերիալիզմի տեսությունն ու Մարքսի քաղաքատնտեսական ուսմունքը» (էջ 802):

Բանավեճային այս հոդվածը ևս տոգորված է ստեղծագործական մարքսիզմի կենսահաստատությամբ:

## 2

ՏԱԿԱՎԻՆ 1973 ԹՎԱԿԱՆԻՆ, անդրադառնալով Լենինի **Երկերի լիակատար ժողովածուի** հայերեն հրատարակությանը, հիշատակեցինք, որ տպագրության հանձնվող նրա յուրաքանչյուր հատոր պետք է համեմատվի բնագրի հետ ո՛չ միայն եղած աղավաղումներն ու սխալները շտկելու, այլև Լենինի **Երկերն** ընթերցողներին մատուցելու կենդանի ու կատարյալ հայերենով:

Մի անգամ ևս շեշտելու համար այդ գործը վարող ընկերների առջև ծառացած ստեղծագործական խնդիրների բարդությունը, հպանցիկ վկայակոչեցինք իմաստային մի շարք ակներև խեղաթյուրումների օրինակներ Լենինի **Երկերի** հայերեն չորրորդ հրատարակության որոշ հատորներից: Սպասում էինք, որ ՄԼԻ հայկական ֆիլիալի ընկերները կանդրադառնան ՀԿԿ Կենտկոմի ամսագրի՝ այդ նպատակով Լենինի ԵԼԺ հայերեն թարգմանություններում բացահայտված էական աղճատումներին: Ավելին. կարծում էինք, որ ի պաշտոնե այդ գործում շահագրգռված ընկերները կքննարկեին հոդվածն իրենց կոլեկտիվում և ծանրակշիռ խոսքով հանդես կգային **Լենինյան ուղիով** ամսագրում: Սակայն հանդիպեցինք քար լռության, կամ՝ «խորհրդավոր» անտարբերության: Լույս տեսավ Լենինի ԵԼԺ հայերեն առաջին հատորը, որին նվիրված մեր գրախոսականում (տե՛ս **Լենինյան ուղիով**, 1975, № 3) արդեն հարկադրված նշեցինք, թե թարգմանության վիճակն էականապես **չի բարելավվել:**

Լենինի **Երկերի լիակատար ժողովածուի** հայերեն առաջին հատորի մեր գրախոսականում գրել էինք, որ բնականոն, արդարացված վարվելակերպ չէ, երբ հեղինակի՝ ռուսաց լեզվով վկայակոչած բոլոր աղբյուրները թարգմանված են հայերեն, իսկ այլ լեզուներով աղբյուրներն իրավամբ հիշատակված են ըստ բնագրերի: Ցավոք, այս և լույս տեսած մյուս հատորներում այդ սխալ սկզբունքն է կիրառված: Այդպես է և երրորդ հատորում. այսպես՝ ռուսերեն պարբերականներն ու վիճակագրական աղբյուրներն ընթերցողին հրամցվում են հետևյալ ձևով. «Ռազմ. վիճ. ժողովածու», «Տորգ. պրոմ. գազետա», «Վեստ. ֆին.», «Ֆին. մինիստր, տորգ.», «Պատմա-վիճակ. տեսություն», «Վեստն. ֆին.», «Սեվ. վեստնիկ», «Ռուսսկ. վեդոմոստ.», «Յարոսլ. նահ. տեսություն», «Բոգոր. գավառի տնայնագործ. արհեստագործ.», «Վլադ. նահ. արհեստագործ», «Հաշվ. և հետազ.», «Նիժեգորոդսկի վեստնիկ պարախոդստվա ի պրոմիշլեննոստի»-ի 1891 թ. № 1-ում»: «Տնայնագ. հանձնաժող. աշխատությունները», «Հաշվետվություններ ու հետազ.», «Վլադ. նահ. արդյունաբ.», «Տնայնագ. հանձնաժող. աշխատ.»:

Հայատառ ռուսերենը նպաստո՞ւմ է հայերեն ընթերցողի մտավոր պաշարի հարստացմանը: Դժվա՞ր թե:

Ակներև է, որ հայերեն ընթերցողի համար նշված և նման բազմաթիվ աղբյուրներ գործնական նշանակություն չունեն, քանի որ դրանք թարգմանված չեն հայերեն: Մեր կարծիքով, չպետք է խախտել ամենուր հաստատված այն գիտական մեթոդը, երբ օգտագործման աղբյուրները հիշատակվում են ըստ բնագրերի: Հարկ կա՞ ասելու, որ այս սկզբունքով են առաջնորդվում ՍՍՀՄ-ում և այլուր լույս տեսնող գիտական և առհասարակ լուրջ հրատարակությունները, հանրագիտարանները և այլն:

Ո՛չ միայն առաջին, այլև մեր գրախոսած սույն հատորում կան իմաստային, լեզվաոճական ակնբախ թերություններ ու սխալներ: Այստեղ ևս չի հաղթահարված տերմինների խայտաբղետությունը: Օրինակ, ռուսերեն надел տերմինի շփոթը նկատում ենք այս հատորի 78, 90—92, 107, 115, 129, 133 էջերում: Իսկ 491 էջում կարդում ենք՝ «բաժնեհողային ծխեր» և «հողաբաժնային ծխեր»: Իբրև կանոն, այս հատորում **պրոգրես** տերմինը փոխարինված է **առաջադիմությամբ:** Տեխնիկայի պրոգրես ենք կարդում միայն 75-րդ էջում և «Պրոգր. հոսանքներ»՝ 321 էջում: Մինչդեռ, ԵԼԺ հինգերորդ հատորում գերազանցապես կիրառված է պրոգրես տերմինը, նույնիսկ **պրոգրեսիվություն** (էջ 259) և մերթ՝ առաջադիմություն: Մեր կարծիքով, վերջինս պետք է գործածվի առավելապես կուլտուրայի և կրթության մարզերում, իսկ պրոգրեսը՝ սոցիալ-տնտեսական, տեխնիկական, պատմա-հասարակական դարագլուխ նշանավորող եղելությունների ոլորտներում: Այս չի խանգարի, անշուշտ, տեղին կիրառելու նաև առաջընթաց տերմինը:

Գրախոսվող հատորի 128 էջում կարդում ենք. **«Աշխատանքային ուժի վաճառում»,** 133-ում՝ «**աշխատուժ** վաճառողներ», ճիշտը վերջինն է: Իսկ 122 էջում ասված է՝ «**բանվորական ուժը** վաճառելը»: 514 էջում հանդիպում ենք և՛ «գայլիկոնող դազգահ», և՛ «գայլիկոնող հաստոց»: Հաջող է վերջինը: 759 էջում շոգեհաստոցի փոխարեն գործածված է **«շոգեդազգահ»:**

Անհրաժեշտ է նշել, որ բառացի թարգմանությունները խոչընդոտում են հայոց լեզվի զարգացմանը: Երբ ունենք **մեծաթիվ** բարդ բառը, ինչո՞ւ գրենք՝ **«մեծաքանակ** արհեստներ» (էջ 537): Գրախոսվող աշխատության մի քանի էջերում անհարկի է գործածված **ընկնել** բառը: «**Ընկնում էր** զենքի հինավուրց **արտադրությունը...** բերվող ապրանքների մրցության **շնորհիվ, ընկնում էր** երկաթի տնայնագործական **մշակումը** ռուսական բերովի արտադրանքի մրցակցության **շնորհիվ,** ինչպես նաև **ընկնում էր** պղնձի, ոսկու և արծաթի... կաշվի տնայնագործական **մշակումը** և այլն» (էջ 754): Ավելի հաջող չէ՞ **կրճատվում էր զ**ենքի արտադրությունը մրցակցության **հետևանքով, նվազում էր** երկաթի տնայնագործական մշակումը... մրցակցության **հետևանքով,** հետզհետե նվազում էր պղնձի, ոսկու և արծաթի մշակումը և այլն: «Ընկնում էր եղջյուրներից գավաթներ պատրաստելը» (ն. տ.) (թերևս **անհետանում էր** եղջյուրներից գավաթներ պատրաստումը): Լենինը շեշտել է, որ «տնայնագործների» թվի մեջ... **մեծ քանակությամբ կապիտալիստական եղանակով օգտագործվող** բանվորներ են **ընկնում**» (էջ 563): Սխա՞լ կլինի ասել՝ «Կապիտալիստական եղանակով օգտագործվող բանվորներ»: Ընկնել բայը ճիշտ չի կիրառված նաև 601—602, 611—612 էջերում: Ո՛չ թե «ֆաբրիկաների ու գործարանների **շարքն են ընկել**» (էջ 488), այլ՝ **շարքում են:**

Գրախոսվող հատորում կարդում ենք. «Այս բաժնում ամենահավաստի տվյալները փայտաաղոցման արտադրության մասին են, թեպետ անցյալում մանր գործատները դրանց **շարքն էին գցում**» (ընդգծումը մերն է— Ա. Ա.): Երբ խոսքը վերաբերում է «ամենահավաստի տվյալներին» (անշուշտ, վիճակագրական), ապա ոչ թե «շարքն էին գցում», այլ **դասում էին:** Նմանապես և տնայնագործների **կարգն են դասել** արհեստավորներին և ոչ թե **«շարքն են ընկել»** (էջ 563): Կամ բնագրում կարդում ենք. «Сюда зачислялись мелкие заведения» (էջ 475), մանր ձեռնարկությունների **կարգն էին դասում** և ոչ թե «շարքն էին գցում», «շարքն էին ընկնում» և այլն:

Աշխատության 385-րդ էջում Մարքսից վկայակոչված հանրահայտ հատվածում խոսքը ոչ թե **տոպրակի,** այլ **պարկի** մասին է: Ինչո՞ւ ասենք՝ «Ծատ ցանք կատարող գյուղացիներ», երբ կարելի է գրել՝ շատ ցանքարներ:

Հարկ է մշտապես հիշել, որ թարգմանիչը թարգմանվող ստեղծագործության առաջին մեկնաբանն է և իր մտավոր ունակությունը, ոճը, լեզվական ողջ հարստությունը դրսևորում է տվյալ երկում: Այս առումով շատ թարգմանիչների ու խմբագիրների մասնակցությունը Լենինի **Երկերի** հրատարակման գործում իր անցանկալի հետքն է թողել: Այսպես, օրինակ, Լենինի հայերեն ԵԼԺ երրորդ հատորի պատասխանատու խմբագիր Ս. Զուրաբյանը

մի՞թե չի նկատել, որ հայերեն հատորի «Բովանդակության» մեջ ևս տերմինների շփոթ կա: Գրքի երկրորդ գլխի առաջին ենթագլխում կարդում ենք. **«Բանվորական ուժի առուծախը»** (էջ 974), մինչ տեքստում ավելի շատ խոսվում է աշխատուժի վաճառքի մասին: Բովանդակության 984 էջում ասված է՝ «Մանուֆակտուրա **համակցողությունը**», իսկ տեքստի 477 էջում՝ **համակցություն:** Չէ՞ որ դրանք նույնական չեն: Մտքի զարգացմանը հետևողին վայե՞լ է շփոթել **համակցությունը** և **համակցողությունը,** երբ այժմ փիլիսոփայական կատեգորիաների վերաբերյալ գրքեր կամ էջեր են գրվում. (տե՛ս Н. И. Кондаков. «Логический словарь-справочник». М., 1975, стр. 456—460).

Լենինի ռուսերեն երրորդ հատորի 647 էջում զետեղված 24-րդ ծանոթագրության մեջ ասված է. «Понтий Пилат... римский прокуратор (наместник) Иудеи в 26—36 годах нашей эры»: Հայերենում Иудеи թարգմանվել է «եբրայեցիների երկիր»: Հավատա՞նք, որ թարգմանիչն ու խմբագիրը, իրոք, չգիտեն, թե այդ երկիրը կոչվել է Հրեաստան (տե՛ս Հ. Մանանդյան. **Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության:** Հատ. Ա., էջ 155, 281, 293, 300, 302: Այդ մասին տե՛ս նաև Советская историческая энциклопедия, т. 6, стр. 700—705:

Ճիշտ չէ նաև эра-ն թարգմանել դարաշրջան: Բացենք մեր օրերի լավագույն բառարաններից մեկը՝ Ս. Ի. Օժեգովի **Словарь русского языка.** М., 1973: Այստեղ **էրան** մեկնաբանված է հետևյալ կերպ. «Момент, от к-рого ведется летосчисление, а также сама система летосчисления»: Իսկ Բ. Մ. Վոլինի ու Դ. Ն. Ուշակովի **Толковый словарь русского языка** բառագրքում ասված է. «Эры делятся на периоды, а периоды—на эпохи». Ուրեմն **էրան** թվականությունն է և ոչ դարաշրջանը:

Աշխատության 85-րդ էջում **Նովոռոսիան** գրված է երկու, իսկ 274 և 275 էջերում՝ մեկ ս-ով: Ճիշտ չի՞ լինի «բաժնետրային հողատիրության» փոխարեն գործածել հողբաժնետիրություն (էջ 133): Լենինի՝ известную иерархию рабочих արտահայտությունը ճիշտ կլինի թարգմանել բանվորների հայտնի **աստիճանակարգը** և ոչ՝ բանվորների աստիճանավորումը (էջ 277): Պահանջարկ են ներկայացնում, թե՞ ուղղակի պահանջարկում են: **Արտադրապայմանը** ավելի հաջող է, քան արտադրության պայմանը (էջ 401): Детальные операции **մասնարար** կամ **մանրարար** գործողություններ են և ոչ թե՛ **«մասնագործային** գործողություններ»: Ոչ թե «նյուսելու արհեստագործության մեջ» (էջ 554), այլ հյուսվածքային արդյունահանության մեջ: Ռուսերեն развязаться с землей —**հողազերծվել** և ոչ թե «ազատվել» (էջ 557): Կառչում են հնարավորությունից, այլ ոչ հնարավորության (էջ 558): Կարծում ենք՝ 740, 742 և 792 էջերում խոսքը **հացահատիկի** և ոչ թե **հացի** վաճառքի մասին է: Սխալ է նաև **տերունականի** փոխարեն գրել «տիրունական տնտեսություններ» (էջ 745), ինչպես և Վեքի փոխարեն՝ Վեքք (էջ 744, 954):

Հարկ է նշել, որ մեր վկայակոչած սխալների, թերությունների ու աղճատումների զգալի մասը վերառված է նախորդ հրատարակությունից, թեև այնտեղ եղած շատ արտահայտություններ աղավաղվել են հատորի նոր խմբագրությամբ:

Ինչպես տեսնում ենք, մտքի ծուլությունն ու ինքնագոհությունը ստեղծագործական աշխատանքով զբաղվողների առաջին արգելակներն են:

Ցավոք, նշվածով չեն ավարտվում թարգմանության լեզվա-ոճական խեղաթյուրումներն ու թերությունները: Դրանց որոշ մասը զետեղված է ներքոբերյալ աղյուսակում:



ԻՄԱՍՏԱՅԻՆ ԱՂՃԱՏՈՒՄՆԵՐ

| Բնագրում | Թարգմանված է | Մեր թարգմանությամբ |
| --- | --- | --- |
| «В теоретическом введении Ленин разъясняет и развивает ...» (стр. VIII) | «Տեսական նախաբանում Լենինը բացատրում և զարգացնում է...» (XI) | Լենինը տեսական ներածությունում բացատրում ու զարգացնում է... |
| «Рынок есть категория товарного хозяйства, которое в своем развитии превращается в капиталистическое хозяйство...» (стр. 21) | «Շուկան ապրանքային տնտեսության կատեգորիա է, որը իր զարգացման ընթացքում վերափոխվում է կապիտալիստական տնտեսության...» (էջ 21) | Շուկան ապրանքային տնտեսության կատեգորիա է, մի տնտեսություն, որն իր զարգացման ընթացքում փոխարկվում է կապիտալիստական տնտեսության... |
| «Оба автора излагают свои учения так, как будто бы они первые говорили об этом предмете, дойдя «своим умом» до известных решений...» (стр. 28-29) | «Երկու հեղինակներն էլ իրենց ուսմունքներն այնպես են շարադրում, կարծես թե իրենք են, որ առաջին անգամ խոսել են այս առարկայի մասին, «իրենց խելքով» հասնելով որոշ վճիռների...» (էջ 30) | Երկու հեղինակներն էլ իրենց ուսմունքներն այնպես են շարադրում, ասես իրենք են ամենից առաջ խոսել այդ առարկայի մասին, «իրենց խելքով» հասնելով հայտնի լուծումների: |
| «Теория реализации Маркса» (стр.38) | «Մարքսի իրացման տեսությունը» (էջ 41): | Իրացման մարքսյան (կամ Մարքսի) տեսությունը |
| «Это «отчетливое сознание» своего отношения к производству утратилось в капиталистическом обществе...» (стр. 45) | «Դեպի արտադրությունն ունեցած իր վերաբերմունքի այս «հստակ գիտակցությունը» կապիտալիստական հասարակության մեջ կորցվել է...» (էջ 50) | Արտադրության նկատմամբ իր վերաբերմունքի այս «հստակ գիտակցումը» կապիտալիստական հասարակության մեջ կորսվել է... |
| «...жизнь обходит эти юридические рамки» (стр. 94) | «...կյանքը իրավաբանական այդ շրջանակների կողքով է անցնում» (էջ 109) | կյանքը շրջանցում է իրավական այդ շրջանակները |
| «**Земско-статистические данные по Нижегородской губернии**» (стр. 111) | «Զեմստվային-վիճակագրական տվյալներ Նիժնի-Նովգորոդի վերաբերյալ» (էջ 130) | Զեմստվային-վիճակագրական տվյալներ Նիժեգորոդի նահանգի վերաբերյալ |
| «...превратились теперь в одну юридическую фикцию» (стр. 113) | «...այժմ դարձել է սոսկ իրավաբանական պատրանք» (էջ 133) | այժմ դարձել է սոսկ իրավական ֆիկցիա (կամ մտահնարանք) |

# ԼԵԶՎԱ-ՈՃԱԿԱՆ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

| էջ | Թարգմանված է | Մեր թարգմանությամբ |
|---|---|---|
| IX | «...ռուսական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները որոշելու համար» | ռուսական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները սահմանելու համար |
| IX | «...պետք է ուղղված լինի Ռուսաստանի տնտեսական անտագոնիզմի բոլոր ձևերի կոնկրետ ուսումնասիրությանը...» | պետք է կոնկրետ ուսումնասիրի Ռուսաստանի տնտեսական անտագոնիզմի բոլոր ձևերը |
| X | «...դեպի ո՞ր դասակարգը պետք է կողմնորոշվեն հեղափոխականները» | որ դասակարգի կողմը պետք է լինեն (կամ կանգնեն) հեղափոխականները: (Որ դասակարգին պետք է հարեն) |
| XI | «...ռուսական իրականության մեջ...» «в российской действительности...» (стр. IX) | ռուսաստանյան իրականության մեջ |
| XII | «...Լենինը տվել է կապիտալիստական տնտեսության համաշխարհային-տնտեսական կարգի խոր վերլուծությունը» | Լենինը խորապես վերլուծել է կապիտալիստական տնտեսության համաշխարհային տնտեսակարգը |
| XIV | «Փաստական ընդարձակ նյութի հանգամանալից վերլուծության հիման վրա...» | փաստական ընդարձակ նյութի հանգամանալից վերլուծությամբ |
| XV | «Լենինը ընդգծում է...» | Լենինը շեշտում է |
| XVI | «Լենինը միևնույն ժամանակ տվել է... խոր հակասությունների ու խոցերի վառ բնութագրումը» | Լենինը միաժամանակ խորապես ու վառ բնութագրել է... հակասություններն ու խոցերը |
| XVII | «...Լենինը առանձնակի ուժով ընդգծեց... փորձի ընդհանրացման հիման վրա» | Լենինն առանձնակի ուժով շեշտեց... փորձի ընդհանրացմամբ |
| 5 | «...հակառակորդների հայացքներում տեղ գտած սխալների ու անճշտությունների քննությամբ» | հակառակորդների սխալ հայացքների ու անճշտությունների քննությամբ |
| 5 | «...պրոցեսն իր ամբողջության մեջ...» | պրոցեսն իր ամբողջությամբ (կամ պրոցեսն ամբողջովին) |
| 8 | «...Ռուսաստանում ականատես ենք լինում...» | Ռուսաստանում ականատես ենք |
| 14 | «...վարձու բանվոր կամ պառպեր է դառնում...» | կամ վարձու բանվոր է դառնում, կամ աղքատանում է (բշվառանում է) |
| 15 | «Ես վիճակներ ցանեցի, բայց բերքահավաքն ինձ լվեր տվեց» | Ես վիճակներ ցանեցի, բայց հնձեցի լվեր |
| 18 | «...մարդահամարի արդյունքները...» «Итоги... переписи населения...» (стр. 17) | մարդահամարի հանրագումարները |
| 22 | «...սպառողական արժեքների լոկ փոխանակային արժեք... դառնալու միջոցով» | սպառարժեքների լոկ փոխանակարժեք... դառնալու միջոցով |
| 24 | «Նարոդնիկական տեսությունը... այլ կերպ չէր էլ կարելի կառուցել...»: «...нельзя было построить иначе...» (стр. 24) | Նարոդնիկական տեսությունը... այլ կերպ չէր կարելի ստեղծել կամ հնարել |
| 26 | «...բնակչությունը դեպի իրենց քաշելը...» | բնակչությանն իրենց կողմը գրավելը |
| 26 | «Մանր արտադրողի վերածվելը վարձու բանվորի...» | Մանր արտադրողի՝ վարձու բանվորի փոխարկվելը |
| 27 | «Հանդես է գալիս այն հայեցակետը...» | Երևան է գալիս այն հայեցակետը (արտահայտվում է այն...) |
| 27 | «...արտադրության այդ միջոցների նոր տերերը...» | այդ արտադրամիջոցների նոր տերերը |
| 29 | «Նա հո չի կարող ամբողջովին սպառվել կապիտալիստների [illegible]» | Չէ՞ որ այն ամբողջովին չեն կարող սպառել կապիտալիստները |
| 30 | «...երկուսն էլ մեծագույն ամբարտավանությամբ...» | երկուսն էլ ամենայն գոռոզամտությամբ |



| | | |
|---|---|---|
| «Черные линии показывают степень разложения по **отдельным уездам** или группам уездов...» (смот. «Диаграмма, изображающая таблицы А и Б», стр. 132-133) | «Սև գծերը ցույց են տալիս հողի քայքայման աստիճանը ըստ առանձին գավառների կամ դրանց խմբերի...» (տե՛ս Ա և Բ աղյուսակները պատկերող դիագրամը, էջ 156—157) | Սև գծերը ցույց են տալիս առանձին գավառների կամ գավառախմբերի քայքայման աստիճանը |
| «Точный учет... дает нам возможность определить отношение крестьянского разложения к **рынку**...» (стр. 146) | «...Ճշգրիտ հաշվառքը մեզ հնարավորություն է տալիս որոշելու գյուղացիական քայքայման հարաբերությունը դեպի շուկան...» (էջ 173) | Ճշգրիտ հաշվառքը մեզ հնարավորություն է ընձեռում սահմանելու գյուղացիական քայքայման առնչությունը շուկայի հետ... |
| «...смотря по различным сельскохозяйственным, юридическим и бытовым условиям» (стр. 321) | «...որը գյուղատնտեսական իրավաբանական ու կենցաղային տարբեր պայմաններին նայած...» (էջ 396) | որը գյուղատնտեսական, իրավական ու կենցաղային տարբեր պայմաններին նայած... |
| «Таким образом, усиление работы на дому было вызвано здесь прогрессом техники... прогрессом разделения труда... прогрессом капиталистической эксплуатации...» (стр. 413) | «Այսպիսով, տանը կատարվող աշխատանքի ուժեղացումն այստեղ տեխնիկայի առաջադիմության հետևանք է... աշխատանքի բաժանումը կատարելագործելու հետևանք... և կապիտալիստական շահագործումը ուժեղացնելու հետևանք» (էջ 514) | Այսպիսով, տանը կատարվող աշխատանքի ուժգնացումն այստեղ տեխնիկայի պրոգրեսի... աշխատանքի բաժանման պրոգրեսի... և կապիտալիստական շահագործման պրոգրեսի հետևանք է |
| «Переходя к крупной машинной (фабричной) промышленности, надо прежде всего установить...» (стр. 455) | «Խոշոր մեքենայական (ֆաբրիկային) արդյունաբերությանն անցնելով, ամենից առաջ պետք է սահմանել...» (էջ 571) | Անդրադառնալով մեքենայական (ֆաբրիկային) արդյունաբերությանը, ամենից առաջ պետք է սահմանել... |
| «Нелогичность подобных рассуждений...» (стр. 494) | «Նման դատողությունների անտրամաբանությունը...» (էջ 625) | Նման դատողությունների անտրամաբանականությունը |
| «...чрезвычайно ухудшают положение трудящихся, **унижают и развращают** их» (стр. 547) | «...անչափ վատացնում են աշխատավորների դրությունը, նրանց ստորացնում և բարոյալքում են» (էջ 693—694) | սաստիկ վատացնում են աշխատավորների վիճակը, նրանց այլասերում ու նվաստացնում են |
| «Понятие мануфактуры» (стр. 786) | «Մանուֆակտուրա հասկացողությունը» (էջ 984) | Մանուֆակտուրա հասկացությունը |

| | | |
|---|---|---|
| 480 | «Աշխատանքի բաժանումը տանում է դեպի մասնագետ-արհեստագործների զատումը գյուղացիներից» | Աշխատանքի բաժանմամբ մասնագետ արհեստավորները զատվում են գյուղացիներից |
| 514 | «...տնտեսատերերն անցել են աշխատանքը տներում բաժանելուն» | տնտեսատերերն աշխատանքը բաժանում են ըստ տների |
| 554 | «Թղթի ետ տալով զբաղված են 10004 կին...» | |
| 555 | «...փաթաթած թուղթը ետ տալու գործում...» | Թղթի փաթեթազերծմամբ զբաղված են... և այլն |
| 571 | «Խոշոր մեքենայական (ֆաբրիկային) արդյունաբերությանն անցնելով...» | Անդրադառնալով մեքենայական խոշոր արդյունաբերությանը... |
| 612 | «...բանվորների թվի մեջ մտցվում էին...» | բանվորներ էին համարվում... |
| 620 | «...իր համար բլիթներ թխել Ուրալի սկավառակների վրա» | ուրալյան թավաների վրա բլիթներ թխել |
| 635 | «...ամբողջ բնակչությունը պետք է բաշխվի երեք խոշոր ստորաբաժանումների...» | ամբողջ բնակչությունը պետք է տրոհվի երեք խոշոր ստորաբաժանումների |
| 640 | «Այս կամ այն թվի մոտիկության աստիճանի վերաբերյալ...» | Այս կամ այն թվի մոտավորության աստիճանի վերաբերյալ |
| 661 | «...տեղի է ունենում բանվորների ներգրավում դեպի խոշորագույն կենտրոնները» | բանվորների կուտակում խոշորագույն կենտրոններում |
| 663 | «...գյուղական բնակչության դեպի ինդուստրիալ ավանները քաշող...» | գյուղական բնակչությանը հավաքում է ինդուստրիալ ավաններում |
| 678 | «...փականագործական ապրանքներ փաթեթավորելու համար...» | փականագործական արուրքներ |
| 713 | «...ինդուստրիալ բնակչության աճը մաքուր վիճակում...» | ինդուստրիալ բնակչության զուտ աճը |
| 782 | «...նա դրա վրայով լռությամբ է անցնում» | նա շրջանցում է դա լռությամբ |
| 785—786 | «...նա պիտի շարադրեր և բացատրեր իր կարծիքը, և ոչ թե նետեր ահեղ, սակայն որևէ իմաստից զուրկ դիտողություններ» | նա պետք է իր կարծիքը շարադրեր ու բացատրեր, և ոչ թե ահեղ, բայց միանգամայն իմաստազուրկ դիտողություններ շպրտեր |
| 974 | «Արդյունքի իրացումը պարզ վերարտադրության ժամանակ» | պարզ վերարտադրության դեպքում |
| 980 | «Մանր հողագործների կախումը» | Մանր հողագործների կախումը (հավանաբար վրիպակ է) |
| 981 | «Հողագործության մեջ կապիտալիզմի վերաբերյալ նարոդնիկական տեսությունները» | Նարոդնիկական տեսությունները հողագործական կապիտալիզմի վերաբերյալ |
| 982 | «Համայնքի վերաբերյալ հարցի սխալ դրումը նարոդնիկների կողմից» | Նարոդնիկների սխալ հարցադրումը համայնքի վերաբերյալ |
| 982 | «Հողագործական կապիտալիզմի գնահատումը նրա կողմից» | Հողագործական կապիտալիզմի նրա գնահատականը |
| 982 | «Արհեստից դեպի ապրանքային արտադրության անցնելը» | անցումը արհեստից ապրանքարտադրության |
| 987 | «...դրանց գնահատականը նարոդնիկ գրողների կողմից» | նարոդնիկ գրողների՝ դրանց գնահատականը |
| 988 | «Կապիտալիզմի ձգտումը դեպի ընդլայնումը» | Կապիտալիզմի ընդլայնման ձգտումը |
| 988 | «Հավաքական աղյուսակ Մոսկվայի նահանգի գյուղացիական մանր արհեստագործությունների վերաբերյալ վիճակագրական տվյալների» | Վիճակագրական տվյալների ամփոփիչ աղյուսակ՝ Մոսկվայի նահանգի գյուղացիական մանր արհեստագործությունների վերաբերյալ |



Այս ամենից հետո ասենք, որ մազաչափ անգամ հակամետ չենք անտեսելու Լենինի ԵԼԺ-ի թարգմանության ու խմբագրման ակներև դժվարությունները: Թեև այս բնագավառում երկու սերունդների հարուստ փորձ է կուտակված:

Մեր ճշտումներից, դիտողություններից ընթերցողը պարզորեն կնշմարի, որ բնագրի սխալ ընկալումը, պարբերությունների բառացի թարգմանությունը, մայրենի լեզվի հարուստ պաշարի ու նրբերանգների անգիտությունը, որոշ խմբագիրների ու թարգմանիչների անփութությունն ու անճարությունը և որ գլխավորն է՝ ղեկավարող խմբագրական ձեռքի թուլությունը կրկին վկայում են, որ գործի վիճակն անբարեհաջող է:

Ինքնին հասկանալի է, որ մեր դարի մեծագույն հեղափոխական հանճարի՝ Վ. Ի. Լենինի բազմահարուստ գրական ժառանգությունը, որը մարմնավորում է իր իսկ ստեղծած ու ղեկավարած կոմունիստական կուսակցության տիտանական գործի ու մտքի պատմական ընթացքը, հիրավի, ունի բազում և խորախոր ելևէջներ, մտքի ու հոգևոր կուլտուրայի անսահման շատ նրբերանգներ, պահանջում է լարված, խստորեն ծրագրված գործունեություն դրսևորել այդ ասպարեզում: Համոզված ենք, որ կարելի է ու պետք է արդիական լիակատար հայերենով արտահայտել Լենինի մտքերի բոլոր նրբերանգները, փոփոխակները: Բայց դա պահանջում է՝ գործի գիտական կազմակերպում, ԵԼԺ խմբագրական կոլեգիայի սիստեմատիկ գործունեություն, տերմինների, լեզվական ատաղձի առավելագույն մշակում և, վերջապես՝ թարգմանչական նախորդ կուլտուրայի քննադատական յուրացում:

Գործը կշահի, եթե ունկնդրենք մեզնից շատ ավելի իմացողներին ու վաստակաշատներին:

Ակադեմիկ Լ. Վ. Շչերբան նշել է, թե «...որևէ լեզվի բառերը ոչ թե մեծ մասամբ պարզապես համապատասխանում են մեկ այլ լեզվի բառերին, այլ դրանց հետ հույժ բարդ և բազմակերպ առնչություններ ունեն...» և «...ուզածդ լեզվի հասկացություն-բառերի ահագին բազմությունն անհամաչափելի է մեկ ուրիշ լեզվի հասկացություն-բառերի հետ»: «Միայն տերմիններն են բացարձակ բացառություն կազմում»: Սովորական թարգմանչական բառարանները, շեշտում է ակադեմիկը, օտար բառերի բուն իմացությունը չեն տալիս, այլ միայն օգնում են բնագրում կռահելու դրանց իմաստը: Հիշենք, որ ըստ անվանի գիտնականի, «...թարգմանչական բառարանները, օտար բառն այս կամ այն բառով թարգմանելիս, բոլորովին չեն հոգում վերջինիս բազմանշանակության վերաբերյալ»: Շչերբան թարգմանչական բառարանների սկզբունքային սխալն է համարում այն, որ դրանց կազմողները ենթադրում են, թե ուզածդ զույգ լեզուների հասկացությունները համարժեք են կամ լիովին համապատասխան (տե՛ս **Мастерство перевода**, М., 1971, стр. 330, 331): Այդ կարգի սխալներն մատնանշեցինք մեր հոդվածի աղյուսակներում:

Թարգմանչական գործի վարպետ Կ. Չուկովսկին արվեստաբան է համարում այն թարգմանչին, որը որոնում ու գտնում է այն ամենալիարժեք, ամենահարուստ, առավել արտահայտիչ բառերը, որոնք հաճախ չեն զետեղվում բառարաններում:

**Ա. Գ. ԱԴՈՅԱՆ**

# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ԿՈՒՍԿՈՄԻՏԵՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Կ. Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ**
Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի* աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից: *Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ ստրատեգիայի բաղկացուցիչ մասն է»:*

*Ահա այս պահանջներից ելնելով է, որ տասներորդ հնգամյակը մեր երկրում նախատեսվում է դարձնել արդյունավետության և որակի հնգամյակ: Արդյունավետության բարձրացման խնդիրը, ճիշտ է, այժմ ավելի է սրվում, սակայն այն նոր չէ, այդ խնդիրը առաջ քաշեց և կուսակցության XXIV համագումարը: Եվ օրինաչափ է, որ XXV համագումարը իններորդ և տասներորդ հնգամյակները դիտեց օրգանական կապի մեջ:*

*Կուսակցության՝ ստրատեգիական նշանակություն ունեցող այս դիրքորոշումը գործողության ուղեցույց է Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվի, կուսակցական կազմակերպության և դիրեկցիայի համար: Մենք օրինական հպարտությամբ կարող ենք նշել, որ արտադրության արդյունավետության բարձրացման առումով իններորդ հնգամյակը ձեռնարկության համար բավական արգասավոր եղավ: Կոլեկտիվը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարեց պետական առաջադրանքներն ու ստանձնած սոցպարտավորությունները և 14 անգամ հաղթող ճանաչվեց սոցիալիստական մրցության մեջ, պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Իններորդ հնգամյակում աշխատանքային արիության համար» հուշանշանով ու փոխանցիկ կարմիր դրոշով, ձեռնարկության անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճում-*



*ների ցուցահանդեսի պատվո տախտակին: Հատկանշական է, որ առանց արտադրական նոր կարողությունների գործարկման, բոլոր հիմնական ցուցանիշներով ունենք նկատելի աճ. դա հիմնականում ապահովվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Հնգամյա պլանով նախատեսված 12,5 տոկոսի դիմաց այն կազմել է մոտ 26 տոկոս:*

*Ձեռք բերած հաջողություններն արդյունք են այն բանի, որ կուսկոմիտեն, արտադրամասային կուսկազմակերպություններն ու հասարակական կազմակերպությունները, դիրեկցիայի հետ համատեղ, կոլեկտիվի շրջանում տարվող դաստիարակչական ու կազմակերպական աշխատանքներն ամբողջությամբ ի սպաս են դրել պետական պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը: Կուսկոմիտեն պլանավորում և իր նիստերում ու կուսժողովներում քննարկում է այնպիսի հարցեր, որոնք անմիջականորեն առնչվում են արտադրության արդյունավետության բարձրացման հետ:*

*Հանրահայտ է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման ու շահութաբերության ապահովման գործում կարևոր դեր են խաղում արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ներդրումն ու տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը: Ահա մի բնորոշ օրինակ: Հարստացուցիչ ֆաբրիկայում երկար ժամանակ ցածր էին որակական ցուցանիշները, պղնձի կոնցենտրատի մեջ մետաղի պարունակության տոկոսը նորմայից քիչ էր, հաճախակի թերակատարվում էր հանքաքարից մետաղների կորզման պլանային առաջադրանքը:*

*Բազմակողմանիորեն ուսումնասիրելով գործերի վիճակը՝ կուսկոմիտեն հարստացուցիչ ֆաբրիկայում տեխնոլոգիական ցուցանիշների բարելավման հարցը քննարկեց իր ընդլայնված նիստում, բացահայտեց տեղ գտած թերությունները և գործնական միջոցառումներ մշակեց դրանք վերացնելու համար: Բանն այն էր, որ այստեղ քիչ ուշադրություն էր նվիրվում նորագույն տեխնիկայի ներդրմանը, հաճախ խախտվում էր տեխնոլոգիական սխեման, եղած ավտոմատ սարքավորումները, բարոյապես մաշված լինելու պատճառով, անկարող էին բավարարել նորագույն տեխնոլոգիայի պահանջները: Կոմիտեն կոնկրետ առաջադրանքներ տվեց ինչպես ֆաբրիկայի, այնպես էլ կոմբինատի համապատասխան բաժինների ու ծառայությունների ղեկավարներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ժամկետներ սահմանեց թերությունները շտկելու համար: Կոմիտեի միջամտությամբ, կոմբինատի դիրեկցիան ու վերադաս կազմակերպությունները քննարկված հարցի առնչությամբ ուժեղացրին օգնությունը: Կատարման ստուգումը իրականացնելու նպատակով ակտիվ կոմունիստներին ու արտադրության առաջավորներին հանձնարարեցինք արտադրահանգույցներում հետևելու աշխատանքի ընթացքին և գործերի վիճակի մասին տեղյակ պահել կուսկոմիտեին:*

*Հետագայում այդ որոշման կատարման ընթացքը քննարկվեց կուսկոմիտեում ու ֆաբրիկայի կուսկազմակերպության ընդհանուր ժողովում: Մշակեցինք լրացուցիչ միջոցառումներ, որոնք լավ արդյունք տվեցին: Ֆաբրիկայում տեղադրվեցին հակազդիչների նոր ավտոմատ սարքավորումներ: Դրանք, անհրաժեշտության դեպքում, առանց մարդու միջամտության, հանքաքարի հարստացման պրոցեսին բաց են թողնում պահանջվող քանակությամբ քիմիկատներ: Այդ և մի շարք այլ փոփոխություններ նպաստեցին տեխնոլոգիական սխեմայի կատարելագործմանը և դրա հաստատուն ռեժիմի պահպանմանը: Միաժամանակ ամրապնդեցինք արտադրական կարգապահությունը:*

*Արդյունքը եղավ այն, որ անցած հնգամյակում հարստացուցիչ ֆաբրիկայում զգալի չափով բարելավվեցին որակական ցուցանիշները, հանքաքարից մոլիբդենի կորզումն ավելացավ 2,4, պղնձինը՝ 4,1 տոկոսով, թողարկվող կոնցենտրատի մեջ մոլիբդենի պարունակությունն աճեց 3,3, պղնձինը՝ 14 տոկոսով, ամբողջությամբ վերցրած՝ բարձրացավ մեխանիզմների ու ագրեգատների օգտակար գործողության գործակիցը:*

*Կուսկոմիտեի և հարստացուցիչ ֆաբրիկայի կուսկազմակերպության պա-*

հանջով ներդրվեցին մի շարք արժեքավոր առաջարկություններ, որոնք վաղուց արել էին ռացիոնալիզատորները, սակայն տեխնիկական ու պլանային բաժինների անտարբերության պատճառով մնացել էին անկատար։ Դրանց ներդրումը հնարավորություն ընձեռեց տարեկան ավելի քան 300 հազար տոննայով ավելացնել հանքաքարի վերամշակությունը, 15 տոկոսով իջեցնել էլեկտրաշարժիչների բեռնվածությունը և երկու անգամ կրճատել նորոգման համար պահանջվող ժամանակը։

Ուշադրության արժանի են նաև ստորերկրյա հանքուղում և ճոպանուղում կատարված վերափոխումները։ Տարիներ շարունակ կուսկոմիտեում, կուսկազմակերպությունների և կոլեկտիվի ժողովներում խոսվում էր այս արտադրամասերում վագոններից հանքաքարի բարձման ժամանակ գոյացած թափոնների հավաքումը մեքենայացնելու մասին։ Այդ աշխատանքը, որը, ի դեպ, ծանր էր, կատարվում էր ձեռքով, հետևաբար, ցածր էր աշխատանքի արտադրողականությունը, մեծ էր աշխատողների հոսքը։ Երկրի համանման շատ ձեռնարկություններում այդ հարցի դրական լուծման վերաբերյալ մեր որոնումներն ապարդյուն անցան։ Եղան բազմաթիվ առաջարկություններ, որոնք արդյունք չտվեցին։ Եվ ահա կուսկոմիտեում այդ հարցը քննարկելիս՝ ՍՄԿԿ անդամներ Բ. Մկրտչյանը, Ռ. Գևորգյանը, Պ. Հայրապետյանը և Մ. Ոսկանյանը ստանձնեցին արտադրահանգույցում ձեռքի աշխատանքի մեքենայացման պարտավորությունը։ Նրանց առաջարկությունն արժանացավ կոմբինատի դիրեկցիայի ու կուսկոմիտեի հավանությանը։ Այժմ հանքաքարի բարձման երկու կետերում էլ տեղադրված են ժապավենային փոխադրիչներ, որոնց օգնությամբ բեռնաբարձման պրոցեսում թափված հանքաքարը առանց մարդու միջամտության վերադարձվում է քարամբարները։

Ռացիոնալիզատորների օգնությամբ լուծվեց ավտոմատ կարգով միջվագոնային տարածությունների պահպանման, վթարի վտանգի դեպքում գծերն ավտոմատ անջատելու բարդ խնդիրը։ Այս նորամուծության շնորհիվ տնտեսվում է ավելի քան 800 գծամետր թանկարժեք ճոպան։ Միջին ջարդման բաժնում, ինքնամանրացմամբ առաջացած պատրաստի հումքը միանգամից տեխնոլոգիական սխեմայի մեջ մտցնելու նպատակով, տեղամասի ընդհանուր երկարությամբ տեղադրվել է միջանկյալ ժապավենային փոխադրիչ։ Այդ և այլ կարգի փոփոխությունների շնորհիվ իսպառ վերացվել է ձեռքի աշխատանքը, և նշված տեղամասերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 20—25 տոկոսով, բարելավվել են մարդկանց աշխատանքային պայմանները։ Տեխնիկական առաջընթացի ասպարեզում զգալի գործ է արվել նաև լեռնային արտադրամասում, տեխնոլոգիական ավտոպարկում, մեխանիկական, էներգետիկ, երկաթգծային և այլ արտադրամասերում։

Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները մշտական ուշադրություն են նվիրում ռացիոնալիզացիայի ու գյուտարարության ծավալմանը՝ այդ շարժումը դիտելով որպես տեխնիկական առաջընթացի ազդակ։ Կոմիտեի նիստերում ու կուսժողովներում այդ առթիվ քննարկում ենք զանազան հարցեր, հրավիրում ռացիոնալիզատորների հավաքներ, նրանց առաջավոր փորձի մասին լույս ընծայում առանձին թերթիկներ, լավագույն ռացիոնալիզատորներին խրախուսում բարոյապես ու նյութապես։ Անցած հնգամյակում ներդրված 657 առաջարկություններից ստացվել է ավելի քան 3 մլն ռուբլու օգուտ։ Այդ շարժման առաջամարտիկները կոմունիստներն են։ Կոմբինատում յուրաքանչյուր երրորդ ռացիոնալիզատորը ՍՄԿԿ անդամ է։ Նրանցից Դ. Հասրաթյանը, Բ. Մկրտչյանը, Մ. Ռաբինովիչը, Վ. Շմիլյովը, Է. Մայիլյանը, Պ. Հայրապետյանը, Լ. Բալասանյանը և շատ ուրիշներ իրենց ներդրած առաջարկությունների հաշվին գրանցել են մի քանի հարյուր հազար ռուբլու տնտեսում։

Ամբողջությամբ վերցրած, գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով ծավալված գործունեությունը տվել է լավ արդյունք. իններորդ հնգամյակում մեր կոմբինատում հանքաքարի վերամշակման արտադրական կարողությունը մեծացել է 28 տոկոսով։

Եթե, ընդհանուր առմամբ, բնութագրելու լինենք կոլեկտիվի գործունեու-



թյունը անցած հնգամյակում, չի կարելի չխոսել այն մասին, որ այդ ժամանակաշրջանում մենք հատուկ ուշադրություն ենք նվիրել ավելի աղքատ պարունակությամբ հանքաքարի արդյունահանմանն ու վերամշակմանը։ Դա հնարավորություն է ընձեռել մասնակիորեն խուսափել խիստ ընտրովի եղանակով հանքաքարի հանույթի պրակտիկայից և բարձրացնել ծննդավայրի շահագործման արդյունավետությունը։

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ գործում կարևոր նշանակություն ունի խնայողության ռեժիմի անշեղ կիրառումը։ «Ինչքան էլ որ մեծանա մեր հասարակության հարստությունը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը»։ Մի քանի տարի առաջ կոմբինատում նյութերի և պահեստամասերի անտնտեսվար օգտագործման դեպքեր էին նկատվում, արտադրամասերում առանձին նյութերի դեֆիցիտն իրեն զգացնել էր տալիս։ Կոմբինատի դիրեկցիան և կուսկոմիտեն բարեխիղճ ու հմուտ մասնագետների միջոցով ուսումնասիրեցին այդ հարցը և պահանջեցին արտադրական առանձին հատվածների կարիքների համար սահմանել նյութերի ծախսման ավելի ռեալ նորմաներ։ Ըստ եռամսյակների մրցության արդյունքներն ամփոփելիս և հաղթողներին որոշելիս՝ հաշվի է առնվում նաև ստացված նյութերի ու պահեստամասերի նպատակային օգտագործումը։ Ընդ որում, ժողովներում և խորհրդակցություններում բացատրություն է պահանջվում այն ընկերներից, որոնց ղեկավարած արտադրամասում կամ տեղամասում նյութերի գերածախս է տրվում։ Հաճախ այդ հարցերին անդրադառնալիս՝ հարկ է եղել առանձին ղեկավարների, նյութերի շռայլումների տեղիք տալու համար, ենթարկել կուսակցական ու վարչական տույժերի։

Խնայողության ռեժիմը պահանջում է հետևողական վերահսկողություն։ Այդ հարցը մշտապես գտնվում է կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում։ Խնայողության ռեժիմի իրականացմանը վերահսկող կուսակցական հանձնաժողովը տասնօրյակը մեկ ամփոփում է նյութերի օգտագործման վիճակը, արդյունքների մասին տեղյակ պահում բանվորական կոլեկտիվներին, նրանց ուշադրությունը սևեռում այդ կարևոր խնդրի վրա։ Արտադրական կարիքների համար ծախսվող նյութերի համար բոլոր արտադրամասերում սահմանել ենք ճիշտ նորմա և, ամբողջությամբ վերցրած, 25—30 տոկոսով պակասեցրել առանձին տեսակների ծախսումները։ Դրա շնորհիվ անցած հնգամյակում ավելի քան մեկ միլիոն ռուբլով իջեցվեց թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, արտապլանային օգուտները կազմեցին մոտ 2,4 մլն ռուբլի։

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ կարևոր գործոններ են սոցիալիստական մրցությունը, կադրերի հետ տարվող աշխատանքի, արտադրության մարդկանց կոմունիստական դաստիարակության բարելավումը, նախատեսվող տեխնիկական միջոցառումների իրականացման համար կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքների ճիշտ զուգակցումը։

Վերջին հաշվով, արտադրության արդյունավետության բարձրացումը մարդկանց արդյունավետ գործունեության արգասիք է։ Հետևաբար, հարկավոր է զարգացնել նրանց արտադրական ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը։ Այդ գործում վճռական դեր ունի սոցիալիստական մրցությունը, որն, ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, քաղաքական ու աշխատանքային դաստիարակության սերտ միաձուլման ակնբախ արդյունք է։

Կոմբինատում մրցության մեջ ընդգրկվում և պարտավորություններ են ստանձնում բոլոր արտադրական օղակները և առանձին անհատներ։ Մրցության պարտավորությունները ըստ բրիգադների, հերթափոխությունների, տեղամասերի, արտադրամասերի հրապարակում ենք առանձին թերթիկներով և փակցնում աշխատատեղերում։ Կենսագործելով «Սոցիալիստական մրցու-

թյան կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ կուսկոմիտեն անդրադառնում է մրցության արդյունավետ կազմակերպման հարցերին, բարձրացնում արհմիութենական կազմակերպությունների ակտիվությունը մրցության գործարարությունն ապահովելու ասպարեզում։ Կուսկոմիտեի որոշմամբ, 1975 թ. արտադրամասերում մրցություն ծավալվեց ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար, նրա լայն մասսայականությունն ապահովելու նպատակով լրացուցիչ վեց նոր մրցանակ սահմանվեց, իսկ խրախուսանքի համար հատկացված գումարի չափը 40 հազարից հասցվեց 60 հազար ռուբլու։ Այդ միջոցառումը հնարավորություն ընձեռեց ավելի շատ արտադրական օղակներ ու մարդիկ ընդգրկել սոցիալիստական մրցության մեջ։

Ձեռնարկության բոլոր արտադրամասերում գործում են պատվո տախտակներ, պատի թերթեր և ցուցադրական վահաններ, որտեղ ներկայացվում են արտադրական ցուցանիշները, արտացոլվում արտադրամասերի առօրյան։ Մրցության արդյունավետ կազմակերպման հաջողության գրավականն է այն, որ այդ շարժման ավանգարդում ընթանում են կոմունիստները։ Խոր փորման հաստոցի մեքենավարներ, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ա. Ոսկանյանի, Հ. Իսրայելյանի, էքսկավատորավարներ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության անդամ Պ. Դավթյանի, Մ. Աբրահամյանի, տեխնոլոգիական ավտոպարկի ավտովարորդներ Վ. Խաչատրյանի, Ե. Ղուկասյանի բրիգադները, Մարտուն Գրիգորյանի հարստացնողների հերթափոխը և ուրիշներ, որոնք կանգնել էին նախահամագումարյան աշխատանքային հերթափոխի, հաղթող են ճանաչվել հիմնական մասնագիտությունների համամիութենական սոցիալիստական մրցության մեջ։ Նրանք տարբեր ժամանակներում արժանացել են ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության ու մետալուրգիական արդյունաբերության բանվորների արհմիության կենտրոնական կոմիտեի դրոշներին ու առաջին կարգի դրամական մրցանակներին։

ՄԱՐԴԿԱՆՑ ՄՈՏ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԳԻՏԱԿՑԱԿԱՆ մոտեցում, կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու գործում կարևոր դեր է խաղում կադրերի ուսուցման հաջող կազմակերպումը։ Դա, ինչ խոսք, նպաստում է և արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Կոմբինատի յուրաքանչյուր երրորդ աշխատող ընդգրկված է ուսուցման տարբեր ձևերում։ Կադրերի ուսուցման մշտական գործող դպրոցներում ամեն տարի նոր մասնագիտություն է ստանում 265 մարդ, իսկ իրենց որակավորումը բարձրացնում են 320 աշխատողներ։ Կենսագործելով «Կադրերի տնտեսագիտական ուսուցումը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը, վերջին ժամանակներս հիմնական ուշադրությունը նվիրում ենք ուսուցման այդ ձևին։ Բավական է նշել, որ գործող բոլոր տեսակի խմբերում ընդգրկվածների ավելի քան 70 տոկոսը ուսումնասիրում է արդյունաբերության էկոնոմիկայի կոնկրետ պրոբլեմներ։ Այս խմբակներում ուսումնասիրվող թեմաները սերտորեն առնչվում են կոմբինատի էկոնոմիկայի հրատապ հարցերին։

Ընդօրինակելով Չերեպովեցի մետալուրգիական գործարանի կուսկազմակերպության դրական փորձը՝ կուսկոմիտեն ու արտադրամասային կուսկազմակերպությունները է՛լ ավելի շատ ինժեներա-տեխնիկական աշխատողներ են ընդգրկել կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության գործում։ Հենց նրանց ակտիվ մասնակցությամբ պետք է բացատրել մարդկանց աշխատանքային դաստիարակության հաջող կազմակերպումը։ ՍՄԿԿ XXV համագումարի օրերին և նրանից հետո 185 ագիտատորներ, քաղինֆորմատորներ, «Գիտելիք» ընկերության և դասախոսական խմբի անդամներ բացատրական աշխատանք են տարել աշխատավորության շրջանում, համագումարի որոշումների առնչությամբ բացատրել կոլեկտիվի անելիքները, նպաստել մարդկանց խանդավառության բարձրացմանը։ Կոլեկտիվի դաստիարակության նպատակով տարվող գործունեությունն զգալիորեն նպաստել է աշխատանքային ու



արտադրական կարգապահության ամրապնդմանը. վերջին հինգ տարիներին ավելի քան 4.840 մարդ-օրով պակասել են անհարգելի բացակայությունները, 70 տոկոսով կրճատվել են մեխանիզմների ու սարքավորումների պարապուրդները։ Դրանք ևս արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվներ են։

Արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով իրականացվող միջոցառումների ընթացքում մենք ամենից առաջ հոգ ենք տանում կոլեկտիվում փոխադարձ ընկերական հարգանքի մթնոլորտ, իսկական աշխատանքային մթնոլորտ ստեղծելու մասին։ Նման պայմաններում հնարավոր է լինում է՛լ ավելի զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բացահայտել թերությունները, գտնել նոր ռեզերվներ, կոլեկտիվ մտքի ուժով նպաստել արտադրության առաջընթացի արագացմանը։

Մեր ձեռնարկության կոլեկտիվի առջև լուրջ խնդիրներ են ծառացած տասներորդ հնգամյակում։ Դրանց հաջող լուծումը ո՛չ միայն հանրապետական, այլև միութենական կարևորության հարց է։ Ամենից առաջ նշենք, որ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում հանքաքարի վերամշակման կարողությունները մեծանալու են ավելի քան 40 տոկոսով։ Այդ նպատակով այժմ կատարվում են ընդլայնման աշխատանքներ։ Կառուցվել են հարստացուցիչ ֆաբրիկայի նոր մասնաշենքը, փորվել է չորրորդ հանքիջանցքը, կառուցման ընթացքի մեջ են հինգերորդ ճոպանուղին, նոր ետնամբարը (պոչամբարը)։ Այդ կարողությունների գործարկումը պետք է ավարտվի 1976 թ. վերջին։ Ամբողջությամբ վերցրած, ընթացիկ հնգամյակում կոմբինատում իրացվելու են ավելի քան 42 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Արտադրության ընդլայնմանը զուգընթաց, Քաջարանում կառուցվելու են կուլտուր-կենցաղային բազմաթիվ օբյեկտներ։ Շահագործման կհանձնվեն պիոներպալատը, հյուրանոցի նոր շենքը, սպորտային և կենցաղային համալիրներ և այլն։

Տասներորդ հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ է։ Կուսակցության այս լոզունգը մեզ համար օրենքի ուժ ունի։ ՍՄԿԿ XXV համագումարների որոշումները քննարկելիս, մեր կոմունիստները միահամուռ հավանություն տվեցին կուսակցության նոր կանխագծումներին։ Դրանք անշեղորեն կյանքի կոչելու նպատակով կոմունիստները տեղի ունեցած ժողովներում բարձրացրին նոր կարողությունների գործարկման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման ու որակի բարելավման հետ առնչվող մի շարք կարևոր հարցեր։ Այս առնչությամբ մեր հիմնական բացթողումն այն է, որ շինարարական աշխատանքի մեջ խստորեն չենք առանձնացրել առաջնայինը երկրորդայինից։ Կուսժողովներն իրենց ընդունած որոշումներով պահանջեցին ամենօրյա ուշադրություն նվիրել հատկապես այն օբյեկտների շինարարությանը, որոնք մտնում են հիմնական ֆոնդերի կազմի մեջ և անմիջականորեն կմասնակցեն թողարկվող արտադրանքի ավելացմանն ու որակի բարձրացմանը։ Դա նշանակում է՝ տրված միջոցները չպետք է ցրել, այլ ուղղել ճիշտ նպատակին, ինչպես պահանջում է կուսակցության XXV համագումարը։ Այժմ շաբաթական մեկ անգամ շինարարների հետ հրավիրվող գործակարգավորման խորհրդակցությունում հիմնական ուշադրությունը հրավիրում ենք այս հարցերի վրա։

Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմն ընդունել է հումքի կոմպլեքս օգտագործման վերաբերյալ որոշումներ։ Ղեկավարվելով այդ որոշումների պահանջներով և ընդօրինակելով Բալխաշի և Ուստ-Կամենոգորսկի լեռնամետալուրգիական կոմբինատների կուսկազմակերպությունների առաջավոր փորձը, կուսկոմիտեն, ձեռնարկության դիրեկցիայի հետ միասին, գործնական միջոցներ է ձեռնարկում՝ վերամշակվող հումքից, մոլիբդենից և պղնձից զատ, կորզելու նաև այլ կոմպոնենտներ։ Նշված մետաղներից բացի, մեզ մոտ արդյունահանվող հանքաքարի մեջ պարունակվում են նաև ռենիում, ոսկի, արծաթ, ալյումին և այլ հազվագյուտ ու թանկարժեք մետաղներ, որոնց կորզման համար կոմբինատում տեխնոլոգիական պայմաններ չեն նախատեսվել։ Մինչդեռ լեռնամետալուրգիական ձեռնարկություններում հանքային հումքի կոմպլեքս

օգտագործումը կարևոր խթան է արտադրության արդյունավետության բարձրացման համար։ ՍՄԿԿ XXV համագումարի նախօրեին, կոմբինատի մի խումբ ինժեներա-տեխնիկական աշխատողների ակտիվ մասնակցությամբ, մշակվել է պիրիտի ստացման տեխնոլոգիան, ընթացքի մեջ է պոչուկներից, այսպես կոչված, «մագնիսական սեպարացիայի» միջոցով երկաթի ստացման եղանակների մշակումը։ Այդ միջոցառումների հաջող ավարտումը հնարավորություն կընձեռի լրացուցիչ թողարկել մոտ 4 մլն ռուբլու արտադրանք։

Ձեռնարկությունում արտադրության արդյունավետության բարձրացման համար խոշոր միջոցառում է նաև մոլիբդենի վերամշակման արտադրամասի կառուցումը։ Այստեղ բարձր ջերմաստիճանի տակ կանջատվի ռենիումը, և դրա հաշվին դրամական օգուտները կաճեն ավելի քան 6,5 մլն ռուբլով։

ՀԿԿ XXVI համագումարում ընկ. Կ. Դեմիրճյանը Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ հանրապետության գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններին քննադատեց այն բանի համար, որ նրանց թողարկած արտադրատեսակներից ոչ մեկը պետական որականիշի չի արժանացել։ Քաջարանի լեռնագործները լուրջ եզրակացություն են անում այդ շատ տեղին դիտողությունից։

Արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր ուղին գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է։ Կուսկոմիտեի և դիրեկցիայի նախաձեռնությամբ այս օրերին կոմբինատում աշխատանք է տարվում գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման միջոցով կատարելագործելու տեխնոլոգիական ռեժիմը, կիրառելու նոր տեխնիկական սխեմաներ։Այդ միջոցառումների նպատակն է է՛լ ավելի բարձրացնել հանքաքարից մետաղների կորզման աստիճանը, թողարկվող կոնցենտրատը զատել այլ մետաղների խառնուրդներից և հասցնել պետական որականիշի։

Կոմբինատի կոլեկտիվը լավ է սկսել տասներորդ հնգամյակը։ Գերակատարել ենք արտադրանքի իրացման, հանքաքարի հանույթի, բացման աշխատանքների առաջին չորս ամիսների պլանները, մոլիբդենի ու պղնձի խտանյութերի թողարկման, կոնցենտրատի մեջ մոլիբդենի ու պղնձի պարունակության առաջադրանքները։ Մեր կոմբինատում տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով պլանների համաչափ կատարումը, տեխնիկական առաջընթացի իրականացման շնորհիվ տեխնոլոգիական ռեժիմի կատարելագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին թողարկվող արտադրանքի աճի անընդհատ ապահովումը դարձել են արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր գործոններ։

Հավատարիմ մնալով իրենց աշխատանքային լավագույն ավանդույթներին՝ Քաջարանի լեռնագործները ջանք ու եռանդ չեն խնայում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու, իրենց առջև ծառացած խնդիրները պատվով լուծելու համար։ Նրանք տասներորդ հնգամյակի տարիներին նոր բնագծեր կնվաճեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ճանապարհին։

# ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ՀԱՄԱՐ

**Վ. Ն. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
ՀԿԿ Սևանի շրջկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի վարիչ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, սովետական ժողովուրդը ՍՄԿԿ XXV համագումարը նշանավորեցին իններորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած նշանակալի հաջողություններով։ «Հնգամյակի արդյունքները,— ասաց Լ. Ի. Բրեժնևը համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— առանձնապես տպավորիչ կդառնան, եթե դրանք գնահատենք այն տեսանկյունից, թե այդ տարիներին որքան է մեծացել երկրի տնտեսական հզորությունը, ինչպիսին է եղել բացարձակ աճը»։ Հարցին մոտենալով այս տեսանկյունից՝ կարելի է համարձակորեն ասել, որ կուսակցության մեծ համաժողովը արժանավայել գործերով դիմավորեցին նաև Սևանի շրջանի աշխատավորական կոլեկտիվները։

Հայտնի է, որ կուսակցության յուրաքանչյուր համագումար մշակում է երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման ծրագիրը, նշանավորում հասարակական զարգացման և կոմունիստական շինարարության մի կարևոր փուլ։ Ղեկավարվելով կուսակցության տնտեսական քաղաքականության վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով՝ շրջանի կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները իններորդ հնգամյակի տարիներին է՛լ ավելի ուժեղացրին քաղաքական-մասսայական և կազմակերպական աշխատանքը, որոշակիորեն բարձրացրին ղեկավարման մակարդակը, ամրապնդեցին կուսակցական ու պետական կարգապահությունը։ Այդ առումով մեզ օգտակար շատ բան տվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումները։ Նրանց որոշումները շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար դարձան գործողության ուղենիշ։

Վերջին տարիներին ձեռնարկությունների ղեկավարներն ու կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրել արտադրության կոմպլեքսային մեքենայացման, բարձր արտադրողական ագրեգատների, մեքենաների, հաստոցների, հոսքային գծերի, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, գործող սարքավորումների նորացման ու արդյունավետ օգտագործման, տեխնիկական բազայի հարստացման խնդիրներին։ Ապակյա էլեկտրամեկուսիչների, գործադիր սարքերի գործարաններում, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման Գագարինի մասնաճյուղում անցկացվել են մի շարք հոսքային գծեր, արմատավորվել ավելի քան 250 տեխնոլոգիական նոր պրոցեսներ, տեղադրվել ավտոմատ ու կիսաավտոմատ հաստոցներ։

Կարևոր նվաճումներից մեկն այն է, որ հնգամյակի տարիներին գործարկվեցին մի շարք արտադրական նոր կարողություններ, ընդլայնվեց արտադրանքի տեսականին, բարելավվեց որակը։ Գործել սկսեցին շինարարական մեքենաների նորոգման գործարանը, ապակե էլեկտրամեկուսիչների և գործադիր սարքերի գործարանների ապակե գնդիկների ու գալվանապատման արտադրա-

մասերը, Թռչնաբուծական ֆաբրիկայի առաջին հերթը և ուրիշ օբյեկտներ։ Արմատական վերակառուցման մեծ աշխատանքներ են կատարվում ծխախոտի ֆերմենտացիոն գործարանում, որի համար հատկացվել է ավելի քան երեք միլիոն ռուբլի։ Շահագործման հանձնվեցին ալրաղաց կոմբինատի 34,5 հազար տոննա կարողությամբ էլևատորը, Գագարինի սառցակոմբինատը, նավթամթերքների միջշրջանային բազան և Թռչնաբուծական ֆաբրիկայի երկրորդ հերթը։

Շրջանի կուսակցական, սովետական մարմինները, սկզբնական կուսկազմակերպությունները, մոբիլիզացնելով աշխատավորների ուժերը՝ իններորդ հնգամյակի առաջադրանքները բոլոր ցուցանիշներով կատարելու համար, ելնում էին այն բանից, որ մեծապես դրանով է պայմանավորված տասներորդ հնգամյակի հաջող սկիզբը։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության և մյուս բնագավառներում ձեռք բերած դրական արդյունքների հիման վրա գալիք հնգամյակում է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի որակն ու արդյունավետությունը, հասնել նոր հաջողությունների։

Իսկ հնգամյակը մեր առջև որակապես նոր խնդիրներ է դնում։ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը, կուսակցական սկզբունքայնությամբ վերլուծելով հանրապետության կուսկազմակերպությունների գործունեությունը, բացահայտեց մեր առաջընթացը խոչընդոտող թերությունները, որոնք դեռևս տեղ են գտել տնտեսական ու կուլտուրական շինարարության, ինչպես նաև կուսակցական աշխատանքի տարբեր օղակներում։ Այդ քննադատությունը վերաբերում է նաև մեր շրջանին։ Համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը միանգամայն իրավացիորեն քննադատեց Սևանի շրջանի կուսակցական ու տնտեսական մարմիններին՝ անասնապահության կերի բազայի ամրապնդման նկատմամբ ցուցաբերած անտարբեր վերաբերմունքի, կովերի կաթնատվության ցածր մակարդակի և պետությանը ցածր քաշի անասուններ վաճառելու համար։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՄՇԱԿԵՑ տասներորդ հնգամյակում կուսակցության տնտեսական քաղաքականության մեծ ծրագիրը, ելակետային դրույթներ տվեց երկրի էկոնոմիկայի հեռանկարային զարգացման համար։ Համագումարի հաստատած «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» պատմական փաստաթղթում ձևակերպված են, ամբողջությամբ վերցրած, Միության և միութենական հանրապետությունների ժողովրդական տնտեսության վերելքի հիմնական խնդիրները։ Մեր արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, շինարարության աշխատողները, ծանոթանալով ՍՄԿԿ XXV համագումարի նյութերին և ջերմորեն հավանություն տալով կուսակցության տնտեսական ծրագրին, իրենց կոլեկտիվների ժողովներում նշում են, որ նոր՝ տասներորդ հնգամյակում զարգացման լայն հեռանկարներ են բացվում նաև Սևանի շրջանի էկոնոմիկայի ու մշակույթի վերելքի, բնակչության կենսամակարդակի բարձրացման համար։

Առաջիկա հինգ տարիներին գրեթե կկրկնապատկվի արդյունաբերական արտադրանքի ծավալը, լրիվ կարողությամբ կգործի իններորդ հնգամյակի կառույց ալրաղաց կոմբինատը։ Գործադիր սարքերի, ապակե էլեկտրամեկուսիչների գործարաններում, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման Գագարինի մասնաճյուղում արտադրանքի թողարկման ծավալը կմեծանա 40—48 տոկոսով, գիտատեխնիկական առաջընթացի ապահովման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 35—42 տոկոսով, կյուրացվի տասից ավելի նոր արտադրատեսակների սերիական արտադրությունը։ Ծխախոտի ֆերմենտացիոն գործարանի արտադրական կարողությունների ընդլայնման նպատակով կիրացվեն ավելի քան երեք միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր է դրել նոր հնգամյակում զգալիորեն



մեծացնել շինանյութեր թողարկող ձեռնարկությունների հզորությունը։ Մեր հանրապետությունում խոշոր պանելային տնաշինության արտադրանքը կավելանա հինգ անգամ և 1980 թ. շինարարության ամբողջ ծավալում կկազմի 50 տոկոս, 1975 թ. 12 տոկոսի դիմաց։ Նախատեսվում է ընթացիկ հնգամյակում տնաշինական կոմբինատ կառուցել նաև Սևանում։ Շրջանում կծավալվեն շինարարական լայն աշխատանքներ։ «Սևանշին» տրեստի կառուցողները տասներորդ հնգամյակում տարեկան կկատարեն 10—11 մլն ռուբլու կապիտալ շինարարություն, միայն ընթացիկ տարում շահագործման կհանձնեն 21 հազար քմ. բնակելի տարածություն։

Տասներորդ հնգամյակում կընդարձակվի տրանսպորտի և կապի ծառայությունների ոլորտը, լայն ծավալի աշխատանքներ կկատարվեն բնակչության կոմունալ-կենցաղային ծառայությունների ու սպասարկման մյուս բնագավառներում։

Ընթացիկ հնգամյակի մեծ ու պատասխանատու խնդիրների հաջող կատարումը կոմունիստներից, բոլոր աշխատավորներից պահանջում է ըստ ամենայնի բարձրացնել կարգապահությունն ու պատասխանատվությունը բոլոր օղակներում, հաշվենկատորեն վերաբերվել հումքի, նյութերի, էներգիայի ու արտադրական ֆոնդերի օգտագործմանը։ Կուսակցությունը խնդիր է դնում մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսվարության և թափթփվածության երևույթները, ապահովել ամսական, եռամսյակային և ամբողջ տարեկան պլանների կատարումը, բոլոր ջանքերը, ուշադրությունը և եռանդը կենտրոնացնել ամենակարևոր գործի՝ հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ դարձնելու վրա։ Կուսշրջկոմն այս հարցերի վրա է սևեռել սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը, քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքն ուղղել դրանց լուծմանը։

Հնգամյակում գիտության առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար նախատեսվում է զգալիորեն բարելավել ու ամրապնդել գիտական հիմնարկությունների գիտափորձնական բազան։ Սևանա լճի բուսական ու կենդանական աշխարհի հետագա ուսումնասիրման, նրա երկրաբանական ռեժիմի կայունացման նպատակով կսկսվի Սևանի ջրակենսաբանական կայանի փորձարարական բազայի շինարարությունը։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ հետագա վերելքը համարեց կարևորագույն համապետական, համաժողովրդական խնդիր։ Այդ ասպարեզում մեծ անելիքներ ունեն նաև մեր շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները։ Նրանք գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրությունը, իններորդ հնգամյակի համեմատությամբ, կավելացնեն 16—18 տոկոսով։ Այդ աճն ապահովելու և ընդհանրապես պետական պլանները կատարելու նպատակով նախատեսվում է բարձրացնել գյուղատնտեսության վարման կուլտուրան, նրա արդյունավետությունը և աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը, ամրապնդել տնտեսությունների նյութա-տեխնիկական բազան, արդյունավետ օգտագործել ջրովի հողատարածությունները, հանքային ու օրգանական պարարտանյութերը։ Անասունների մթերատվության, մասնավորապես կովերի կաթնատվության բարձրացման և պետությանը հանձնվող անասունների կենդանի քաշն ավելացնելու համար ձեռնարկվել է մատղաշների նպատակային աճեցման գործը։ Շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելի քան 900 գլուխ մատղաշ բտվում է ինտենսիվ եղանակով։ Կուսակցությունը միջտնտեսային կոոպերացման միջոցով արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը դիտում է որպես արտադրության ծավալների արագ աճի, աշխատանքի արտադրողականության էական բարձրացման և ինքնարժեքի իջեցման կարևոր միջոց։ Ի կատարումն այս պահանջի՝ մոտ ժամանակներս շրջանում կստեղծվի երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկություն, որը հնարավորություն կընձեռի արմատապես բարելավել կովերի կազմը, հոտում բարձրացնել դրանց տեսակարար կշիռը։

Համագումարի շատ կարևոր պահանջներից մեկն էլ կոլտնտեսություննե-



5. «Լենինյան ուղիով», № 5

րում ու սովխոզներում աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանի բարձրացումն է, կերերի վերամշակման նոր տեխնոլոգիաների կիրառումը: Այդ գործում տնտեսություններին անհրաժեշտ օգնություն ցույց տալու նպատակով գործադիր սարքերի և շինարարական խոշոր մեքենաների գործարանների, «Սևանշին» տրեստի, «Հայշինարգոցանց», շինտրեստի, № 1 շարժական շարասյան և մյուս ձեռնարկությունների կոլեկտիվները վերցրել են տնտեսությունների շեֆությունը և այժմ օգնում են նրանց՝ կառուցելու կերախոհանոցներ, մեքենայացնելու ֆերմաների աշխատատար պրոցեսները:

Գործնական հետևություններ անելով մեր շրջանի հասցեին Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի քննադատությունից՝ կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը միջոցառումներ են մշակել կերարտադրության գործը բարելավելու համար: Նախատեսվում է ընդարձակել կերային կուլտուրաների ցանքատարածությունը, բարձրացնել դրանց բերքատվությունը, ներդնել նոր կերատեսակներ, բարելավել խոտհարքներն ու արոտավայրերը, գտնել կերի բազայի ամրապնդման նոր հնարավորություններ ու ռեզերվներ:

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ԼՈՒԾՎԵԼԻՔ կարևորագույն պրոբլեմը, որին ուղղված են մյուս բոլոր հիմնական խնդիրները, սովետական ժողովրդի բարեկեցության ըստ ամենայնի բարձրացումն է: Դա կուսակցության ու սովետական պետության տնտեսական քաղաքականության առանցքն է: Այդ քաղաքականության արտացոլումը կարելի է տեսնել մեր երկրի բոլոր անկյուններում, այդ թվում և Սևանի շրջանում: Նախատեսվում է առաջիկա տարիներին շրջկենտրոնում ու գյուղական վայրերում ծավալել կուլտուրական շինարարության լայն աշխատանքներ: Կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն դպրոցական, մշակութային շենքեր, բնակչության սպասարկման տասնյակ օբյեկտներ: Խոշոր միջոցառումներ կիրականացվեն աշխատավորների հանգստի կազմակերպման ասպարեզում, լայնորեն կզարգանա Սևանա լճի ափամերձ հանգստի հանրապետական գոտին: Այստեղ գրեթե կկրկնապատկվի հանգստացողների ու հովեկների թիվը, կկառուցվեն «Արևիկ» պիոներական առողջարանի երկրորդ և երրորդ հերթերը, տուրիստական հանգրվանի համալիրը, բազմաթիվ առողջարաններ, պանսիոնատներ ու հանգստյան տներ:

Կուսակցության XXV համագումարը բացառիկ կարևոր նշանակություն տվեց բնության, մարդուն շրջապատող միջավայրի պաշտպանությանը, խնդիր դրեց ոչ միայն պահպանել, այլև վերականգնել ու հարստացնել հայրենի բնությունը: Այդ պահանջը գործողության ուղեցույց կլինի մեր շրջանի կուսակցական ու սովետական կազմակերպությունների համար: Նախատեսվում է ավարտել Սևան—Հրազդան կոյուղու կոլեկտորի շինարարությունը, խոշոր միջոցառումներ իրականացնել արդյունաբերական ձեռնարկությունների կեղտաջրերի մաքրման նպատակով, դադարեցնել այդ ջրերի հոսքը Սևանա լիճ:

Ինչպես տեսնում ենք, տասներորդ հնգամյակի խնդիրները մեծ են ու պատասխանատու: Դրանց լուծման համար շրջանի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններից և տնտեսական ղեկավարներից պահանջվում է ծավալել կազմակերպական ու քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանք, բարձրացնել բանվորների ու կոլտնտեսականների ակտիվությունը, զարգացնել ստեղծագործական նախաձեռնությունը: Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուղղել են 1976 թ. ժողովրդատնտեսական պլանի ու սոցպարտավորությունների հաջող կատարմանը, կուսակցության XXV համագումարի առաջ քաշած սոցիալ-տնտեսական խնդիրների հետևողական լուծմանը:

Հնգամյակի առաջին տարվա պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարումն ապահովելու նպատակով շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում և մյուս կազմակերպություններում ծավալվել է գործարար սոցիալիստական մրցություն, որի ավանգարդում են կոմունիստները: Կուսշրջկոմը հասավ այն բանին, որ շեշտը դրվի անհատական, միջբրիգադային, միջհերթափոխային, միջֆերմային և միջարտադրամասային պարտավորությունների մշակման վրա, որպեսզի յուրաքանչյուր աշխատող հստակ պատկերացում ունենա իր և իր կոլեկտիվի անելիքների վերաբերյալ: Նախահամագումարյան օրերին ծնվեցին բազմաթիվ նոր նախաձեռնություններ: Գործադիր սարքերի գործարանի խառատ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր Նորիկ Մխիթարյանը հանդես եկավ հնգամյակը երեք ու կես տարում կատարելու, միայն գերազանց որակի արտադրանք թողարկելու և առանց տեխնիկական վերահսկչի աշխատելու նախաձեռնությամբ: Ջիլովկայի և Սեմյոնովկայի սովխոզների կթվոր-անասնապահները ծավալել են ամեն մի կովից 2.000 կգ կաթ ստանալու շարժումը, իսկ Դդմաշենի անասնապահները խոստացել են պետությանը հանձնվող յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի միջին կենդանի քաշը մեկ տարեկան հասակում հասցնել 300 կգ-ի: Այս նախաձեռնությունները լայն արձագանք են գտել շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում ու տնտեսություններում:

Կուսշրջկոմը, գյուղատնտեսության աշխատողների արհմիության շրջկոմը ուսումնասիրել ու լայնորեն պրոպագանդում են շրջանի անասնապահների առաջավոր փորձը, հրատարակել են Դդմաշենի ու Լճաշենի սովխոզների անասնապահների աշխատանքի փորձի վերաբերյալ հատուկ բյուլետեններ:

Ագիտատորներն ու քաղինֆորմատորները, շրջկոմի դասախոսական խմբի և «Գիտելիք» ընկերության անդամները զրույցներ ու զեկուցումներ են անցկացնում կուսակցության XXV համագումարի արդյունքների շուրջ, բարձրացնում աշխատավորների ակտիվությունը: Ֆերմաներում կաթի ստացման ամենօրյա արդյունքները ցուցադրվում են կարմիր անկյուններում, կիրառվում ցուցադրական ագիտացիայի և խրախուսման ուրիշ ձևեր ու մեթոդներ:

Գաղափարական աշխատանքի հիմնական թեման ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի լայն պրոպագանդան է, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը մասսաներին պարզաբանելը: Կուսշրջկոմն արդեն հրավիրել է պրոպագանդիստների, ագիտատորների, քաղինֆորմատորների, կուլտուր-լուսավորական աշխատողների սեմինար խորհրդակցություններ, նրանց տվել համապատասխան մեթոդա-հրահանգչական ցուցումներ: Կուսկազմակերպություններն աշխատավորական կոլեկտիվներում, ըստ բնակության վայրի, պլանաչափ աշխատանք են ծավալում համագումարի նյութերը մասսայականացնելու համար: Կուսշրջկոմի դասախոսական խմբի և «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության նիստում քննարկվել ու հաստատվել են «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները», «Հայկական ՍՍՀ-ն տասներորդ հնգամյակում», «ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների միջև եղած օրգանական կապը» թեմաներով դասախոսությունների տեքստերը:

ՍՄԿԿ XXV, ինչպես նաև ՀԿԿ XXVI համագումարների նյութերի պրոպագանդան կարճատև կամպանիա չէ: Այդ նպատակով ինչպես կուսշրջկոմը, այնպես էլ շրջանի մի շարք կուսկազմակերպություններ մշակել են եռամյա հեռանկարային պլաններ, որոնցում հաշվի են առնվել կոլեկտիվների տնտեսական խնդիրները, աշխատանքի առանձնահատկությունները, նրանց անդամների քաղաքական ու հանրակրթական մակարդակը, տնտեսական ու քաղաքական խնդիրների շաղկապման ու լուծման ուղիները:

Մեր նպատակն է՝ ապահովել գաղափարական ու տնտեսական խնդիրների միասնությունը, գաղափարական ողջ գործունեությունը ծառայեցնել տասներորդ հնգամյակի խնդիրների լուծմանը:

# ԿՈՒԼՏՈՒՐ-ԼՈՒՍԱՎՈՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**ԱԼԵՔՍԱՆԴՐԱ ՇՉԵՐԲԱԿՈՎԱ**
ՀԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ

**Բ**ԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ մեծ վերելքով են նշանավորվել 1976 թ. առաջին ամիսները։ Աշխատավորների համընդհանուր ոգևորությունը մեր կուսակցության և սովետական ժողովրդի կյանքում տեղի ունեցած կարևոր իրադարձության՝ ՍՄԿԿ XXV համագումարի յուրովի արձագանքն է։ Համագումարը նշեց ո՛չ միայն երկրի սոցիալ-տնտեսական զարգացման գլխավոր խնդիրները, այլև կուսակցական կազմակերպություններին զինեց գաղափարա-դաստիարակչական աշխատանքի մարտական ծրագրով։

«Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում,— համագումարում ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը։— Մենք այսուհետ ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը։ Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացմամբ։ Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Սա չի կարելի աչքաթող անել» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., էջ 128)։

Մասսաների կուլտուրական մակարդակի բարձրացման, կոմունիստական գիտակցականության ամրապնդման գործում կարևոր դեր են խաղում կուլտուր-լուսավորական հիմնարկությունները, որոնք կուլտուրայի ամենամասսայական օջախներն են, հանրապետության քաղաքների ու գյուղերի, արդյունաբերական ձեռնարկությունների գաղափարական աշխատանքի օջախները։

Վերջին ժամանակներս բարելավվել, առավել բովանդակալից է դարձել կուլտուրայի շատ պալատների ու տների, ակումբների ու գրադարանների, թանգարանների և կուլտուրայի ու հանգստի զբոսայգիների գործունեությունը, որը ծառայում է աշխատավորների, ողջ բնակչության կոմունիստական դաստիարակության գործին։

Հանգստի, ժամանցի, հոգեկան ու բարոյական դաստիարակության լավագույն օջախներ են դարձել Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղի, Շամշադինի շրջանի Դրդի, Արտաշատի՝ Այգեզարդ, Ախուրյանի՝ Ազատան, Թումանյանի՝ Ղաչաղան գյուղերի ակումբները, որոնց գործունեությունը վարում են իրենց գործի էնտուզիաստներ Ս. Աբովյանը, Հ. Բաբասյանը, Հ. Մանուկյանը, Ռ. Առաքելյանը, Ռ. Այվազյանը։ Աշխատավորներին այդ օջախների հետ սերտորեն կապում են այնպիսի միջոցառումներ, ինչպես՝ հարց ու պատասխանի հետաքրքրական երեկոները, խմբակային աշխատանքը, հանդիպումները ականավոր մարդկանց և արտադրության առաջավորների հետ։

Ուշագրավ է Լենինականի Մյասնիկյանի ապստամբության անվան կուլտուրայի պալատի փորձը։ Բովանդակալից են անցնում երիտասարդության հանդիպումները կուսակցության և աշխատանքի վետերանների հետ, աշխատանքային դինաստիաների մեծարումները, տեքստիլագործների՝ «Համագործակցություն և մրցություն» նախաձեռնության պրոպագանդմանը նվիրված թեմատիկ երեկոները։ Տեքստիլագործների սերն են վաստակել կանանց ռուսական երգչախումբը, էստրադային նվագախումբը, ժողգործիքների և հայկական երգի-պարի անսամբլի կոլեկտիվները, երգի և պարի մանկական անսամբլը։ Կուլտուրայի պալատն ունի լենինականի տեքստիլագործների աշխատանքային փառքի թանգարան։ Պալատի աշխատողները կուլտուր-մասսայական լայն գործունեություն են ծավալում բնակչության շրջանում։

Մարդու կոմունիստական աշխարհայացքի, բնավորության հումանիստական գծերի ձևավորմանն են ծառայում նաև Երևանի ալյումինագործների կուլտուրայի պալատի ձեռնարկած միջոցառումները։ Կուսակցության XXV համագումարի օրերին պալատում կազմակերպվեցին զեկուցումներ, դասախոսություններ և երեկոներ՝ «Մեր հարվածային աշխատանքը XXV համագումարին» նշանաբանով։ Հետաքրքրական էին «Մեր աշխատանքային զեկույցը քեզ, հարազատ կուսակցություն» թատերականացված ելույթ-երեկոն, երիտասարդության հանդիպումները աշխատանքի վետերանների, վարպետ-դաստիարակների հետ՝ «Նրանք կատարել են հնգամյակը» լոզունգով։ Այստեղ մեծ ուշադրություն է նվիրվում աշխատավոր մարդու գեղարվեստական դաստիարակությանը։ Պալատում գործում են գեղարվեստական ինքնագործունեության 16 խմբակներ։ Հռչակված է ժողովրդական պարերի անսամբլը, որը ելույթներ է ունեցել ո՛չ միայն մեր երկրի շատ քաղաքներում, այլև՝ արտասահմանում։ Միութենական և արտասահմանյան մի շարք ցուցահանդեսներում ներկայացված են գեղարվեստական ստուդիայի անդամների՝ գործարանի բանվորների աշխատանքները։

Վաղուց է արդեն, ինչ գրադարանները հաստատուն կերպով մուտք են գործել մեր բնակչության կենցաղի մեջ՝ դառնալով աշխատավորների հոգևոր կյանքի անբաժանելի մասը։ Հատկապես նշանակալի է դրանց դերը գյուղական վայրերում։ Գրադարանային գործը ստեղծագործաբար, մտածված ձևով է կազմակերպված Աշտարակի շրջանի Օշական և Բազմաղբյուր գյուղերում, Անիի՝ Սարակապ և Լանջիկ, Մարտունու՝ Ձոլաքար և Վարդենիկ, Նաիրիի՝ Հնաբերդ, Ստեփանավանի՝ Գյառգյառ, Կամոյի անվան շրջանի՝ Կարմիրգյուղ և Մուխան, Էջմիածնի շրջանի՝ Աղավնատուն, Արագած գյուղերում և այլուր։ Նորի, հետաքրքրականի անդուլ որոնում— ահա թե ինչն է բնորոշ այս գրադարանների աշխատանքի ոճին։ Այդ գրադարանները շատ բան են անում գրականությունը, նոր հրատարակությունները ընթերցողներին հասցնելու, գրքի նկատմամբ վարվեցողության կուլտուրան բարձրացնելու նպատակով։ Ընթերցողներին գրադարանները գրավում են ականավոր մարդկանց, գրողների ու բանաստեղծների հետ կազմակերպված հանդիպումներով, հետաքրքրական բանավեճերով, բանավոր ամսագրերով... Մյասնիկյանի անվան և Խնկո Ապոր անվան մանկական հանրապետական գրադարանների կոլեկտիվները արդյունավետ աշխատանք են կատարում՝ մեթոդական օգնություն ցույց տալով գյուղական գրադարաններին։

Տարեցտարի բարելավվում է ակումբների և գրադարանների նյութա-տեխնիկական բազան։ Անցած հնգամյակում հանրապետությունում գործարկվել են ակումբների, կուլտուրայի տների 150 տիպային շենքեր, գրադարանների թիվը մեծացել է 67-ով։

Սովետական ողջ ժողովուրդն այժմ տոգորված է մի ցանկությամբ՝ ամեն ինչ անել, որպեսզի տասներորդ հնգամյակը նշանավորվի տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառների նորանոր հաջողություններով, դառնա որակի և արդյունավետության հնգամյակ։ Այս ասպարեզում մեծ անելիքներ ունեն նաև հանրապետության կուլտուր-լուսավորական հաստատությունները, աշխատավորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեների կուլտուրայի բաժինները։

Շատ կուսակցական կոմիտեներ և կուսկազմակերպություններ կիրառում

են կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ղեկավարման առավել արդյունավետ ձևեր: Կադրերի դաստիարակության նպատակով ձեռնարկվող միջոցներն են դրանք՝ գիտա-գործնական կոնֆերանսները, սեմինարները, առանձին կոլեկտիվների միջև ծավալված մրցությունը, տեղական մամուլում դրանց նվաճումների արտացոլումը:

Կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեության բարելավման նպատակով ձեռնարկվող միջոցառումների համար հիմք են ծառայում «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի գործում գրադարանների դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես նաև «Կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ղեկավարման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» ՀԿԿ Կենտկոմի որոշումները:

Ցավոք, հարկ է նշել, որ շատ քաղաքների ու գյուղերի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքը չի համապատասխանում օրվա պահանջներին, դրանք դեռևս չեն դարձել մարդկանց քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կազմակերպման կենտրոններ, կուլտուրական հանգստի ու ժամանցի օջախներ: Դրանց մեծ մասի գործունեությունը սահմանափակվում է միայն ռեկլամային բնույթի մասսայական առանձին միջոցառումների անցկացմամբ: Անհետաքրքիր են անցնում սակավ կազմակերպվող թեմատիկ միջոցառումները, դասախոսությունները, կինոդասախոսությունները, գրական երեկոները, բանավոր հանդեսները: Անբավարար է ժողովրդական համալսարանների ցանցի զարգացումը, հատկապես գյուղական վայրերում:

Հազվադեպ են կազմակերպվում աշխատանքային փառքի, տեխնիկայի ու գիտության օրերը, ստեղծագործական կոնֆերանսները, արտադրության և սոցիալիստական մրցության առաջավորների մեծարումները: Մասիսի, Եղեգնաձորի, Արագածի, Շամշադինի և մի քանի այլ շրջանների ակումբների մեծ մասում մոռացության է մատնված խմբակային աշխատանքը: Խմբակները «գործում են» միայն թղթի վրա: Հաշվետվություններում տվյալներն ուռճացնելու արատավոր պրակտիկան տեղ է գտել աշխատավորների դեպուտատների Կամոյի անվան, Սպիտակի, Վարդենիսի, Արարատի, Սիսիանի և շատ այլ շրջսովետների կուլտուրայի բաժինների գործունեության մեջ:

Սովետական ապրելակերպի բնորոշ գծերից են ժողովրդի հոգեկան կուլտուրայի զարգացումը, աշխատավորների լայն մասնակցությունը գեղարվեստական ինքնագործունեությանը: Ինքնագործ արվեստը նպաստում է մարդկանց հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը, օգնում տաղանդների բացահայտմանը, կուլտուրական կյանքին նրանց հաղորդակից դարձնելուն: Ցավոք, մեզ մոտ ամենուր չէ, որ պատշաճ ուշադրություն է նվիրվում այս խնդրին:

Գեղարվեստական ինքնագործունեության սիստեմում տիրապետողը երգի, պարի խմբակները, ժողգործիքների, էստրադային նվագախմբերն են, բայց շատ ակումբներ այս խմբակներն իսկ չունեն: Օրինակ, Վարդենիսի շրջանի 12, Արարատի՝ 9, Արտաշատի՝ 8, Ղուկասյանի՝ 7, Գուգարքի՝ 5 ակումբներ գեղարվեստական ինքնագործունեության ոչ մի խմբակ չունեն: Սակավ են կիրառական արվեստի խմբակները, գեղարվեստական ստուդիաները, գրական խմբակներն ու ստուդիաները: Հանրապետության 70 ակումբներ չունեն ոչ մի ինքնագործ կոլեկտիվ: Ինչպես ցույց տվին աշխատավորության գեղարվեստական ինքնագործ ստեղծագործության փառատոնի առաջին շրջանի արդյունքները, գյուղական բնակչության միայն 2,1 տոկոսն էր մասնակցում ինքնագործ արվեստին:

Ակումբները, կուլտուրայի տները պետք է ո՛չ միայն պրոպագանդեն արվեստը, այլև պայմաններ ստեղծեն դրան ակտիվ հաղորդակցվելու համար, կազմակերպեն գեղարվեստական ինքնագործունեության տարբեր ձևերի ուսուցումը: Արվեստասիրության արդյունավետ դաստիարակությունը հնարավոր է պրակտիկ գործունեության ընթացքում, որն ակտիվ ներազդում է ստեղծագործական հնարավորությունների զարգացման վրա: Սովետական ականավոր կոմ-



պոզիտոր և երաժշտագետ Բ. Ասաֆևն ասել է. «Նա, ով արվեստի որևէ ոլորտում դույզն իսկ զգացել է ստեղծագործության երջանկությունը, կկարողանա ըմբռնել և գնահատել այն ողջ լավը, որ կատարվում է այդ ոլորտում և շատ ավելի մեծ ինտենսիվությամբ, քան սոսկ պասսիվ ընկալողը»:

Ինքնագործ խմբերում ձեռք բերած հմտությունները նպաստում են մարդու կատարողական արվեստի զարգացմանը, դառնում գեղարվեստական արժույթների ստեղծմանը մասնակցելու հաստատուն նախադրյալներ: Ինչո՞ւ թաքցնել. աշխատավորների գեղարվեստական ինքնագործունեության պատշաճ զարգացման համար մեզ մոտ չկան այդ խմբակների՝ բավարար թվով որակյալ ղեկավար կադրեր. փոքր է և մասնագիտական կրթությամբ ակումբային աշխատողների թիվը: Կուլտուրայի մինիստրության սիստեմի 1.748 ակումբային աշխատողներից միայն 172-ն ունեն բարձրագույն կրթություն, որոնցից կուլտուր-լուսավորական աշխատանքի պրոֆիլով՝ 11 մարդ: Միջնակարգ կրթություն ունեն 197-ը:

Բնավ չնսեմացնելով այն մեծաթիվ ակումբային աշխատողների կատարածը, որոնք չունենալով մասնագիտական կրթություն, իրենց խանդավառությունը, ակումբային աշխատանքը լավ կազմակերպելու ողջ ձգտումն են ներդրել սույն գործում, հարկ է նշել, որ այդ կադրերի ընտրության ու դաստիարակության մարզում կան լուրջ թերություններ: Հաճախ այդ գործը հանձնարարվում է ակումբավարությանը չտիրապետող, այն չսիրող մարդկանց: Դրա օրինակ կարող են ծառայել Երքաղսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի ակումբային հաստատությունները: Դրանցից շատերը և՛ պայմաններով, և՛ իրենց աշխատանքով չեն համապատասխանում կուլտուր-լուսավորական հաստատություններին ներկայացվող արդի պահանջներին: Անբավարար է հատկապես № № 1, 6 և 8 կուլտուրայի տների գործունեությունը: Այստեղ չկան գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ, միջոցառումները միօրինակ են, անհետաքրքրական: Մի քանի կուլտուրայի տներում սահմանափակվում են սոսկ կինոցուցադրմամբ— օրական նույնիսկ երեք սեանս: Երքաղսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի ակումբային աշխատողների միայն 25,8 տոկոսն ունի բարձրագույն կրթություն: Ինչո՞վ բացատրել նման իրավիճակը. նրանո՞վ, արդյոք, որ այդ ակումբները և կուլտուրայի տները գտնվում են քաղաքում, և օպերայի, թատրոնների, համերգասրահների առկայության պայմաններում օրինակելի ակումբային գործի անհրաժեշտություն չի զգացվում, թե՞ ակումբավարների, կուլտուրայի բաժնի աշխատողների անպատասխանատվությամբ: Անշուշտ, երկրորդն առավել հավանական է:

Չի կարելի գոհացուցիչ համարել նաև կուլտուրայի ու հանգստի զբոսայգիների, թանգարանների գործունեությունը: Երևան քաղաքի մի քանի զբոսայգիներ, Շամշադինի, Գորիսի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի զբոսայգիները դեռևս չեն դարձել աշխատավորության հանգստի ու ժամանցի հարմարավետ վայրեր:

Հնգամյակից հնգամյակ բարձրանում է մեր ժողովրդի բարեկեցությունը: Մեծ փոփոխություններ են տեղի ունենում և գյուղական վայրերում: Աչք են շոյում գյուղացիների բարեկարգ տները: Սակայն այդ նույն գյուղերում դժվար է կուլտուրայի ու հանգստի լավ զբոսայգիներ գտնել: Գյուղական ղեկավարների շրջանում դեռևս շատ քիչ են գյուղի աշխատավորների կուլտուրական հանգստի համար, ինչպես հարկն է, անհանգստացողները:

Թերևս նրանցից ոմանք կուլտուրայի բարիքները համարում են նյութական բավարարվածության հավելվա՞ծ: Տնտեսության վերելքի հետ, անշուշտ, անմիջական կապ չունի կուլտուր-լուսավորական հիմնարկը, բառիս բուն իմաստով այն շահույթ չի տալիս: Բայց նրա աշխատանքը շահեկան է այն առումով, որ բարերար ազդեցություն է գործում գյուղական ապրելակերպի վրա:

Չի կարելի մոռանալ կուլտուր-լուսավորական հաստատությունների նաև այն կարևոր դերի մասին, որպիսին հանգստի ու զվարճության պահանջի բավարարումն է— մարդկանց հոգեկան աշխարհի կազմավորման ձևերից մեկը: Ակումբներում անցկացրած ժամանակը, այն էլ հետաքրքրական միջոցառման դեպքում, հոգեկան լիցք է, որը նպաստում է ֆիզիկական ու հոգեկան ուժերի

վերականգնմանը։ Հարկ է հաշվի առնել և այն հանգամանքը, թե որքա՞ն տարբեր է կուլտուր-լուսավորական հիմնարկությունում մարդու անցկացրած ժամանակը անկազմակերպ ժամանցից։

Շատ բազմազան է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեությունը։ Այժմ, երբ ողջ հանրապետությունում, աշխատանքային բոլոր կոլեկտիվներում ծավալվել է մասսայական աշխատանքային մրցությունը՝ հանուն տասներորդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքների կատարման, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների վիթխարի ցանցը կարող է և պետք է ներդնի իր լուման։ Նրանք պետք է լիովին, բոլոր միջոցներով, համակողմանի օգնեն կուսկազմակերպություններին՝ լայնորեն ծավալելու կազմակերպական ու քաղաքական աշխատանքը՝ ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների որոշումները, նյութերը աշխատավորության լայն զանգվածների շրջանում մասսայականացնելու նպատակով։ Ակումբային ու գրադարանային աշխատանքի տարբեր ձևերով ու միջոցներով հարկ է համոզիչ կերպով ցույց տալ կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, խորապես բացահայտել սովետական ժողովրդի հեղափոխական և աշխատանքային ավանդույթները, սոցիալիստական մեր մեծ հայրենիքի ժողովուրդների լենինյան բարեկամությունը, ցույց տալ, որ միայն նրանց եղբայրական համագործակցությամբ ու միասնական ջանքերով հնարավոր եղավ ապահովել հասարակական առաջընթացի հիմքերի հիմքի՝ սոցիալիստական էկոնոմիկայի շեշտակի վերելքը։ Մեր կուլտուր-լուսավորական հաստատությունները շատ միջոցներ ունեն մարդուն քաղաքացիության ոգով դաստիարակելու համար։ Չէ՞ որ մեր ամեն մի հնգամյակ քաղաքացիության իրական դպրոց է։ Դրանք առաջացնում են միլիոնավոր մարդկանց նախաձեռնության աննախընթաց վերելք։

Ակումբները պետք է բանիմաց արձագանքեն մեր երկրի կյանքում տեղի ունեցող կարևոր իրադարձություններին։ Քաղաքացիության դաստիարակման գործում հարկ է օգտագործել, օրինակ, այնպիսի մի իրադարձություն, ինչպիսին է անձնագրի հանձնումը Սովետական Միության քաղաքացուն։ Բացահայտելով սովետների երկրի քաղաքացու վեհ կոչումը՝ հարկ է օրինակներով պատմել ու ցույց տալ այն մեծ պատասխանատվությունը, որ դնում է նրա վրա այդ կոչումը։

Ակումբները, գրադարանները, թանգարանները պետք է օգտագործեն գաղափարական ներգործության բոլոր ձևերը աշխատավորներին գիտական-մատերիալիստական աշխարհայացքով, կոմունիստական խոր գիտակցականության ոգով դաստիարակելու համար։

Օգնելով կուսկազմակերպություններին սոցիալիստական մրցության ծավալման գործում, կուլտուր-լուսավորական աշխատողների բազմամարդ բանակը պետք է համակողմանի լուսաբանի սոցիալիստական մրցության ընթացքը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, հրապուրիչ ու հետաքրքրական ձևով պատմի աշխատանքի հերոսների, արտադրության առաջավորների ու նորարարների մասին, խորությամբ թափանցի նոր նախաձեռնությունների էության մեջ, պաշտպանի ու տարածի գործնականում ստուգվածները. պարբերաբար կազմակերպելով մրցողների հավաքները՝ աշխատանքի մարդուն հարկ է իրազեկ դարձնել մրցության ընթացքին, դրա արդյունքներին, այն միջոցներին, որոնց գործադրմամբ ձեռք են բերվել ցուցանիշներ։

Սովետական մարդկանց հերոսական աշխատանքը պետք է դառնա գաղափարապես հագեցած հետաքրքրական միջոցառումների, թանգարանների, ցուցահանդեսների ցուցադրական ագիտացիայի կարևոր թեման։ Այդ առումով կուլտուրայի մինիստրությունը, տեղական սովետների կուլտուրայի բաժինները, բոլոր կուսկազմակերպությունները պետք է լրջորեն հոգան թանգարանների գործունեության բարելավման համար։

Հարկ է այնպես անել, որ թանգարանների աշխատողները չզբաղվեն միայն հնագարյան առարկաներ հավաքելով, այլ մեծ ուշադրություն նվիրեն մեր ժամանակի պատմության, մարդկության պայծառ ապագայի՝ կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում մեր ժողովուրդների փառավոր գործերի ու սխրանքների պատմության ստեղծմանը։

Այս ամենում կարևոր է բարձր կուլտուրայի տեր մարդու դաստիարակությունը, ասպարեզ, ուր չափազանց մեծ են կուլտուր-լուսավորական հիմնարկությունների անելիքները։ Բարձրացնել աշխատավորների կուլտուրական մակարդակը՝ նշանակում է մշտապես խորացնել նրանց գիտելիքները մարքս-լենինյան տեսության ոլորտում, խթանել կոմունիստաբար ապրելու և աշխատելու ձգտումը, պայքարել հանուն կոմունիզմի գաղափարների իրականացման, նրանց ավելի լայնորեն հաղորդակից դարձնել գիտության, գրականության ու արվեստի նորություններին։

Այս մարզում հաջողության հասնելուն մեծապես կնպաստի կուլտուր-լուսավորական հիմնարկությունների և հանրապետական «Գիտելիք» ընկերության կազմակերպությունների, գրողների, կոմպոզիտորների միությունների, թատերական ընկերության սերտ կապը։

Տնտեսական և կուլտուրական շինարարության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում մեծ են կոմունիստների, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների անելիքները։ Նրանք պետք է մշտապես ապահովեն դրանց պատշաճ ղեկավարությունը, հոգան կուլտուր-լուսավորական հիմնարկությունների նյութական բազայով ապահովման համար, առավել բարձրացնեն դրանց դերը մեր մարդու հոգեկան աշխարհի ձևավորման գործում։

Կուլտուր-լուսավորական աշխատանքների հաջող կազմակերպումը ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման կարևոր ազդակներից մեկն է։

# ՏՆՏԵՍԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Ա. Գ. ԱՂԱԲԱԲՈՎ
Հայկական ՍՍՀ պետպլանի գիտության և տեխնիկայի բաժնի պետ, ՀՍՍՀ ԳԱ տնտեսական գիտությունների կոորդինացիոն խորհրդի նախագահի տեղակալ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի՝ «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության մեջ դրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» որոշմանը (1973 թ., նոյեմբեր) հետևեց գիտահետազոտական աշխատանքների ծավալի նշանակալի աճը մեր հանրապետության տնտեսագիտության մարզում, տնտեսագետ-գիտնականների ջանքերն ի սպաս դրվեցին ժողտնտեսության զարգացման հրատապ խնդիրների լուծմանը։

Տնտեսագիտական պրոբլեմներով հանրապետությունում զբաղվում են գիտահետազոտական հինգ ինստիտուտ, ինքնուրույն լաբորատորիաներ, ֆիլիալներ և բարձրագույն ուսումնական հաստատությունների տասն ամբիոններ։ Տնտեսագիտության ոլորտում ներգրավված են մոտ 600 գիտաշխատողներ, որոնց թվում՝ տնտեսագիտության 20 դոկտոր և 270 թեկնածու։

Վերջին տարիներս ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում հետազոտվել ու մշակվել են մի շարք հրատապ թեմաներ։ Այդ հետազոտություններով սահմանվել են աշխատուժի բաշխման ճյուղային կառուցվածքը, միաժամանակ արվել են աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման մի քանի առաջարկություններ։ Նշվել են հանրապետության ու նրա շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակների մերձեցման ուղիները։ Մշակվել են հողի գնահատման հիմնական սկզբունքներն ու մեթոդիկան, որոնք գիտական հիմք կծառայեն գյուղատնտեսական արտադրության պլանավորման կատարելագործման համար։

ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտում մշակվել են միջճյուղային դինամիկ հաշվեկշռի կազմման ու դինամիկ մոդելի պլանային պարամետրերի ձևավորման մեթոդոլոգիական ու մեթոդական հարցերը՝ հաշվի առնելով միութենական հանրապետության էկոնոմիկայի առանձնահատկությունները։ Կատարված են 1976—1990 թթ. Հայկական ՍՍՀ միջճյուղային արժեքային հաշվեկշռի դինամիկ մոդելի հաշվարկները. դրա արդյունքներն օգտագործված են երկարաժամկետ հեռանկարի համար հանրապետության էկոնոմիկայի զարգացման տեմպերն ու համամասնությունները վերլուծելիս և սահմանելիս։ Ինստիտուտում նշանակալի աշխատանք է տարվել մինչև 1990 թ. Հայկական ՍՍՀ-ում արտադրամիջոցների զարգացման ու տեղաբաշխման կոմպլեքսային կանխատեսման ասպարեզում։ Մասնավորապես հետազոտություններ են տարվել հողային ու ջրային ռեսուրսների, հանքային և ոչ-հանքային օգտակար հանածոների պաշարների երկարաժամկետ կանխատեսման նպատակով, միաժամանակ կազմվել է շրջանների աշխատանքային ռեսուրսների նախնական հաշվեկշիռը՝ 1990 թ. համար, ինչպես և արտադրամիջոցների տեղաբաշխման օպտիմալ սխեման։

Հայկական ՍՍՀ պետպլանի հաշվողական կենտրոնում (ՀԿ) հիմնականում լուծվել են հանրապետության ժողտնտեսության կառավարման ավտոմատացված սիստեմը և Հայկական ՍՍՀ պետպլանի համար պլանային հաշվարկների ավտոմատացված սիստեմի ստեղծման գիտական պրոբլեմները։ Վերջին տարիներին որոշ հաջողություններ են ձեռք բերվել հիշյալ պրոբլեմների մաթեմատիկական ապահովում ստեղծելու գործում, մասնավորապես կատարվել են հետազոտություններ՝ կազմելու համար օպտիմալացման և երկարաժամկետ կանխատեսման խնդիրների լուծման կոմպլեքսային ծրագրեր։ Տեխնիկական առաջադրանք է մշակված հանրապետության պլանային հաշվարկների ավտոմատացված սիստեմի, ինչպես նաև Կենսամակարդակ, Բնակարան, Կոմունալ տնտեսություն ենթասիստեմների, Գյուղատնտեսություն հանրապետական սիստեմի, Կապիտալ ներդրումներ բլոկի նախագծման համար։ ՀՍՍՀ պետպլանի հաշվողական կենտրոնն այստեղ հանդիսանում է երկրի հանրապետական ենթասիստեմների գլխավոր մշակողը։

ՍՍՀՄ պետպլանի պլանավորման ու նորմատիվների գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը հիմնականում ուսումնասիրել է ժողովրդական տնտեսական պլանավորման և պլանային հաշվարկների ավտոմատացված սիստեմի ստեղծման մեթոդական պրոբլեմները, ժողտնտեսության մեջ նորմավորման և նորմատիվային ինֆորմացիայի ստեղծման գիտական հիմունքները, արտադրության կառավարման հարցերը։ Վերջին տարիներին մշակվել և պլանային մարմիններում օգտագործման են երաշխավորվել ժողովրդատնտեսական պլանավորման ցուցանիշների կատալոգի ձևավորման, միութենական հանրապետություններում արդյունաբերական արտադրանքի որակի կառավարման կատարելագործման, տնտեսական-մաթեմատիկական մեթոդներով գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական արդյունավետության սահմանման առաջադրանքները և այլ աշխատանքներ։ Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտում, տեխնիկատնտեսական հիմնավորմամբ, հետազոտություններ են տարվել միջտնտեսային ձեռնարկությունների օպտիմալ կառուցվածքի որոշման նպատակով և այլն։

Կատարված դրական աշխատանքին զուգընթաց, տնտեսագիտական պրոֆիլի գիտական հաստատությունների և բուհերի համապատասխան, ամբիոնների գործունեության ոլորտում, ինչպես և հանրապետության տնտեսագիտության զարգացման գործում տեղ են գտել և մի շարք լուրջ թերություններ։ Տնտեսագիտական պրոֆիլի գիտահետազոտական հաստատությունների ու կազմակերպությունների թեմատիկ պլանները երբեմն լիովին չեն ընդգրկում հանրապետության ժողտնտեսության զարգացման հետ առնչվող կարևորագույն տնտեսական պրոբլեմների լուծման խնդիրները։ Այս առումով չափազանց վատ է վիճակը հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատություններում, որտեղ գիտահետազոտական աշխատանքների թեմատիկ պլանները հույժ բազմաթեմային են և, իբրև կանոն, հիմնականում դրանց նպատակը դիսերտացիաների պաշտպանությունն է։ Հարկ է նշել այն փաստը, որ, ցավոք, բուհերի ամբիոններում և ամբիոնների միջև չկան տնտեսագիտական կարևորագույն պրոբլեմների փոխհամաձայնեցված կոմպլեքսային մշակումներ, մի բան, որը կնպաստեր հանրապետությունում արտադրության պլանավորման ու կառավարման կատարելագործմանը։

Որոշ դեպքերում գիտական հաստատությունների թեմատիկ պլաններում ներառվում են երկրորդական, ոչ հրատապ թեմաներ։

Գիտական հաստատությունների գործունեության մեջ, աշխատանքների ոչ ճիշտ մասնագիտացման ու կոորդինացման պատճառով, առանձին մշակում-

Ինչպես արդեն նշել ենք, Հայկական ՍՍՀ պետպլանի հաշվողական կենտրոնը հիմնականում կզբաղվի պլանային հաշվարկների ավտոմատացված սիստեմի և Հայաստան-հանրապետական կառավարման ավտոմատացված սիստեմի ստեղծման խնդրով։ Տնտեսական ու մեթոդական հարցերի մշակմանը զուգընթաց, ֆիլիալն արդեն ձեռնամուխ է եղել և հետագայում ամեն տարի կավելացնի ՀՍՍՀ պետպլանի համար լուծվող խնդիրների թիվը՝ օգտագործելով էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդները և հաշվողական տեխնիկան։

Որպեսզի հանրապետության տնտեսագետ-գիտնականները հաջողությամբ լուծեն վերոհիշյալ հիմնական գիտական պրոբլեմները, անհրաժեշտ է զգալիորեն բարելավել հետազոտությունների որակը, ինչպես և համակենտրոնացնել ուժերը։

Ինչպես հայտնի է, հանրապետությունում կազմակերպվել է ժողովրդական տնտեսության նոր ինստիտուտ, որը, ժողտնտեսության պլանավորմամբ ու կառավարմամբ զբաղվող բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստման հետ մեկտեղ, գիտահետազոտական աշխատանք պետք է կատարի համապատասխան ամբիոններում։

Մեր կարծիքով, ժողովրդական տնտեսության ինստիտուտի տնտեսագետ-գիտնականների աշխատանքի արդյունավետությունն առաջին հերթին կպայմանավորվի նրանով, թե նրանք ինչպե՞ս կկենտրոնացնեն իրենց ջանքերը ժողովրդատնտեսական կարևորագույն պրոբլեմները լուծելիս։

Դժբախտաբար, ինստիտուտի գիտահետազոտական աշխատանքների պլանները դեռևս բազմաթեմային են, կարևորագույն տնտեսական պրոբլեմների լուծման ժամանակ զերծ համաինստիտուտային պրոբլեմներից ու նպատակայնությունից։ Գիտահետազոտական աշխատանքների կազմակերպման գործում տեղ գտած թերությունների վերացման, ինչպես և ինստիտուտում կատարվող գիտահետազոտական աշխատանքների ծավալի մեծացման համար նպատակահարմար է վերանայել ու լուծել ժողովրդական տնտեսության ինստիտուտում պայմանագրային հիմունքներով աշխատող ճյուղային գիտական լաբորատորիայի ստեղծման հարցը։

ՍՄԿԿ XXV համագումարում, հաշվետու զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Անհրաժեշտ է առաջին հերթին ապահովել պլանավորման լուրջ կատարելագործումը։ ...Այդ խնդիրները լուծելու համար շատ բան պետք է անեն պլանային ու տնտեսական մարմինները։ Այստեղ լայն ասպարեզ կա տնտեսական գիտության գործադրման, ժամանակակից գիտական մեթոդների, այդ թվում տնտեսական-մաթեմատիկական մեթոդների արմատավորման, կառավարման ավտոմատացված սիստեմների օգտագործման համար»։

Հանրապետության բուհերի և տնտեսագիտական հաստատությունների կոլեկտիվները, անշուշտ, առաջիկայում ևս իրենց ջանքերը կգործադրեն՝ ուսումնասիրելու մեր ժողտնտեսության զարգացման կոմպլեքսային կարևորագույն պրոբլեմները, ինչպես և կընդլայնեն ստեղծագործական կապերը գիտական մյուս հաստատությունների ու պլանային տնտեսական կազմակերպությունների հետ։

Այսպիսով, Հայաստանի տնտեսագետ-գիտնականների առջև ևս ծառացած են նոր, ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող հրատապ գիտական պրոբլեմներ, որոնք հաջողությամբ կլուծվեն հետազոտությունների արդի մեթոդների օգտագործմամբ, աշխատանքների կոորդինացմամբ և ուժերի համակենտրոնացմամբ։

# ՆՅՈՒԹԱՏԱՐՈՒԹՅԱՆ ԻՋԵՑՈՒՄԸ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ Է

Ռ. Ի. ԱՂԱՋԱԴՅԱՆ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻՆ բնորոշ է ժողովրդական տնտեսության զարգացման ինտենսիվ ուղին։ Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման ինչպես իններորդ, այնպես էլ տասներորդ հնգամյա պլանների կատարման հիմքում դրված են էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների դերի ուժեղացումը։ ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Ա. Ն. Կոսիգինն իր զեկուցման մեջ նշեց. «Ժողովրդատնտեսական պլաններում հիմնական շեշտը կդրվի արտադրության ինտենսիվացումը խորացնելու վրա՝ գիտատեխնիկական առաջընթացի և խնայողության համակողմանի ռեժիմի հիման վրա։ Տնտեսական աճի ինտենսիվ գործոնների դերի ուժեղացմանը կուսակցության կենտրոնական կոմիտեն և կառավարությունը մեծ ուշադրություն էին նվիրում նախորդ տարիներին. դա առաջնահերթ նշանակություն է ստանում տասներորդ հնգամյակում»։

Այժմ, ավելի քան երբեք, դժվար է գերագնահատել հումքի, նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործման ժողովրդատնտեսական վիթխարի նշանակությունը։ «Էներգիայի և հումքի բնագավառում երկրի պահանջմունքներն անընդհատ աճում են,— նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում,— իսկ դրանց արտադրությունն ավելի ու ավելի թանկ է նստում։ Հետևաբար, կապիտալ ներդրումները չափից ավելի չմեծացնելու համար հարկավոր է հասնել ռեսուրսների և՛ ավելի ռացիոնալ օգտագործման, այդ թվում՝ արտադրանքի նյութատարությունը կրճատելու, և՛ ավելի էժան և արդյունավետ նյութեր կիրառելու, ինչպես նաև դրանք խնայողաբար ծախսելու հաշվին»։

Որքան էլ մեծանա մեր հասարակության հարստությունը, խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը։

Ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակը անվանում ենք արդյունավետության և որակի հնգամյակ։ Ըստ որում, որակի պրոբլեմը, ինչպես այդ մասին նշվեց նաև ՍՄԿԿ XXV համագումարում, հասկացվում է լայն իմաստով։ Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը՝ այդ թվում աշխատանքային և նյութական ռեսուրսների խնայողությունը, հետևաբար, նաև արտադրության նյութատարության իջեցումը։

Նյութատարության ցուցանիշն իր ուրույն տեղն ունի արտադրության արդյունավետության գնահատման ցուցանիշների համակարգում. դրա վրա դրական կամ բացասական ազդեցություն են ունենում մի շարք այլ գործոններ։ Ընդ որում, դրանք կարող են լինել ո՛չ միայն տնտեսական բնույթի, ինչպիսիք են՝ ինքնարժեքը, գինը, աշխատանքի արտադրողականությունը, աշխատատարությունը, շահավետությունը, այլև՝ տեխնիկական բնույթի։ Քանի որ արտա-

դրանքի նյութատարության իջեցումից ստացված ժողովրդատնտեսական արդյունքը հաշվարկելիս անպայման պետք է հաշվի առնել նրա հետևանքով առաջացած տեխնիկական պարամետրերի փոփոխությունը, ապա կարելի է ասել, որ նյութատարության ցուցանիշն արտացոլում է նաև արժեքի և սպառարժեքի փոխհարաբերությունը:

Քննարկվելիք ցուցանիշի այս առանձնահատկություններն են, որ գիտատեխնիկական հեղաշրջման ներկա փուլում նրան մղում են առաջին պլան: Երկրում թողարկվող համախառն արտադրանքի նյութատարության միայն մեկ տոկոսով իջեցումը հավասարազոր է ազգային եկամտի մի քանի միլիարդ ռուբլի լրացուցիչ աճին:

Դեռևս կուսակցության XXIV համագումարում ընկ. Բրեժնևն այն միտքն արտահայտեց, որ արդյունահանող ճյուղերում միավոր արտադրանքի վրա ավելի շատ կենդանի աշխատանք և կապիտալ ներդրումներ են ծախսվում, քան վերամշակող ճյուղերում: Հետևաբար, ժողովրդական տնտեսության շահերի տեսակետից, առավել ձեռնտու է հումքի խնայողությունն ապահովելու վերամշակող արդյունաբերության արտադրության կատարելագործման հաշվին, քան թե այդ նույն քանակի հումքը լրացուցիչ արտադրել: Այդ պատճառով էլ իններորդ հնգամյա պլանում լուրջ խնդիրներ դրվեցին հատկապես վերամշակող արդյունաբերության ճյուղերի առջև: Ընդլայնվեց մետալուրգիական ձեռնարկությունների կողմից մեքենաշինարարներին մատակարարվող գլանվածքի պրոֆիլների ու չափերի տեսականին՝ տեխնիկական և վերամշակման չափերի նվազագույն շեղումով: Դրանով իսկ հնարավոր դարձավ մեքենաշինության մեջ վիթխարի քանակությամբ կենդանի և առարկայացած աշխատանք տնտեսել:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղություններով նույնպես նախատեսվում է բարձրացնել նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, ըստ ամենայնի նվազեցնել արտադրանքի նյութատարությունը՝ նոր, առաջադիմական կոնստրուկտորական լուծումների առավել լայն կիրառման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, հումքի և նյութերի խնայողական տեսակների թողարկումն ավելացնելու և դրանց տեսակարար ծախսումները նվազեցնելու, դրանց ավելի խոր ու կոմպլեքսային մշակման, երկրորդային ռեսուրսների օգտագործումն ընդլայնելու միջոցով: Նախատեսվում է կատարելագործել հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի ծախսման նորմավորման համակարգը, ուժեղացնել վերահսկողությունը նյութական ռեսուրսների օգտագործման նկատմամբ, պայքարել շռայլության և անտնտեսվարության դրսևորումների դեմ: Արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման բնագավառում նախատեսվում է զարգացնել առաջադիմական սակավօպերացիոն տեխնոլոգիան, որը հնարավորություն կընձեռի տնտեսել առավելագույն քանակի հումք, նյութեր, վառելիք և էներգիա:

Մեքենաշինության բոլոր ճյուղերում խնդիր է դրվում բարձրացնել մետաղների օգտագործման արդյունավետությունը՝ նոր տեսակի մեքենաներ, մեխանիզմներ ու սարքավորումներ նախագծելիս առաջադիմական լուծումներ կիրառելու, սև մետաղների գլանվածքի առավել խնայողաբեր պրոֆիլների գլանվածք և կոնստրուկցիոն այլ նյութեր օգտագործելու, մետաղների մշակման մեթոդները կատարելագործելու միջոցով:

Կուսակցության առաջադրած վերոհիշյալ խնդիրների լուծման ասպարեզում մեծ անելիքներ կան նաև մեր հանրապետությունում:

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հանրապետության մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ անցյալ հնգամյակում անբավարար են կատարել գլանվածքի, պողպատե խողովակների, պղնձի և ալյումինի գլանվածքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի ծախսերի իջեցման առաջադրանքները: Ավելին, էլեկտրատեխնիկական արդյունաբերության որոշ ձեռնարկություններ չունեին նյութական ռեսուրսների տնտեսման դիֆերենցված նորմաներ՝ ըստ հնգամյակի տարիների: Դրանցից են Լենինականի սառնարանային կոմպրեսորների, միկրոէլեկտրաշարժիչների, Մարալիկի մագնիսային ուժեղացուցիչների գործարանները և այլն: Դրանք իրենց գլխադաս ձեռնարկություններից ստանում



են միայն սև մետաղների գլանվածքի տնտեսման առաջադրանքներ, որոնք հաճախ չեն համապատասխանում ձեռնարկությունների նյութական ռեսուրսների տնտեսման իրական հնարավորություններին: Այսպես, Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանը 1971 թ. պլանավորել էր սև մետաղների գլանվածքը տնտեսել 2 տոկոսով, նորմաներում նախատեսված էր 3,8, իսկ փաստացիորեն տնտեսվեց 8,8 տոկոս: 1975 թ. պլանավորված 2,5 տոկոսի դիմաց տնտեսվեց 7,4 տոկոս: Համանման վիճակ է նաև մի շարք այլ ձեռնարկություններում:

Վերադաս տնտեսական մարմինները միշտ չէ, որ հետևողական են նյութական ռեսուրսների խնայողության իրենց իսկ իջեցրած առաջադրանքների կատարման նկատմամբ: Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանը 1971 թ. առաջադրանք էր ստացել սև մետաղների գլանվածքը տրնտեսել 2,5 տոկոսով, մինչդեռ նորմաների մեջ իրացրել է ընդամենը 0,14, իսկ փաստացի կատարողական ընդհանրապես չի ունեցել: Դրությունը գրեթե չի փոխվել նաև հնգամյակի հաջորդ տարիներին:

Նյութական ռեսուրսների խնայողության առաջադրանքների կատարման նկատմամբ հետևողական աշխատանքի բացակայության պատճառով նյութերի արդյունավետ օգտագործման նպատակով մշակվող կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանը հաճախ ձևական բնույթ է կրում: Ավելին, կան ձեռնարկություններ, որտեղ ընդհանրապես բացակայում են կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանները:

Արտադրության նյութատարության իջեցման ասպարեզում մեր ձեռնարկությունները դեռևս շատ անելիքներ ունեն: Ամենից առաջ անհրաժեշտ է կատարելագործել նոր կոնստրուկցիաները, թեթևացնել արտադրանքի քաշը, կիրառել բարձրորակ նյութեր ու արտադրության առավել խնայողական տեխնոլոգիա:

Արտադրանքի նյութատարության իջեցման գործում հանրահայտ են, այսպես կոչված, առաջադիմական մետաղանյութերի օգտագործման առավելությունները: Ուկրաինայի համապատասխան գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով, նոր ձևավոր կտրվածքների պրոֆիլների նախագծերի օգտագործումից միջինը, մեկ տոննայի հաշվով, տնտեսվում է 40 ռուբլի: Հետևաբար, արտադրությունն անհրաժեշտ քանակությամբ համապատասխան չափերի առաջադեմ մետաղանյութերով ապահովելը ևս արտադրանքի նյութատարության իջեցման կարևոր ուղիներից է: Սակայն գաղտնիք չէ, որ մեզ մոտ նյութատեխնիկական մատակարարման հարցերում, մեղմ ասած, դեռևս ամեն ինչ չէ, որ բարվոք է: Մի կողմ թողնելով այն դեպքերը, երբ նյութատեխնիկական մատակարարումը կատարվում է մեծ խափանումներով, ձգձգումներով և այլն, հարկ է նշել, որ առաքվող նյութերի տիպաչափերի խախտումները հանգեցնում են նյութական ռեսուրսների հսկայական գերածախսերի: Այսպես, Մարալիկի մագնիսային ուժեղացուցիչների գործարանը, իջեցված ֆոնդերի համապատասխան, պետք է ստանար սահմանված չափսի թերթավոր պողպատ, սակայն դրա փոխարեն Ժդանովի մետալուրգիական կոմբինատը առաքել է այլ չափսի թերթապողպատ: Այդ իսկ պատճառով գործարանում 1974 թ. ավելի քան 400 տոննա թերթապողպատի արհեստական գերածախս է գոյացել: Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանում ամբողջ 1972 թ. սև մետաղների գլանվածքի գերածախս է եղել 54, իսկ 1973-ի միայն 4 ամսում՝ ավելի քան 58,5 տոննա: Դա հետևանք է այն բանի, որ 7 միլիմետրանոց տաք գլոցված խողովակների փոխարեն ստացվել են 10 միլիմետրանոց խողովակներ: Նման դեպքերը քիչ չեն նաև հանրապետության այլ ձեռնարկություններում:

Նյութերի գերածախսի պատճառ են նաև դետալների պատրաստման տեխնոլոգիայի խախտման դեպքերը: Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում գեներատորների հերձատների դրոշմման պրոցեսում դրոշմաքայլը կազմում է 6—10 միլիմետր, տեխնոլոգիայով նախատեսված 2-ի փոխարեն. դրա հետևանքով ստացվել է թանկարժեք էլեկտրատեխնիկական պողպատի գերածախս: Առանձին տիպի գեներատորների ռոտորային թերթերը դրոշմվում են ամբողջական թերթապողպատից, մինչդեռ, ըստ տեխ-

նոլոգիայի, դրանք պետք է պատրաստել ստատորների դրոշմումից առաջացած մնացուկներից: Կամ մի այլ օրինակ: Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանում էլեկտրատեխնիկական պողպատի կտրման ժամանակ պողպատաշերտի լայնությունը, գոյություն ունեցող տեխնոլոգիական չափերի համեմատությամբ, մեծացվում է 5—8 տոկոսով: Սրանք տեխնոլոգիայի խախտումներ են, որոնք, ի վերջո, ժողովրդական տնտեսության մասշտաբով վեր են ածվում միլիոնավոր ռուբլիների վնասի: Արտադրանքի նյութատարության իջեցման մարզում չափազանց կարևոր է ձեռնարկության կոլեկտիվի շահագրգռության բարձրացումը: Դա, ինչ խոսք, սերտորեն առնչվում է պլանավորման և հաշվառման համակարգի կատարելագործման հետ: Դեռևս քիչ չեն դեպքերը, երբ այս կամ այն գործարանի կոլեկտիվի լավ նախաձեռնությունը, խրախուսանքի արժանի աշխատանքը գործող պլանավորման ու հաշվառման ոչ կատարյալ ցուցանիշների բացասական ազդեցության հետևանքով, իբրև բումերանգ, շրջվում են ի վնաս այդ կոլեկտիվի: Այսպես, Լենինգրադի տուրբինային թիակների գործարանում որոշ դետալների համար մշակել են նոր, թեթևացված կոնստրուկցիա: Դրանով մետաղի ծախսի նորման պակասել է 5 կգ-ով, իսկ արտադրանքի գինը էժանացել է՝ 89 կոպեկով: Ձեռնարկությունը տարեկան կտնտեսի 600 տոննա մետաղ: Սակայն արտադրանքի թողարկման ժամանակ պարզվել է, որ իրացված արտադրանքի ծավալը պակասել է 89.000 ռուբլով, իսկ կոփածոների թողարկումը՝ 300 տոննայով: Օգտակար նախաձեռնությունը գործարանի համար դարձել է վնասաբեր: Պարզվեց, որ մետաղի տնտեսումը, գործող պլանային ցուցանիշների առկայությամբ, գործարանի համար անօգտավետ է: Տեխնիկական առաջընթացի շահերը հրամայաբար պահանջում են, որպեսզի սոցիալիստական հաշվառման ու պլանավորման ցուցանիշների համակարգը սիստեմատիկորեն կատարելագործվի:

Արտադրության նյութատարության իջեցման գործում սոցիալիստական արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվների շահագրգռության բարձրացման կարևորագույն լծակներից է նաև մեծածախ գների կատարելագործումը: Նոր, ավելի պակաս նյութատար արտադրանքի գները պետք է շահագրգռեն թե՛ ձեռնարկություններին, թե՛ գիտահետազոտական ու նախագծային-կոնստրուկտորական ինստիտուտներին: Բացի այդ, գները պետք է պատնեշեն հնացած, տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հայրենական և արտասահմանյան ֆիրմաների համանման արտադրատեսակներին զիջող արտադրանքի թողարկումը: Մյուս կողմից, գները պետք է խթանեն սպառող ձեռնարկությունների շահերը՝ նոր, նյութատարության տեսակետից առավել պրոգրեսիվ արտադրանքը շուտափույթ օգտագործելու համար: Ուստի, այդ արտադրատեսակների մեծածախ գներն այնպիսի մակարդակ պետք է ունենան, որ ապահովեն մի կողմից՝ արտադրող և նախագծող ձեռնարկությունների ու կազմակերպությունների նյութական խրախուսումը, մյուս կողմից՝ սպառող ձեռնարկությունների համար այդ գների հարաբերական էժանացումը՝ նախկին, համանման արտադրատեսակների գների համեմատությամբ:

Մեր երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման և ամրապնդման շահերը պահանջում են մոբիլիզացնել բոլոր ռեզերվները և հետևողականորեն կիրառել խնայողության ռեժիմը:

Տնտեսության սոցիալիստական համակարգը հնարավորություն է ընձեռում իրագործել արտադրության նյութատարությունն իջեցնող միջոցառումներ, ձևավորել արտադրամիջոցների օպտիմալ կառուցվածք, դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծել գիտատեխնիկական առաջընթացի և արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման համար:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ԳԱԲՐԻԵԼ ՍՈՒՆԴՈՒԿՅԱՆԻ ԱՇԽԱՐՀԸՆԿԱԼՈՒՄԸ

(ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ԳԱԲՐԻԵԼ ՍՈՒՆԴՈՒԿՅԱՆԻ անվան հետ են կապված հայ դրամատուրգիայի և թատերական արվեստի իրական վերելքն ու զարգացումը: Նրա աշխարհայացքը ձևավորվել է հասարակական-քաղաքական մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ կենցաղի ու տնտեսության մեջ մի կողմից իշխել է միջնադարյան ֆեոդալական հետամնացությունը, մյուս կողմից՝ խոշոր բուրժուազիայի երևան գալու հետ, տեղի է ունեցել նահապետական բարքերի անկում, մանրարհեստավորական ու մանր-առևտրական տընտեսության քայքայում, և այդ ամենի հետևանքով սրվել են դասակարգային հարաբերությունները: Ժողովրդական մասսաներն ընդվզել են արշավող կապիտալիզմի դեմ՝ բռնությունից, հարստահարումից ազատվելու նպատակով: Այդպիսին է եղել անցյալ դարի 60—80-ական թվականների Անդրկովկասի հասարակական-քաղաքական կյանքը, որի արտացոլումը դարձել է Սունդուկյանի ռեալիզմի բովանդակությունը:

Ապագա մեծ դրամատուրգը, 1846 թվականին ավարտելով գիմնազիան, մեկնում է Պետերբուրգ, բարձրագույն կրթություն ստանալու: Նա ընդունվում է համալսարանի պատմա-բանասիրական ֆակուլտետը, որը, թեկնածուական դիսերտացիա պաշտպանելուց հետո, հաջողությամբ ավարտում է 1850-ին, արևելյան լեզուների թեկնածուի աստիճանով: Իր այս տարիների կյանքի մասին Սունդուկյանը Յուրի Վեսելովսկուն ուղղած նամակում գրել է. «Սովորելով Արգանյանների պանսիոնում, հետո ռուսաց գիմնազիայում և վերջապես Պետերբուրգի համալսարանում՝ ես, իհարկե, ուսումնասիրել եմ և ռուս հեղինակներին, որոնցից ինձ հատկապես դուր էին գալիս Գոգոլը, Պուշկինը, Լերմոնտովը և Գրիբոեդովը, թեև միևնույն ժամանակ ես կրքոտ կերպով կարդում էի ֆրանսերեն գրքեր...»: Նշված ռուս գրողների շարքում պետք է ավելացնել նաև մեծ հեղափոխական-դեմոկրատ Վ. Բելինսկու անունը, քանի որ Սունդուկյանի ուսանողության տարիներին ողջ առաջադեմ երիտասարդությունը համակված է եղել այդ խոշոր մտածողի հեղափոխական-դեմոկրատական գաղափարներով:

Գաբրիել Սունդուկյանը ուսանողական տա-

իիներից հաղորդակցվում է այդ գաղափարներին և նրա գրական-հասարակական ըմբռնումները ձևավորվում են վերոհիշյալ ռուս ականավոր գրողների ստեղծած ավանդույթների ազդեցությամբ: Ապա հաջորդում են դերբենտյան աքսորի տարիները, որոնք ևս նպաստում են առավել խորությամբ ընկալելու ցարական միապետության մեջ տիրող սոցիալ-քաղաքական իրավիճակը:

Իր ստեղծագործությամբ Սունդուկյանն սկզբնավորել, ապա նշանավորել է քննադատական ռեալիզմի հաղթանակը հայ գրականության մեջ և թատրոնում. նախքան նրա գրական ասպարեզ իջնելը հայ դրամատիկական գրականության մեջ որևէ մնայուն արժեք չէր ստեղծվել: Հրապարակի վրա էին ռոմանտիկ պատմական ողբերգություններ ու վոդևիլներ. վերջիններիս հեղինակները հիմնականում մնացել էին կյանքի նեղ, կենցաղագրական դիտողությունների սահմաններում, և բուրժուազիայի զարգացման պայմաններում դրանք համապատասխան սընունդ չէին կարող լինել նոր հիմնադրված հայ թատրոնի համար: Անհրաժեշտ էին սոցիալ-քաղաքական գաղափարախոսությամբ ներծծված դրամատիկական երկեր, որոնց առաջին ստեղծողը հանդիսացավ Գաբրիել Սունդուկյանը և պատմականորեն պայմանավորեց հայ դրամատուրգիայի ու թատրոնի ծաղկումը:

Բնութագրելով Սունդուկյանի դերը հայկական դրամատուրգիայի ու թատրոնի զարգացման գործում՝ Շիրվանզադեն շեշտել է, որ նախքան հայ մեծ դրամատուրգի հանդես գալը «...հայ թատերական գրականությունը չի համապատասխանել իր կոչմանը ո՛չ ներքին իմաստով և ո՛չ արտաքին ձևով», և որ քննադատական ռեալիզմի սկզբունքներն իր ստեղծագործություններում պաշտպանող Սունդուկյանն առաջինն է հայ թատերական գրականության մեջ ներմուծել հոգեբանական վերլուծությունը: «Մինչև նրա հանդես գալը,— վկայում է Շիրվանզադեն,— մեր բեմի վրա շրջում էին անշունչ, անարյուն մանեկեններ, որոնք գրամոֆոնի նման արտասանում էին հեղինակների մտքերն ու գաղափարները... Սունդուկյանը առաջինը եղավ, որ բեմ դուրս բերեց մարդուն՝ իր ներքին աշխարհով, իր լավ ու վատ կողմերով: Նա վռնդեց հայ բեմի մեռելներին ու նրանց տեղը դրեց կենդանի էակներ...»:

Գաբրիել Սունդուկյանն առաջինն է հայ գրականության մեջ, որ ստեղծում է սոցիալական բովանդակությամբ հագեցած, ռեալիստական, խոր գաղափարական դրամատուրգիա: Ասես, հավաստելու համար իր ստեղծագործության սոցիալական բովանդակության հիմքը, մեծ դրամատուրգը Պեպո-ի հրատարակության առաջաբանում, իր խոսքն ուղղելով նշանավոր դերասան Գ. Չմշկյանին, գրել է. «Հիշո՞ւմ ես դու Թելեթի այն բազմաթիվ ուխտավորներին... Քանի՜ իսկական Շուշան ու Կեկել, քանի՜ հատուկ Պեպո ու Կակուլի ենք տեսել նրանց թվում: Ես երբեք չեմ մոռանա այն խոսքերը, որ մի կին, նայելով մեր պատշգամբին, ասաց իր ընկերուհուն. «Է՛ստի մտիկ, սրանք բաղումն էլ դիվաններով ին, ես կի՝ մե կոտրած սկամի էլ չունիմ», և այս դառը խոսքերը նա կնքեց ուրախ ծիծաղով, կարծես թե խեղճի ուրախության աղբյուրը՝ նրա խեղճությունը լինի»:

Սունդուկյանի պիեսներն իրենց գաղափարական բովանդակությամբ արտացոլում են նաև սոցիալական այն ողբերգությունը, որը, կապիտալիստական հասարակարգի հաստատմամբ, ծնունդ էր առել և խորտակում էր քաղաքային մանր-առևտրականների ու մանր-արհեստավորների նահապետական կենցաղն ու հին տնտեսաձևը: Քայքայվող մանր արտադրողների ու բուրժուազիայի հակասությունների սրման պայմաններում դրամատուրգը կանգնում է շահագործվողների պաշտպանության դիրքերում, իր ստեղծագործությամբ դիմակազերծելով բուրժուազիային՝ արտահայտում աշխատավորության խոհերը, առաջադեմ մտավորականության ձգտումները, արտացոլում պեպոների ընդվզումն ու բողոքը:

Լավ ճանաչելով Անդրկովկասի սոցիալ-քաղաքական կյանքը, հին, մեռնող կենցաղը և բուրժուազիայի ստեղծած այլանդակ բարքերը՝ Սունդուկյանը, քննադատական ռեալիզմի դիրքերից արտացոլում է չքավորության, կապիտալիստական զարգացման ուղին բռնած առևտրական դասի, քաղաքային մտավորականության կյանքը, պատկերում եվրոպական կուլտուրայի անկումային բարքերն ընդօրինակողներին, ցարական չինովնիկության կաշառակերությունը, ազնվական ու առևտրական դասի բարքերը, սովորությունները. նրա նպատակն էր բացահայտել իր ժամանակի հայ իրականության մեջ առաջացած նոր հարաբերությունների բացասական միտումները, գտնել դրանց զազիր կողմերը և ընդհանրացված գեղարվեստական կերպարների միջոցով դրսևորել իրականության բնորոշ գծերը: Հայ և, ընդհանրապես, անդրկովկասյան ժողովուրդների դրամատուրգիայի պատմության մեջ առաջին անգամ Սունդուկյանն է ստեղծում հասարակության երկու հակադիր ուժերը մարմնավորող կերպարներ. մի կողմից՝ մասիսյանցների, միքայելների, անթառամ-հեղինեների, օսեփների, շուշանների, պեպոների, մյուս կողմից՝ զամբախովների, զիմզիմովների, փարսիղների, սամսոնյանների և այլոց:



Այսպես, ռեալիստորեն կերտած իր կերպարներով Սունդուկյանը դրսևորում է ժամանակի սոցիալական ուժերի բախումը. բուրժուազիայի ներկայացուցիչներին՝ «խալխի դատած հացն» ուտողներին նա հակադրում է իրենց օրվա հացը «հալալ աշխատանքով» վաստակողներին, ցույց տալիս նրանց բաժանող խոր անդունդը:

Այս հանգամանքը նշել են նաև նրա ժամանակակիցները. 1901 թվականին, Պեպո-ի հայերեն առաջին ներկայացման 30-ամյակի առթիվ, վրաց բանվորական թատրոնի պատվիրակության ներկայացուցիչը, իր խոսքն ուղղելով մեծարվող դրամատուրգին, ասել է. «...Ձեր գեղարվեստական տաղանդը և կյանքի խոր ճանաչողությունը Ձեզ հնարավորություն են տալիս ճշմարտացի և կենդանի պատկերելու ժողովրդի հոգին ու սիրտը: Ձեր կերտած կերպարները կենդանանում են մեր աչքի առաջ: Դուք սրտանց ժողովրդին բարօրություն ցանկացաք. այդ կարող էր անել միայն այն մարդը, ով ժողովրդի հոգսն ու ցավն իրենն է համարել, ով նրա տանջանքով է տանջվել և խանդավառությամբ ձգտել նրա լավագույն օրվան...»:

Այսպես, Գաբրիել Սունդուկյանի ստեղծագործության բարձր գեղարվեստական արժանիքների, ինչպես և սոցիալական հրատապ խնդիրների տաղանդավոր արտացոլման ու գաղափարական հագեցվածության շնորհիվ հայ մեծ դրամատուրգի երկերը ճանապարհ են հարթում նաև դեպի այլ, առաջին հերթին՝ եղբայրական վրաց ժողովրդի սիրտը: Եվ ո՛չ միայն այդ. Սունդուկյանի դրամատուրգիան վրաց թատրոնի համար ևս ունեցել է նույն նշանակությունը, ինչ հայ թատերական արվեստի զարգացման և առաջընթացի գործում:

Այս առումով նշանակալից է վրաց թատրոնի անվանի դերասան, Գիքոյի և Զամբախովի հիանալի մարմնավորող Կոտե Ղիփիանու խոսքը՝ Պեպո-ի 30-ամյակին նվիրված հոբելյանական նիստում: Ներկայացնելու համար վրաց թատրոնին հայ դրամատուրգի մատուցած ծառայությունը, նա անդրադարձել է նախ այն վիճակին, որ տիրել է անցյալ դարի 50-ական թվականների կեսերից, Գ. Էրիսթավիի հիմնադրած թատրոնի փակումից հետո: «Այլևայլ պատճառներով,— ասել է անվանի դերասանը, — վրացական մշտական թատրոնը փակվեց, և անողոք ժամանակը, որը ոչ ոքի չի խնայում, հասարակական ասպարեզից հեռացրեց այդ մարդկանց, և վրաց թատրոնը նիրհեց 25 տարուց ավելի...

Եվ ահա, հանդես եկաք Դուք, ու վրաց թատրոնի համար բացվեց մի նոր շրջան: Սկսվեց նոր կյանք: 25 տարվա լեթարգիական քնից հետո եկավ նրա (վրացական թատրոնի— Տ. Կ.) վերածնության շրջանը»:

Շարունակելով իր խոսքը՝ Ղիփիանին նշել է, որ այդ վերածնության գործում մեծ է Սունդուկյանի երախտիքը, քանի որ նա իր դրամատիկական երկերով նորից շունչ է տվել թատրոնին, և նրա մարած զարկերակը հնարավորություն է ստացել նոր ուժով բաբախելու: Վրաց թատրոնի համար ճակատագրական այս հանգամանքը Կոտե Ղիփիանին բացատրել է նրանով, որ մեծ դրամատուրգը, բարձր պահելով արվեստի դրոշը, դրա «ստվերի ու ծփանքի» ներքո տվել է «բարձրարվեստ ստեղծագործություններ, բանաստեղծական վսեմ գործեր»: «Այդպիսի քանքարով,— ընդգծել է Ղիփիանին,— Դուք թարմացրիք մեր հասարակությունը, և մեզ մոտ երևան եկավ դրամատուրգների, ինքնուրույն հեղինակների, թարգմանիչների ու փոխադրիչների մի ամբողջ համաստեղություն, և այդպիսով Դուք առաջ մղեցիք մեր գրականությունը: Ձեր շնորհիվ մեզ մոտ հանդես եկավ դերասանների ու դերասանուհիների մի ամբողջ համաստեղություն, Ձեր ստեղծագործությունները երևան բերեցին մեզանում տաղանդներ, որոնց մենք մինչև այդ չէինք ճանաչում»: Այս ամենի հիմքը այն նորն է, որ իր հետ բերել էր Սունդուկյանի դրամատուրգիան, կյանքից վերցված բարձրարվեստ կերտված կերպարների այն համաստեղությունը, որ զարդարում են նրա գործերը և աննախընթաց հնարավորություններ ընձեռում դերասանական արվեստի բազմակողմանի զարգացման համար:

Որքան էլ բազմազան են եղել Սունդուկյանի ստեղծագործության մեջ արծարծված հարցերը, այնուամենայնիվ, հիմնականը սոցիալական հակադիր ուժերի բացահայտումն է. հիշենք Շուշանի՝ Պեպոյի մոր, բողոքն ու գանգատը. «Ա՛խ, աստո՜ւձ, վա՛խ աստո՜ւձ, վուրին կու տա՜ս սելով փետ, վուրին չիս տա՜ ցախ, ա՛ստուձ... վուրին էն ղադա դովլաթ է տալի, վուր իր դովլաթը չի կանացի մարսի, ու վուրիմեն օրվան թիքեն խլում է ու էն էլ դովլըթավուրին է տալի»: Սունդուկյանը «դովլըթավուրների» կարողության կուտակման ակունքների բացահայտումն իր խնդիրն է համարել գրական առաջին իսկ քայլերից, բացահայտել այն ճըշմարտությունը, որ նորաստեղծ դասակարգը խտրություն չի դնում հարստություն դիզելու միջոցների մեջ: Սոցիալական այդ երևույթը նա վեր է հանել հենց իր առաջին դրամատիկական երկում՝ Գիշերվան սաբրը խեր է վոդևիլում. այսպես՝ նյութական դժվարին կացության մեջ Օսկան Պետրովիչ Իրասածովը մի կողմից ձգտում է հարստության, մյուս կողմից կանգնած է ան-

խուսափելի կործանման առաջ և հարստանալու համար դիմում է ծիծաղելի միջոցների:

Հանձին խոշոր առևտրականների մրցակցությանը չդիմացող և կաշառակեր չինովնիկության կողմից թալանվող Օսկան Պետրովիչի՝ դրամատուրգը ներկայացրել է այն հակասությունը, որ ծագել էր բարձր դասերի ու մանր առևտրականների միջև: Սունդուկյանն իր հերոսին ներկայացնում է և հանդերձյալ աշխարհում: Անհամեմատ «չնչին մեղքերի»՝ ստախոսության ու խաբեության համար Օսկան Պետրովիչն ուղարկվում է դժոխք, և Օսկան Պետրովիչն էն կինքումը պիեսի հերոսի առջև բացահայտվում է կյանքում ազնիվ, բարեգործ ու հարգարժան համարվող մարդկանց դժոխային դեմքը: Հասարակության մի շարք արատներ մերկացնելու մղումով՝ Սունդուկյանը հավաքել է մեկտեղ կյանքում բարի մարդկանց համբավ վայելողներին: Ահա նրանցից Չարխածովը, որին Օսկան Պետրովիչը ճանաչել է որպես եկեղեցաշեն, աշխարհին հաց տվող մարդ: Պարզվում է՝ այդ ամենը նա արել է գողերի հետ ընկերացած:

Այստեղ է նաև յոթ անգամ Երուսաղեմ ուխտ գնացած Մուղդուսովը, որ տիրացել է հարազատ եղբոր կարողությանը, զրկել նրա կնոջն ու երեխաներին. այստեղ են խաբեբա բժիշկներ, տոկոսով դրամ տվող վաշխառու կանայք, ժողովրդին թալանող հարուստներ, նրանց փաստաբաններ, քաղաքը քարուքանդ անող Բայղուշովը, կեղծ հավատացյալներ և ուրիշներ:

Օսկան Պետրովիչն էն կինքումը մեկ գործողությամբ կատակերգությունը քաղաքական սատիրայի նմուշներից է, ուր ներկայացնելով բուրժուական հասարակարգի բարձր դասի ներկայացուցիչներին, Սունդուկյանը մերկացնում է ողջ կապիտալիստական կարգերը:

Սունդուկյանն անողոք դիմակազերծում է խոշոր կապիտալի ներկայացուցիչներին, որոնց համար ամեն ինչ ապրանք է, ամեն ինչ կարող են գնել ու վաճառել, ինչպես այդ անում է Գարասիմ Զամբախովը, որի գոյության միակ նպատակը հարստանալն է, դրամ «շահեցնելը»: Զամբախովը գտնում է, որ կարելի է գնել ու վաճառել և՛ մարդկային արժանապատվությունը, և՛ համոզմունքները, ընտանեկան կապերը, և՛ հարազատ զավակին:

Խաթաբալա կատակերգության գլխավոր գործող անձանց՝ Զամբախովի ու Մասիսյանցի միջոցով Սունդուկյանը բացահայտել է բուրժուազիայի և առաջադեմ մտավորականության հակամարտությունը, առևտրական բուրժուազիայի գիշատիչ էությունը: Դրամատուրգը Մասիսյանցի միջոցով արտահայտում է իր հասարակական-քաղաքական ըմբռնումները, իսկ բացասական կերպարի՝ Զամբախովի, միջոցով բացահայտում հասարակական արատները. դրանով իսկ կենցաղագրական սյուժեի մեջ նա հասնում է քաղաքական խոր ընդհանրացումների: Զամբախովի բարոյագիտությունը միայն իրենը չէ, այլ իր դասակարգինը, հասարակության տիրող խավինը, որի կուռքը միայն փողն է: Բուրժուական հասարակարգում մոլեգնում է կատաղի պայքարը հանուն փողի, հարստության: Այդ պայքարում ուժեղը հաղթում, լափում է թույլին՝ թալանելով ամենուր, խաբելով ամեն ինչում. ըստ բուրժուական դասի ներկայացուցիչների՝ հասարակական կյանքում ևս իշխում է գայլային օրենքը, և վա՜յ պարտվողին՝ թույլին:

Բուրժուական հասարակարգն ամբողջովին բնութագրելով որպես խաբեության ու խարդախության վրա հիմնված իրավակարգ, Սունդուկյանն իր ստեղծագործությանը հաղորդում է սոցիալ-քաղաքական բնույթ, կենցաղային թեմատիկայով գրված գործերում դրսևորում առաջադեմ մտավորականության քննադատական վերաբերմունքը իշխող հասարակական հարաբերությունների նկատմամբ:

Անդրադառնալով Սունդուկյանի ստեղծագործության գաղափարական բովանդակությանը՝ վրաց նշանավոր արձակագիր Անտոն Փուրցելաձեն գրել է. «Նրա յուրաքանչյուր տողն արժեքավոր է, ունի բարոյական ու գաղափարական նպատակ, ունի նուրբ մանկավարժականդաստիարակչական նշանակություն: Ըստ նրա, բեմը պետք է իրականացնի այն, ինչը իմաստ ու նշանակություն կարող է ունենալ և նպաստել մարդկության մտածողության ու բարոյագիտության զարգացմանը: Սունդուկյանը ձգտում է դրան, սակայն նա ձգտում է ոչ կեղծ գեղարվեստականությամբ, կեղծ տեսարանայնությամբ, ստեղծված մի կերպ՝ հապշտապ ու մտացածին, և կյանքի թերության կամ իդեալների պատկերմամբ նա ձգտում է իր խոհերը կյանք ներմուծել իսկական իրական երևույթների կշռադատված ցուցադրմամբ, կյանքի՝ արծարծվող երևույթների ուսումնասիրությամբ ու պատկերմամբ:Նա հետապնդում է այն թերությունը, այն վնասը, որ առկա է կյանքում, կյանքի արդյունք է, որ խոցում է ամբողջ հասարակությանը, հանդիսանում հասարակության հիվանդությունը...»:

Այս առումով բնորոշ է Սունդուկյանի Էլի մեկ զոհ կատակերգությունը, որտեղ հեղինակը բացահայտել է բուրժուազիայի գիշատիչ էությունը, դասակարգ, որն աստվածացնում է դրամը, ամեն ինչ ենթարկում դրան, մարդկային բոլոր հարաբերությունները վերածում դրամական արժեքի: Շահամոլության, դրամասիրու-



թյան, անազնիվ միջոցներով հարստանալու դեմ Սունդուկյանը ծառացնում է Միքայելին, Էլի մեկ զոհի հիմնական կոնֆլիկտը ներկայացնելով որպես առաջադեմ մտավորականության և բուրժուազիայի հակամարտության արտահայտություն: Հեղինակը պարսավում է բուրժուական արատավոր բարքերը, անազնիվ ճանապարհով դրամ կուտակելու մոլուցքը, գովերգում ազնիվ աշխատանքը: «...Ես նպատակ չունեմ ուրիշների պես հարստանալ,— հայտարարում է Միքայելը,— և հաստատ կանոն եմ դրել, որ ես միայն իմ սեփական աշխատանքիս լինեմ պարտական»: Սակայն շատ է հզոր Միքայելի հակադիր կողմը— հարազատ հայրը, սիրած աղջկա մայրը՝ Սալոմեն, միլիոնատեր Բրիլյանտովը, որի մտադրություններն են ընթացք տալիս դեպքերի զարգացմանը: Տրամաբանական, իրական է ռեալիստ Սունդուկյանի պիեսի ավարտը: Որքան էլ առաջադեմ, մարդկային ու կորովի, մենակ է Միքայելը, իր մենակությամբ իսկ անզոր և պարտվում է այդ անողոք պայքարում: Բուրժուական հասարակարգում դրամատիրության ճիրաններից ձերբազատվել տենչացող, իր սեփական աշխատանքով, առանց հարստահարման ապրել ձգտող միայնակ մարդու պայքարը դեռևս դասակարգային չէ, այլ միայն դեմոկրատական ձգտումների արտահայտություն:

Դասակարգային պայքարի սաղմեր կարելի է տեսնել Սունդուկյանի ստեղծագործության գլուխգործոցում՝ Պեպո-ում, ուր պայքարի ելնող ճնշված, համարյա ընչազուրկ աշխատավորը հասնում է իր շահերի պաշտպանության գիտակցության:

Սունդուկյանի դեմոկրատիզմը, ռեալիզմը, ստեղծագործական տաղանդն այստեղ հասել են բարձրակետին: Պիեսը սոցիալ-դասակարգային խոր բովանդակություն ունի. այստեղ արտացոլված է աշխատավոր ժողովրդի սոցիալական հոգեբանությունը: Հեղինակը ռեալիստորեն բացահայտել է իր ժամանակի դասակարգային սրվող հակասությունները: Պիեսի հերոսը՝ Պեպոն, քաղաքային չքավորության ներկայացուցիչն է, որի բնավորության գծերի անհատականացմամբ դրամատուրգը կարողացել է ցայտուն դարձնել նրա սոցիալական էությունը: Պեպոն սիրում է աշխատանքը, ատում հարստահարողներին և անձնական փորձով հանգում այն եզրակացության, որ չի կարելի հաշտեցնել ազնիվ աշխատանքով ապրողին այդ աշխատանքը հափշտակողի, արդար քրտինք թափողի, արյամբ շաղախված ոսկե պատերով տներում ապրողի հետ:

Պեպոյի միջոցով բացահայտելով Զիմզիմովվաշխառուի էությունը՝ մեծ դրամատուրգը հայտնում է իր այն համոզումը, որ դրամատիրոջ անօրինությունն անպատիժ չպետք է մնա: Եվ Պեպոն Արութին Զիմզիմովի երեսին նետում է. «Ես օսկե պատիրը, վուր սարքիլ իս, ո՞ւմ փուղով... հազար ինձ պեսներուն թալնիլ իս, զա՞նա, քար ու կիրը միր արնով իս շաղըղի, զա՞նա»: Պեպոն տեսնում է, որ Զիմզիմովի նմանները շատ են: Պեպոյի կարծիքին է Գիժ-Մոզին՝ Քանդած օջախում. Փարսիղին նա ասում է. «Ի՞նչ չիս արի դուն, ի՛նչ. ախպեր ասիս՝ դուն իս զընի, ննգիր ասիս՝ դուն իս խափի. պարտկ ասիս՝ դուն իս հաշա կերի, զոռով պարտկ ասիս՝ դուն իս վիզը դրի օքմնու վրա, զողութին ասիս՝ դուն իս արի, վուրթու բողազ ասիս՝ դուն իս դուս կտրի, հարևնի դուքան ասիս՝ դուն իս կրակ տվի»:

Պեպոն ու Գիժ-Մոզին քաղաքային ճնշված աշխատավորության այն ներկայացուցիչներն են, որոնք բուրժուազիայի դեմ պաշտպանում են իրենց և իրենց նմանների շահերը, նույն սոցիալական խավի արտահայտիչն է և Շուշանը. նա նզովում է իրենց համար ծանր պայմաններ ստեղծող դրամատերերին, բայց այդ անելանելի վիճակում նա ապավինում է աստծուն, մինչ Պեպոն ըմբոստանում է և աստծու դեմ: «Է՛ս է քու դատաստանը, էլի՜, ա՛ստուձ,— զայրանում է Պեպոն,— Արութինը թալնե, Արութինը զընե, Արութինը հաշա ուտե ու մինք տանջվի՞նք...»: Պեպոն հանգում է այն գիտակցության, որ պետք է վրեժ լուծել ո՛չ միայն յուրայինների, այլև բազմաթիվ ընչազուրկների համար: Նման ընդհանրացմամբ Սունդուկյանը դառնում է արդարության ու ճշմարտության համար պայքարող պեպոների՝ աշխատանքի մարդու շահերի պաշտպանը, նրանց երազանքների, խոհերի արտահայտիչը, քաղաքային աշխատավորության գաղափարախոսը, որոնց շարքերն օր-օրի ստվարանում էին ի հաշիվ քայքայվող մանրբուրժուական տարրերի: Այս իրողության ապացույց է հետևյալ փաստը. բեմադրվում է Սունդուկյանի Պեպո-ն: Դահլիճում էր և հեղինակը: «...Սկսվեց երրորդ գործողությունը,— գրում է ժամանակակիցներից մեկը,— Կինտո Պեպոն դեմ առ դեմ կանգնած պատվական շորերով Զիմզիմովի առաջ, բարոյական ապտակներ էր, որ իրար ետևից հասցնում էր նրան: Եվ հանկարծ, գործողության ընթացքում, դահլիճում կարծես մեկը մի ռումբ գցեց: Սկզբում երիտասարդությունը, ապա վերնահարկը կարծես իրար խոսք տված՝ սկսեցին մի փոթորկալից ծափահարություն Պեպոյի հասցեին, և ապա լսվեցին.

— Կեցցե՛ Սունդուկյանը, Սունդուկյա՜ն— Սունդուկյան.— բուռն, այժմ արդեն ընդհանուր

այնպիսի կոչումներ, որ մինչև օրս Արտ. ընկերության դահլիճում չէր տեսնված: ...Մի քանի ակնթարթում տասնյակ ձեռքեր առան իրենց վրա Սունդուկյանին ու բարձրացրին բեմ... Սա, անշուշտ, քաղաքական դեմոնստրացիա էր պեպոների պատվին, սա դեմոնստրացիա էր նաև օթյակներում նստած զիմզիմովների ու նրանց կանանց հասցեին և, դրանց հետ, կապիտալիզմի հասցեին»:

Պեպոյի ընդվզող ոգին հիացրել է նույնիսկ այնպիսի մի գործչի, ինչպիսին էր Մաքսիմ Գորկին: Նա հայտարարել է, որ հաճույքով կկատարեր Պեպոյի դերը: Պրոլետարական գրականության հիմնադիրն այս խոսքերով բացահայտել է իր հոգեհարազատությունը Պեպոյին: Նա բարձր է գնահատում Սունդուկյանի այս պիեսը, որպես կյանքի ճանաչողության համար մեծարժեք գործ:

Սունդուկյանը ցույց է տվել նաև, որ Պեպոյի՝ արդարության ու ճշմարտության համար պայքարող բանակին են միանում Գուլաբենց Օսեփները (Քանդած օջախ), որոնք, չդիմանալով ավելի զորեղ առևտրականների մրցակցությանը, ունեզրկվելուց հետո են միայն ճանաչում իրենց հակառակորդների էությունը, հասկանում, որ Փարսիղի նմանների կարողության ամեն մի մասը թալանված մի մարդ է:

Խոսելով Սունդուկյանի ստեղծագործության մասին, չի կարելի անտեսել այնպիսի մի գործ, ինչպիսին է Բաղնըսի բոխչան, ուր հեղինակը ծաղրել է բացասական երևույթները՝ փարիսեցիությունը, խաբեբայությունը, առուծախի իշխող ոգին: Պիեսի առաջին բեմադրության ժամանակ (1907 թ.), առաջին գործողությունից հետո, հայ դրամատիկական ընկերության կազմակերպած հանդիսության պահին, դերասանական խմբի կողմից ողջունելով մեծ դրամատուրգին այս նոր գործի առթիվ, դերասան Արշակ Հարությունյանն ասել է.

«Դուք, իբրև հմուտ ու կարող բժիշկ, մեր ընտանեկան վարքն ու բարքը, նիստն ու կացը ենթարկեցիք Ձեր կենսատու օպերացիային և ցույց տվիք մեր հասարակության բոլոր փտած ու նեխված նախապաշարումները և դրվատեցիք այն ամենը, ինչ բարի է, գեղեցիկ ու ճշմարիտ»: Հիրավի, համակողմանի, իրավացի ու ճըշմարիտ գնահատական:

Քննադատելով բուրժուական բարքերի այլանդակությունը, ցույց տալով, որ զգացմունքների ազատություն չի կարող լինել կապիտալի ազդեցության ոլորտներում, Սունդուկյանն այդ միջավայրին հակադրում է իր իդեալը՝ աշխատավոր մտավորականությանը, որի միջոցով դրամատուրգը խարազանում է հասարակական չարիքները, քննադատում կապիտալիզմի զարգացման հետևանքով ստեղծված բուրժուական նիստ ու կացը, իր գրիչը ծառայեցնելով աշխատավորության, անհատի ու կնոջ ազատագրման գործին:

Ընտանեկան երջանկության գրավականը ամուսինների փոխադարձ սերն է՝ երկու կողմերի հավասար ազատության պայմաններում. այս է ռեալիստ գրողի համոզմունքը:

Սունդուկյանը գտնում է, որ ընդհանուր առմամբ, կանանց վիճակն Անդրկովկասում ստըրկական է, նրանք զուրկ են ազատությունից, չեն կարող տնօրինել իրենց բախտը, նրանց վրա նայում են որպես ապրանքի:

Ահա Էլի մեկ զոհի Անանին. նա Մարգրիտ չէ. կրթված է, գիտակից, բայց զոհ է դառնում մոր՝ Սալոմեի քմահաճությանը: Վերջինս ցանկանում է իր աղջկան անպայման ամուսնացնել Բրիլյանտովի դատարկապորտ տղայի հետ. աղջկա մաքառումներն ապարդյուն են անցնում, նա չի դիմանում հարձակումներին և ի վերջո ամուսնանում է չսիրած մարդու հետ, դառնում բուրժուական բարքերի զոհ:

Ամուսիններ պիեսում ևս Սունդուկյանը հիմնականում քննադատում է բուրժուական բարոյականությունը, քաղքենիական այլանդակ բարքերը: Կնոջ ազատագրության խնդիրն այստեղ ներկայացված է ոչ որպես զուտ բարոյախոսական բնույթի հարց, այլ՝ խորապես սոցիալական պրոբլեմ: Դրամայում Արտաշեսը, Մարգարիտը, Լևոնը և Հեղինեն հակադրված են Սամսոնյանին, Էլիզին ու մյուսներին:

Ամուսիններ դրամայում հեղինակն արտահայտում է այն համոզմունքը, որ ուսումն ու աշխատանքը միայն կարող են ազատություն բերել մարդուն, փրկել նրան հարստության ու այլասերումի, դրամի ու կեղծիքի կապանքներից:

Այսպես, սկսած Պեպո-ից մինչև Ամուսիններ դրաման, Սունդուկյանը գովերգել է հանրօգուտ աշխատանքը, մեծարել աշխատավորին, դատապարտել բուրժուազիայի զազրելի էությունը: Հիմնականում այս նկատառումով է Հովհ. Թումանյանը Գաբրիել Սունդուկյանին մեծ համարել, որովհետև նրա «...անձնվեր մեծ Պեպոն կյանքի բեմի վրա՝ մաքուր, հաղթական, Զիմզիմովի դեմ կանգնած՝ իր հալալ աշխատողի կոշտ ձեռքով» զարկել է մուրհակին ու Թիֆլիսի բարբառով որոտացել.— «Քու սրտումը ի՞նչ է գրած... ու կվարի իր ազնիվ կռիվը, ոչ թե մուրհակի համար, այլ ճշմարտության համար, արդարության համար»:

Մարդուն երջանկացնող ազնիվ աշխատանքի վեհ զգացումն է Սունդուկյանի հերոսներին ի վերջո մղում պայքարի ասպարեզ, պայքար ո՛չ միայն անհատի, այլև ժողովրդի ազատության համար, որին զինվորագրվում է նաև Մարգարիտը, հայտարարելով՝ «...դեպի ազատությո՜ւն... ազատությո՜ւն... և միմիայն ազատություն...»:

Դեմոկրատ Սունդուկյանը արձագանքել է հայ ժողովրդի ազգային-ազատագրության, տվյալ դեպքում, Արևմտյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու հարցին: Ամուսիններ դրամայում Արտաշեսն անձամբ մասնակցում է ռուս-թուրքական պատերազմին, տեսնում արևմտահայության ճնշված վիճակը: Այդ դրությունից արևմտահայությանը փրկելու միակ ելքը Արտաշեսը համարում է ժողովրդին զինելը և նրան ռազմական գիտելիքներ հաղորդելը: «Ինչ ուզում են թող քարոզեն, բայց թշնամու վրա ոչ մի փիլիսոփայական համոզմունք այնպես չի ներգործում, ինչպես զենքը... երբ զենքը ձեռքիդ է, եղբայր, նա այն ժամանակ շուտ է հասկանում խելացի խորհուրդները, շուտ է ըմբռնում արդարացի պահանջներդ...»:

Այսպես, Սունդուկյանը հանգում է այն եզրակացության, որ ժողովրդի արդարացի պահանջները կարելի է բավարարել ու պաշտպանել զենքի ուժով միայն, որը, սակայն, բուրժուական հասարակարգը հեղափոխական ճանապարհով վերափոխելու ըմբռնում չէ. Սունդուկյանը չի նշմարել այդ ուղին: Իր ստեղծագործությամբ նա բացահայտել է կապիտալիստական կարգերի արատավոր կողմերը, արծարծել ազատ սիրո, զգացմունքների և անհատականության հարցերը, մերկացրել դրամատիրոջ գիշատիչ էությունը, ինչպես և բուրժուական կեղծ բարեգործությունը, լիբերալ մտավորականության երեսպաշտությունը (Վարինկի վեչեր, Համալի մասլահաթները, Հադիդի մասլահաթները): Համարյա նույն հարցերն են արծարծվել ռուս մեծ դրամատուրգ Ա. Օստրովսկու դրամատուրգիայում: Նրա ստեղծագործությունների թեման նույնպես սոցիալական անհավասարությունն ու անարդարությունն է, կնոջ դատի համարձակ պաշտպանությունը. նրանց խոր հումանիզմն է արտահայտված Անօժիտում և Էլի մեկ զոհում, Անմեղ մեղավորներում և Ամուսիններում...

Օստրովսկու դրական հերոսները ևս ձգտել են ձերբազատվել դրամատերերի ճնշումից, տոգորված են առաջավոր գաղափարներով ու վըճռականորեն պայքարում են այդ գաղափարների իրականացման համար: Ահա թեմաների այս նմանությունն էլ մղել է գրականագիտությանը՝ Գաբրիել Սունդուկյանին համարելու հայկական Օստրովսկի: Եվ դա համապատասխանում է ճշմարտությանը, որովհետև երկու մեծ դրամատուրգներն արտացոլել են նույն ժամանակաշրջանի հասարակական հարաբերությունները: Տարբեր չի եղել նաև հայ ու ռուս դրամատուրգների գաղափարա-քաղաքական դիրքորոշումը:

Գաբրիել Սունդուկյանն իր ստեղծագործությամբ դատավճիռ է կարդացել բռնությանը, արտահայտել իր ատելությունը բուրժուազիայի, ցարական բյուրոկրատիայի նկատմամբ, ձըգտելով սթափեցնել, պայքարի ոգի ներշնչել ընչազուրկ աշխատավորությանը, որ դարեր շարունակ շահագործվել ու ճնշվել է: Լավ է ասել վրաց նշանավոր բանաստեղծ Իոսեբ Գրիշաշվիլին. իր ժողովրդի մեծագույն վաստակյալը «մահվանից ութ ամիս առաջ գրեց իր կտակը... Այս կտակը, ինչպես և Սունդուկյանի ողջ գործունեությունը, ազնվության ու բանաստեղծական վսեմ խառնվածքի մի վավերագիր է»:

Սրտի ցավով հրաժեշտ էր տալիս մեծ գրողը բազմատանջ հայ ժողովրդին:

Սունդուկյանը նկատում էր, որ այն ժամանակներում անհնար էր ժողովրդի լիակատար ազատությունը, բայց հավատում էր, որ կգա ժամանակ, երբ հայ ժողովուրդը կունենա իր հայրենիքը, կարժեքավորի իր աշխատանքն ու ազնվությունը, կծաղկի ազգի նյութական ու հոգևոր կուլտուրան:

Սունդուկյանի ստեղծագործությունները մոտ ու հարազատ են եղել ո՛չ միայն հայ, այլև շատ այլ ժողովուրդների. դրանցում արտահայտված գաղափարները համահունչ են եղել նաև այլ ազգերի աշխատավորների ձգտումներին ու տենչերին: Ահա ինչու դրանք թարգմանել, բեմադրվել են ո՛չ միայն հայ, այլև վրացական, ռուսական, ադրբեջանական բեմերում: Պեպո-ն վրացերեն թարգմանել է ինքը՝ Սունդուկյանը: Ուկրաինական լեզվով այն թարգմանել է Պավլո Տիչինան, ադրբեջաներեն՝ նշանավոր դրամատուրգ Աբդուրահիմ Ախվերդովը, ռուսերեն, առաջինը՝ Յու. Վեսելովսկին՝ Ալ. Ծատուրյանի հետ, ապա՝ Մ. Գորկին՝ Վ. Տերյանի: Այլ լեզուներով թարգմանվել է և Սունդուկյանի ըստեղծագործությունների մեծ մասը:

Սովետական իշխանության պայմաններում, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության շնորհիվ, հայ ժողովուրդը ձեռք բերեց տնտեսական ու կուլտուրական խոշորագույն նվաճումներ և արժանին մատուցեց հայ մեծ դրամատուրգին՝ ինչպես հարկն է, գնահատելով նրա գրական ժառանգության ճանաչողական և էսթետիկական ու գաղափարական նշանակությունը:

Տ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

Մեր մշակույթի

երախտավորները



# ՄԱՐՔՍԻԶՄԻ ԿԼԱՍԻԿՆԵՐԻ ԹԱՐԳՄԱՆԻՉԸ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ առաջին երկու տասնամյակում հայ մտավորականների մի պատկառելի խավ նոր հասարակության ստեղծման ասպարեզում հույժ էական ու շնորհակալ գործ կատարեց՝ առհասարակ քաղաքական, հասարակագիտական գրականության և, մասնավորապես, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի թարգմանության ասպարեզում:*

*Հիրավի, այժմ դժվար է գերագնահատել այդ բնագավառում կատարված հսկայական առաջընթացի գաղափարա-գիտական ու քաղաքական-դաստիարակչական նշանակությունը: Թարգմանական այդ գրականությամբ սերունդներ են դաստիարակվել, սերունդներ, որոնք իրենց անձնուրաց աշխատանքով և մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով զինված՝ սոցիալիստական հասարակարգ են կառուցել:*

*Ահա թե ինչու, նոր սերունդները երբեք չպետք է անտեսեն մարքսիզմ-լենինիզմի դասականների հայ թարգմանիչներ Ս. Կասյանի, Դ. Սիմոնյանի, Ց. Խանզադյանի, Գ. Ջաղեթյանի, Մ. Գեվորգյանի, Պ. Աբելյանի, Ա. Խոնդկարյանի, Ե. Տեր-Մինասյանի, Խ. Ավդալբեգյանի, Մ. Զաքարյանի, Ա. Այվազյանի, Վ. Փոթեյանի, Կ. Վարդանյանի, Տ. Դադյանի, Վ. Ավագյանի, Ռ. Գուլքանյանի և այդ ոլորտում տարիներով գործող այլ ընկերների արգասալի գործունեությունը:*

*Սակայն, թարգմանիչների այդ պատկառելի փաղանգում ժամանակին եղել է մեկը, որն իր տաղանդով ու գերազանց ջանասիրությամբ բացառիկ սխրանք է կատարել: Այդ անձը Թադևոս Հայրապետի Ավդալբեգյանն էր, որը 6—7 տարվա ընթացքում մեծ վարպետությամբ բնագրից թարգմանեց հանճարեղ Կ. Մարքսի գլուխգործոցը՝* Կապիտալի *երեք հատորները (չորս գիրք): Նրա ծառայությունները մարքսիստական և հասարակագիտական գրականության թարգմանության բնագավառում անուրանալի են ո՛չ միայն իրենց բարձրորակությամբ, այլև սոցիալ-տնտեսագիտական, քաղաքական-փիլիսոփայական հայերեն տերմինների մշակմամբ, ստեղծմամբ ու կատարելագործմամբ:*

*Նկատի առնելով նրա ծանրակշիռ ու խրախուսելի երախտիքը մեր ժողովրդի հոգևոր կյանքում, անհրաժեշտ համարեցինք նրա ծննդյան 90-ամյակի առթիվ հրապարակել ստորև զետեղված հոդվածը:*



Բազմավաստակ գիտնական, ականավոր հասարակագետ ու տնտեսագետ Թադևոս Ավդալբեգյանի գրական-ստեղծագործական աշխատանքների մի ընդարձակ բնագավառը կազմել է թարգմանչական գործը (առավելապես մարքսիզմի կլասիկների երկերի), որի թագն ու պսակը Կարլ Մարքսի գլխավոր երկի՝ Կապիտալի երեք ստվարածավալ հատորների հայերեն թարգմանությունն է:

Համառոտ մի հոդվածում դժվար է վերհանել ու սպառել այն ամենաարժեքավորը, որ ստեղծել է մեր բեղմնավոր մտավորականը տարիների ընթացքում, թեկուզ միայն թարգմանության մարզում: Այստեղ կարևորն այն է, որ մենք, ինչպես ինքն էր երազում, ըստ արժանվույն գնահատենք նրա կատարած հսկայական շնորհակալ աշխատանքը:

Թադևոս Ավդալբեգյանի թարգմանչական գործունեությունն սկսվել էր 1906—07 թվականներից. առաջին անգամ նա թարգմանել է Ա. Իսանի Անհատն ու միջավայրը— Հիսուս, Դարվին ու Մարքս աշխատությունը, որը լույս է տեսել «Մուրճ» ամսագրում, 1907 թվականի № 4-ում: Հետագայում, նրա թարգմանչական գործունեության մեջ կարևոր էջ կազմեց Ա. Տյումեննի Աշխատանքի պատմության թարգմանությունը, որը լույս տեսավ երկու հրատարակությամբ, մեկը՝ Երևանում, 1924 թ., մյուսը՝ Լենինականում, 1925 թ.:

Ավդալբեգյանի թարգմանած գրքերից ակընհայտ են դառնում նաև նրա տեսական հասարակագիտական նախասիրությունները: Նա թարգմանել է Բերդնիկովի և Սվետլովի Քաղաքական գրագիտության դասընթացը, որով քաղգրագիտություն է սովորել 20-ական թթ. երիտասարդությունը, Ֆ. Միխալևսկու Քաղտնտեսությունը, Ա. Մ. Դեբորինի Մարքսիզմը, Լենինը ու կուլտուրան և այլն, և այլն: Սակայն Ավդալբեգյանի թարգմանչական գործերի առանցքը կազմել են Վ. Ի. Լենինի, Մարքսի և Էնգելսի աշխատությունները: Այսպես, 1922 թ. նա թարգմանել է Վ. Ի. Լենինի Պարենհարկի մասին, 1926-ին՝ Իմպերիալիզմը իբրև կապիտալիզմի նորագույն էտապ և Նոր տնտեսական քաղաքականությունը, 1930 թ.՝ Արհեստակցական շարժման մասին և մի շարք այլ գործեր, որոնք զետեղված են նրա երկերի 4-րդ հրատարակության 2-րդ, 22-րդ, 25-րդ, 33-րդ հատորներում:

Նախքան Կապիտալի թարգմանությանը ձեռնարկելը Թադևոս Ավդալբեգյանը թարգմանեց և 1932 թ. լույս ընծայեց Կարլ Մարքսի Քաղաքատնտեսության քննադատության շուրջը նշանավոր երկը, որը հիմք հանդիսացավ Կապիտալի թարգմանությունն սկսելու համար: Իսկ դրանից շատ առաջ՝ 1924 թ., նա արդեն թարգմանել էր Ռ. Լյուքսեմբուրգի և Ֆր. Մերինգի Կարլ Մարքսի կապիտալի համառոտ շարադրանքը գրքույկը, որի հայերեն առաջաբանում նա գրել է. «Կարլ Մարքսի Կապիտալը վաղուց անցել է համաշխարհային գրականության այն երկերի շարքը, որոնց ծանոթ լինելը համարյա պարտադիր ու անհրաժեշտ է քաղաքակիրթ հասարակության ամեն մի անդամի համար: Իսկ տնտեսագիտությունն ուսումնասիրողը, ինչ հոսանքի էլ պատկանելիս լինի, մի քայլ անգամ անել չի կարող ներկայումս, եթե տարիներ չի տքնել մեծ տնտեսագետի այս գլուխգործոցի վրա»:

Հայ ընթերցողին օգնելու նպատակով Ավդալբեգյանը թարգմանել է Ֆրանց Մերինգի 1918 թ. հրատարակած Կարլ Մարքս, նրա կյանքի պատմությունը վերնագրով նշանավոր աշխատության 12-րդ գլխի 2-րդ և 3-րդ դրվագները. այս գողտրիկ ժողովածուում տրված է Կապիտալի երեք հատորների համառոտ բովանդակությունը. այստեղ զետեղված են նաև Ֆ. Էնգելսի հոդվածներն այն մասին, թե ինչպես պետք է կարդալ Կապիտալի երկրորդ և երրորդ հատորները:

Այդ ժողովածուի համար գրած առաջաբանում, ամփոփելով իր ասելիքը, Ավդալբեգյանը գրել է. «Անշուշտ, ամենակատարյալ արտացոլումն անգամ չի կարող թողնել այն տպավորությունը, ինչ անում է բուն առարկան: Սակայն հայ ընթերցողն «առ ի չգոյէ» պետք է բավականանա առայժմ այս փոքրիկ արտացոլումով, մինչև որ պայմանները հնարավորություն տան որևէ մեկին բախտ ունենալու և հրապարակ հանելու համաշխարհային տնտեսագիտական գրականության հրաշալիքներից մեծագույնը՝ Կապիտալը՝ հայերեն թարգմանությամբ»:

Տասը տարի անց Կապիտալի հայերեն թարգմանության բախտը վիճակվեց հենց իրեն՝ Թադևոս Ավդալբեգյանին:

Իհարկե, հայ իրականության մեջ Մարքսի Կապիտալը, ինչպես և մարքսիզմի կլասիկների մյուս երկերը, հայտնի են եղել դրանց հայերեն թարգմանությունից շատ առաջ, XIX դարի երկրորդ կեսերից, Ռուսաստանում և Եվրոպայում սովորող հայ ուսանողության և քաղաքական գործիչների միջոցով, որոնք այդ գործերը կարդում էին ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն:

Պատմական իրողություն է, որ մեր մտավորականությունը դեռևս Ֆ. Էնգելսի կենդանության օրոք է ձեռնամուխ եղել գիտական կոմունիզմի «երգ երգոցի»՝ Կոմունիստական կուսակցության մանիֆեստի և մարքսիզմի մյուս կլասիկ երկերի թարգմանությանը: Այդ մասին կան Ֆ. Էնգելսի վկայությունները:

Ի պատիվ Թադևոս Ավդալբեկյանի՝ պետք է ասել, որ նա առաջինն է զբաղվել Մանիֆեստի հայերեն թարգմանության պատմությամբ։ Այդ մասին է վկայում 1924 թվականին «Վերելք» ամսագրում տպագրված նրա՝ Կոմունիստական մանիֆեստի հայերեն թարգմանությունները 1887 թվականից մինչև 1924 թթ. հոդվածը, որով և փաստորեն սկզբնավորվել է մարքսիզմի կլասիկների երկերի հայերեն թարգմանության պատմությունը։ Թ. Ավդալբեգյանի այդ հոդվածից հետո միայն մեր պատմաբաններն սկսեցին զբաղվել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի թարգմանության պատմությամբ։ Մանիֆեստի պատմության հարցերով զբաղվողները, գնալով նրա հետքերով, հետագայում ավելի խորացրին ու հարստացրին այն։

Այսօր կարելի է ասել, որ Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի Կոմունիստական մանիֆեստի հայերեն թարգմանության հետաքրքրական պատմությունից հետո ստեղծվել է Կապիտալի հայերեն թարգմանության պատմությունը։ 1962 թ., «Սովետական Հայաստան» լրագրում լույս տեսավ երիտասարդ գիտնական Ա. Մարտիրոսյանի հոդվածը՝ Կապիտալի հայերեն թարգմանության 25-ամյակի առթիվ, որտեղ հեղինակը փորձել է վեր հանել Կապիտալի հայերեն թարգմանչի մատուցած գիտական մեծ ծառայությունն այդ գործում։

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն 1931-ին հանձնարարեց մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին և կուսհրատին՝ ձեռնամուխ լինել այդ տնտեսագիտական երկի թարգմանությանը։ Բազմակողմանի քննարկվեց նաև մի հարց. ո՛ր լեզվից պետք է կատարվեր թարգմանությունը՝ ռուսերենի՞ց, թե՞ գերմաներենից։ Պետք է նկատել, որ այդ տարիներին մեր հանրապետությունում արդեն կային բարձրորակ գիտական թարգմանչական կադրեր, որոնք ի վիճակի էին իրականացնելու այդ բարդ ու դժվարին աշխատանքը։ Սակայն նպատակահարմար գտան այդ գործը հանձնարարել առավել կարողին։ Որոշվեց մարքսիստական ուսմունքի այդ հանճարեղ երկի թարգմանությունը կատարել գերմաներենից և հանձնարարել այն հանրապետության մեջ ճանաչված տնտեսագետ, գերմաներենի քաջատեղյակ, հմուտ հայագետ Թադևոս Ավդալբեգյանին. մարդ, որ տարիներ ի վեր երազում էր հայ ընթերցողի սեղանին տեսնել Կապիտալը՝ մայրենի լեզվով։

Թե ինչպիսի բարդությունների առաջ էր կանգնած թարգմանիչը, երբ սկսեց այդ գործը, գիտե միայն ինքը։ Այդ մասին նա որոշ խոստովանություններ է թողել մեզ։ Այսպես. «Հինգերորդ դարից հետո,— գրում է նա,— դեռ երբեք հայ թարգմանչական գրականության առաջ այդպիսի հսկայական ու դժվարին խնդիր չէր դրված։ Պետք էր հայացնել մարդկային ստեղծագործ մտքի ամենամեծ կերտվածքներից մեկը՝ «Կապիտալ»-ը, որը օվկիանոսի պես ծփում է մեծափառ փիլիսոփայական, պատմական, տնտեսագիտական ու քաղաքական խորախոր բովանդակությամբ, ծանրալուրջ կշռադատության ու շառաչուն երգիծանքի մեջընդմեջ հերթափոխությամբ, շարադրանքի բարձրորակ պատկերավորությամբ, հին ու նոր լեզուների անհամար քաղվածքներով ու վերջապես լեզվի շեքսպիրյան ու նույնիսկ գերազանցող հարըստությամբ»։ Կարլ Մարքսի Կապիտալի այսպիսի ամբողջական, կուռ և բազմաբովանդակ բնորոշում մեր գրականության մեջ չի եղել։ Այս բնորոշման մեջ երևում է հենց մարքսյան սեղմ, խոր ու պատկերավոր ոճը, որը դարձել է Ավդալբեգյանի գրելաոճը։ Թարգմանիչը ցույց է տվել, թե մտքերի կառուցման և լեզվի հարըստության ինչպիսի՜ վիթխարի մեծության դեմ հանդիման է կանգնած ինքը։

Թարգմանությունն ինքնըստինքյան բարդ արվեստ է. թարգմանության պրոցեսը նման է մի մեծ ճակատամարտի, լեզվա-մտային ամրոցի գրավման, դրա համակողմանի յուրացման և կրկնօրինակի կառուցման։

Մարքսն ու Էնգելսը ժամանակին շատ հետաքրքրական մտքեր են թողել թարգմանչական արվեստի վերաբերյալ, որոնց քաջ ծանոթ է եղել Ավդալբեգյանը, մտքեր, որոնք այսօր ևս հիմնարար նշանակություն ունեն։ Դրանցից կհիշատակեմ միայն Էնգելսի Ինչպես չպետք է թարգմանել Մարքսին հոդվածը. խոսքը Կապիտալի անգլերեն թարգմանության մասին է։

...Կապիտալը թարգմանելու համար,— գրել է Էնգելսը,— բավական չէ լավ իմանալ գրական գերմաներենը։ Մարքսն օգտագործում է առտնին կյանքի արտահայտություններ և գավառաբարբառների իդիոմներ. նա ստեղծում է նոր .բառեր, լուսաբանող իր նյութը փոխ է առնում գիտության բոլոր բնագավառներից, իսկ վկայակոչումները՝ մի ամբողջ դյուժին լեզուների գրականություններից. Նրան հասկանալու համար հարկավոր է, հիրավի, կատարելապես տիրապետել գերմաներեն թե՛ խոսակցական և թե՛ գրական լեզվին և, բացի դրանից, պետք է որոշ բան իմանալ գերմանական կյանքից։

Այնուհետև նա շարունակում է.— «Մեր դարի գրողների մեջ Մարքսն առավել ուժեղ ու սեղմ ոճ ունի։ Նրան հավասարազոր ոճով տալու համար պետք է կատարելապես տիրապետել ո՛չ միայն գերմաներենին, այլև անգլերենին։ Սակայն Բրոդհաուսը, ըստ երևույթին, բավականաչափ ընդունակ ժուռնալիստ լինելով հանդերձ, անգլերենին տիրապետում է միայն այն սահմանափակ ծավալով, որն օգտագործում են գրական պայմանական պահանջները բավարարելու համար։ Այդ լեզվին նա ազատ տիրապետում է, բայց դա այն անգլերենը չէ, որով կարելի է թարգմանել «Կապիտալը»։ Հզոր գերմաներենը պետք է տալ հզոր անգլերենով, պետք է օգտագործել լեզվի լավագույն պաշարները. նորաստեղծ գերմաներենը պահանջում է ստեղծել անգլերեն համապատասխան նոր տերմիններ։

Բայց հենց որ Բրոդհաուսի առաջ կանգնում են այդպիսի դժվարություններ, նա զգում է ո՛չ միայն ռեսուրսների, այլև քաջության պակասություն»։

Պետք է ասել, որ Կապիտալը հայերեն թարգմանելիս Ավդալբեգյանը քաջության պակաս չի զգացել։ Մարքսի ստեղծած հզոր գերմաներենին նա համադրել է իր հզոր հայերենը։

Տարիներ շարունակ Ավդալբեգյանն ուսումնասիրել է Մարքսի այդ գլուխգործոցը և քաջ գիտակցել, թե ի՞նչ վիթխարի պահանջներ է առաջադրում իրեն այդ գործի թարգմանությունը։ Նախ՝ փիլիսոփայության, տնտեսագիտության, պատմության ու գիտության ամենալայնածավալ ասպարեզների տեսական խոր իմացություն։ Երկրորդ՝ լեզվագիտական մեծ կարողության, թարգմանվող (գերմաներենի) և թարգմանելի (հայերենի) ոճերի և պատկերների նուրբ զգացողություն, հարյուր-հազարավոր նոր տերմիններ ստեղծելու, դրանք հայոց լեզվի համակարգի մեջ արմատավորելու վարպետություն և, վերջապես՝ թարգմանչական արվեստի կայուն սկզբունք։

Խոսելով թարգմանչական արվեստի սկզբունքների մասին, Ավդալբեգյանն այն բաժանում է երեք կարգի. ա) բառացի կամ մեխանիկական, բ) հնարավոր մոտազույնը տվող, իմաստին ադեկվատ և գ) ազատ թարգմանություն կամ, գրեթե, փոխադրություն։ Թ. Ավդալբեգյանը կողմնակից էր հնարավոր մոտազույնը տվող ադեկվատ թարգմանությանը։ Ղեկավարվելով այդ սկզբունքով՝ թարգմանիչը մեծագույն բարեխղճությամբ և անդրդվելի տոկունությամբ կարողացավ գործն սկսել, առաջ տանել և ավարտել բարձր մակարդակով, ընթերցողին մատուցել Կապիտալի երեք հատորների (չորս գիրք) հայերեն բարձրորակ թարգմանությունը՝ գերմաներենից։ Գլխավոր դժվարությունը թարգմանության և խմբագրության ժամանակ, բնականաբար, այն էր,— գրված է հայերեն հրատարակության առաջաբանում,— որ պետք է հոգ տանել պահպանելու, ինչպես Էնգելսն էր ասում՝ այդ մոնումենտալ երկի ուժը, հյութն ու կյանքը։

Կապիտալի հայերեն առաջին հատորը լույս տեսավ 1933, երկրորդը՝ 1936 թվականներին։ Երրորդ հատորի առաջին և երկրորդ գրքի հրատարակությունն առ ժամանակ դադարեց, վերահաս՝ 1937 թվականի իրադարձությունների հետևանքով, երբ կտրվեց նրա կյանքի թելը։ Այդ հատորի երկու մասերը հրատարակվեցին միայն պատերազմից հետո։

Կարլ Մարքսի Կապիտալի երեք հատորների թարգմանությունը տևեց մոտ 5—6 տարի։ Բնագրից կատարված այդ բարդ ու անչափ հարուստ գրքի թարգմանությունը մի կատարյալ գիտական սխրանք էր։ Այդ թարգմանությունը հորդառատ գետի պես ոռոգեց, պարարտացրեց մեր լեզվի սոցիալ-տնտեսագիտական բառապաշարն ու տերմինաբանությունը։ Հմուտ թարգմանիչը, ելնելով հայոց լեզվի ատաղձից, կարողացավ ստեղծել տնտեսագիտական, փիլիսոփայական ու սոցիալ-քաղաքական բազմաթիվ տերմիններ, որոնք այսօր լայնորեն գործածվում են մեր գիտական գրականության մեջ։

Ավարտելով երեք հատորների թարգմանության շնորհակալ աշխատանքը՝ Ավդալբեգյանը գրեց իր սրտաբուխ խոսքն այդ առթիվ. «Ուրախությամբ գրանցում եմ, որ այսօր, 1937 թվականի հուլիսի 10-ին, առավոտյան ժամը 7-ին ու 20 րոպեին թարգմանեցի պրծա «Կապիտալի» վերջին գրքի ամենավերջին երեսը»։ Նա հույս էր հայտնում, որ գալիք սերունդներն ըստ արժանվույն կգնահատեն իր գործը։

Այստեղ հարկ չկա անդրադառնալու տպագրված գրախոսականներին։ Այդ մասնագիտական առանձին հարց է։ Սակայն, չհրապարակված, բայց արխիվում գտնվող պատասխան խոսքում երևում են Ավդալբեգյանի թարգմանչական այն սկզբունքները, որով նա ղեկավարվել է իր աշխատանքում։

Գրախոսները, արտահայտվելով հայերեն թարգմանության մասին, ելակետ են ընդունում ռուսական վերջին թարգմանությունը, որ Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը կատարել է 1909 թվականին։ Ռուսական այս թարգմանությունը համարվում է ամենալավը և ժամանակին որակվել որպես «Գիտական մեծագործություն»։ Սակայն, ինչպես հայտնի է, այդ թարգմանությունը, սկսած 1909 թվականից մինչև օրս, ամեն մի նոր հրատարակության ժամանակ հղկվում, վերամշակվում, բարեփոխվում է։ Հայ թարգմանչի խնդիրը, ռուսականի համեմատությամբ, բարդանում էր մի շարք հանգամանքներով. Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը հենվում էր իրենից առաջ եղած ռուսական երեք թարգմանությունների (Գ. Ա. Լոպատինի և Ն. Ֆ. Դանիելսոնի 1872 թ., Ա. Ի. Լյուբիմովի՝ 1890 թ., Ի. Ա. Գուրվիչի և Ա. Ն. Զակի՝ 1899 թ.) փորձի, նրանց ըս-

տեղծած լեզվական ատաղձի վրա. մինչ հայ թարգմանիչը պետք է թարգմաներ անմշակ, ժամ առ ժամ կերպարանավորվող, նոր տըն-տեսագիտական լեզվով, չեղած տեղից ստեղ-ծելով բազմաթիվ նոր տերմիններ, բառեր և արտահայտություններ: Ռուս թարգմանիչն իր ձեռքի տակ ուներ տնտեսագիտական պատրաստի տերմինաբանություն, իսկ Թ. Ավդալբեգ-յանը պետք է առաջին անգամ ի մի բերեր ու լրացներ տնտեսագիտական հայերեն ողջ տեր-մինաբանությունը, գերմաներեն և միջազգային տերմիններից և հայ լեզվական ատաղձից ըս-տեղծեր հայկական սոցիալ-տնտեսագիտական նոր տերմինաբանություն:

Ի պատիվ Թադևոս Ավդալբեգյանի՝ պետք է ասել, որ Կապիտալի թարգմանությանը զուգըն-թաց, երկար տարիների քրտնաջան աշխատան-քով նա ստեղծեց նաև Ռուս-հայերեն տնտեսա-գիտական տերմինների բառարան: Այս բառա-րանի հրատարակության Առաջաբանի փոխա-րեն-ի հեղինակը՝ Արո Ադոյանը, իրավամբ գրել է. «Ավարտելով Կարլ Մարքսի Կապիտալի երեք հատորների թարգմանությունը, Թ. Ավ-դալբեգյանը փայլուն քննություն բռնեց ո՛չ միայն որպես տնտեսագետ, այլև իբրև հայոց լեզվի լավագույն գիտակներից մեկը: Ո՛չ միայն Կապիտալի երեք հատորների թարգմա-նությունը, այլև այս բառարանի կազմումը նրա երկարատև ջանքերի փայլուն արգասիքն են»:

Թե լեզվաշինարարական ինչպիսի վիթխարի աշխատանք է տարվել Կապիտալի թարգմանու-թյան ընթացքում, դա հատուկ ուսումնասիրու-թյան նյութ է, սակայն, մասամբ, երևում է այդ առթիվ հրավիրված զանազան խորհրդակցու-թյունների արձանագրություններից, որոնց մի մասը պահպանվել է: Դրանցից իմանում ենք, որ այդ տարիներին կուսհրատի նախաձեռնու-թյամբ, պարբերաբար հրավիրվել են թարգմա-նիչների խորհրդակցություններ, որոնց մաս-նակցել են հայ անվանի լեզվաբաններ, տնտե-սագետներ, առաջնակարգ թարգմանիչներ, գա-ղափարական բնագավառի աչքի ընկնող դեմ-քեր, որոնք համատեղ ջանքերով քննարկել և ընդունել են Թ. Ավդալբեգյանի օրինակով ըս-տեղծած հարյուրավոր նոր բառ-հասկացու-թյուններն ու տերմինները:

Թադևոս Ավդալբեգյանը Կարլ Մարքսի այդ մոնումենտալ երկը գերմաներենից վերակերտեց հայերեն, դրանով իսկ հարստացրեց հայոց սո-ցիալ-տնտեսագիտական միտքն ու լեզուն: Ա-վարտելով այդ վիթխարի աշխատանքը՝ նա գրել է. «Լիահույս եմ, որ ո՛չ միայն նորահաս ու վե-րահաս սերունդները, այլև հասուն ժամանակա-կիցներն ըստ արժանվույն կգնահատեն իմ այս բոլորանվեր մասնակցությունն աշխատավոր մարդկության ազատագրման մեծ գործին»:

Մենք այսօր շնորհակալությամբ ենք հիշում հայ մտքի քանքարավոր երախտավորին, որ, ցավոք, երկար ժամանակ մոռացության էր մատնված: Ինչպես ներկա, նույնպես և նորա-հաս ու ապագա սերունդը, անշուշտ, ըստ ար-ժանվույն կգնահատի Թադևոս Ավդալբեգյանի բոլորանվեր գործը: Ինչպես Ավդալբեգյանն է նշում, հինգերորդ դարից հետո հայ թարգման-չական գրականությունն այնպիսի վիթխարի ծավալ չէր ստացել, ինչպես սկսվեց սովետա-կան շրջանում:

Վ. Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ




Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժին-ներ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշ-խատողներ՝ 27—60—64:

ՎՖ 05520 Պատվեր 1058 Թղթի չափսը 70×108 1/16 Տիրաժ 14.400 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 13/V-1976 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:




СОДЕРЖАНИЕ

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՐԿՐԱԲԱՆՆԵՐԻ ՆՈՐ ՕԳՆԱԿԱՆԸ

*Ղազախ ինժեներների և Լենինգրադի գիտնականների նախագծած ինքնատիպ հետախուզական կոմպլեքս սարքը հնարավորություն է ընձեռում ինֆորմացիա ստանալ երկրի կեղևի կառուցվածքի մասին (մինչև երկու կիլոմետր խորքում)։ Այժմ սեյսմիկ կայանի ընդերքի հետախույզներն օգտակար հանածոների որոնումների ժամանակ ինֆորմացիա են ստանում Ալմա-Աթայի փորձարարական գործարանի արտադրած գեոֆիզիկական սարքերի օգնությամբ։ Կայանն ունի ուժեղ տատանումները գրանցող էլեկտրոնային սարք։*

## ԿՈՃՂԸ՝ ՓԱՅՏԱՆՅՈՒԹ

*Շվեդիայի «էլեկտրոլիզել» ֆիրման մշակել է այնպիսի մեքենա, որը ծառը ո՛չ սղոցում է, ո՛չ էլ կտրում, այլ արմատահան է անում։ Դրա շնորհիվ, առանց ծառահատման հրապարակի ընդարձակման, հաջողվեց 20—30 տոկոսով ավելացնել փայտանյութի քանակությունը։ Պարզվեց, որ կոճղերը ևս հիանալի հումք են թղթարդյունաբերության համար։ Բայց դա միակ և հիմնական առավելությունը չէ. արմատների հեռացումը կասեցնում է սնկային և այլ հիվանդությունների վարակի տարածումը, թեթևացնում նոր տնկիների համար հողի նախապատրաստման աշխատանքները։*

## ՆՈՐ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ

*Լենինգրադի «Գիպրոկոմունշին» ինստիտուտի նախագծով կառուցվել է աղբամշակման գործարան, որը կարող է սպասարկել մինչև 800 հազար բնակչություն ունեցող քաղաքի շրջաններին։ Կոնտեյներներով գործարան բերված աղբը բեռնաթափվում է հոսքագծերի վրա։ Ընթացքի ժամանակ էլեկտրամագնիսային զտիչները դրանցից զատում են մետաղը, ապա մնացած զանգվածը նետում պտտվող թմբուկների մեջ։ Երեք օր շարունակ պտտվելով՝ մնացուկները տրորվում են, տաքանում մինչև C 60—70 աստիճան, բարդ, հեշտ փտող օրգանական նյութերից քայքայվում, անջատվում են գազերը, իսկ նստվածքը դառնում է հիանալի պարարտանյութ, որը մանրացվում է հանրաղացում։ Ստացվում է երկու տեսակ պարարտանյութ— բիովառելիք, որն օգտագործվում է ջերմոցային տնտեսությունների ջեռուցման համար և կոմպոստ (բաղադրյալ պարարտանյութ), որով պարարտացվում են դաշտերը։ Այն գոմաղբից լավ է տաքացնում հողն ու օդը, իսկ էներգետիկ պաշարը բավականացնում է 4—6 ամիս։*

## ԱՆՎՏԱՆԳ ԵՎ ԱՐԱԳ

*Մոսկվայի ստոմատոլոգիական ինստիտուտի գիտնականները մայրաքաղաքի հեռակա մեքենաշինական ինստիտուտի մասնագետների հետ մշակել են մի եղանակ, որը հնարավորություն է ընձեռում չժանգոտվող երկաթե ատամնաշարիկները զոդել ուղղակի հիվանդի բերանի խոռոչում։ Կցումը, որ միանգամայն անվտանգ է, արվում է լազերային ճառագայթի միջոցով։*

## «ՍԵԶԱՄ, ԲԱՑՎԻ՛Ր»

*Ամերիկյան «Վերիպեն» ֆիրման նախագծել է փականքներ, որոնց բանալիները մարդկային օրգանիզմի անհատական անկրկնելիության արդյունքն են։ Փականքը բացելու համար յուրաքանչյուրն անձամբ պետք է ստորագրի հատուկ գրչով. ստորագրության ժամանակ գրչածայրի հպումի փոփոխությունը հենց անհատի յուրահատկությունն է։ Այն գրեթե նույնն է յուրաքանչյուր ստորագրության ժամանակ և փաստորեն անկեղծելի։*

*Ամերիկյան մեկ այլ՝ «Նովար էլեկտրոնիկս կորպորեյշն» ֆիրման մշակել է սիստեմ, որն ընդհանրապես մարդուց չի պահանջում ոչ մի միջամտություն։ Պարզվել է, որ մարդու մարմինը փոխանցիչ լինելու հետ մեկտեղ նաև ակուստիկ տատանումների անհատական հաղորդման ֆիլտր է։ Յուրաքանչյուրն ունի իր մարմնի անկրկնելի հաճախականության բնութագիրը։ Ահա ինչու տարբեր մարդիկ տարբեր կերպ են արձագանքում ակուստիկ ազդանշանին։ Իդեալական փականքը ճանաչում է «ծանոթներին» և բացվում է, երբ նրանք կանգնում են նախադռան փոքրը գորգին ու բռնում դռան բռնակը։*